### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении




Բովանդակություն

ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՁԵՌՔ ԲԵՐԱԾ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ։**

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
նախագահ՝ Ն. ՊՈԴԳՈՐՆԻ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության
քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

Մոսկվա, Կրեմլ, 16 նոյեմբերի, 1968 թ.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

**ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. Գ.**

ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

## ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՆԾԱԼԻ ՀԻՍՆԱՄՅԱԿԸ

*1968 թ. հոկտեմբերի 29-ին լրացավ համամիութենական լենինյան կոմունիստական երիտասարդական միության 50 տարին։ Հոկտեմբերի հաղթանակով պատմության մեջ առաջին անգամ հարթվեց երիտասարդ սերնդի կյանքի պրոբլեմների վերջնական լուծման ուղին։*

*Լենինյան կոմերիտմիությունը կազմավորվեց սովետական պետության ստեղծումից մեկ տարի հետո։ Սա վկայում է, թե որքան մեծ նշանակություն է տալիս բոլշևիկների կուսակցությունը բանվորա-գյուղացիական երիտասարդության քաղաքական կազմակերպությանը։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Վ. Ի. Լենինը, դառնալով աշխարհում առաջին սոցիալիստական պետության ղեկավարը, ամեն կերպ աջակցում էր պրոլետարական երիտասարդության կազմակերպությանը, սիստեմատիկաբար հետաքրքրվում այն խնդիրներով ու տրամադրություններով, որոնք հուզում էին երիտասարդ սերնդին։ Այսօր չի կարելի առանց հուզմունքի կարդալ Իլյիչի պատասխանները երիտասարդության նամակներին, նրա ուղերձները կոմերիտմիության համագումարներին, առաջին կոմերիտականների հիշողությունները, որոնց բախտ է վիճակվել հանդիպել Լենինին, խորհրդակցել երիտասարդության կազմակերպության գործերի ու պլանների շուրջ։*

*«Մեր երիտասարդության ապագան,— ասում էր նա 1920 թ. աշնանը Կլարա Ցետկինին,— խորապես հուզում է ինձ։ Նա հեղափոխության մի մասն է»։*

*1918 թ. օգոստոսին պետք է կայանար ՀամԼԿԵՄ առաջին համագումարը, բայց քաղաքացիական պատերազմի ճակատներում ստեղծված տագնապալի դրության հետևանքով (սպիտակ չեխերը գրավել էին Կազանը և սպառնում էին Մոսկվային, երիտասարդական միության ակտիվիստների մեծ մասը ռազմաճակատ էր մեկնել) համագումարը հետաձգվեց մինչև հոկտեմբերի 29-ը։ Իլյիչը չկարողացավ անձամբ մասնակցել համագումարին (վիրավորվելուց*

հետո բժիշկները նրան արգելել էին հաճախակի ելույթներ ունենալ)։ ՌԿ(բ)Կ
Կենտկոմից (Լենինի հանձնարարությամբ) համագումարին մասնակցեց և
ելույթ ունեցավ Ե. Մ. Յարոսլավսկին։ Ինքը՝ Վլադիմիր Իլյիչը, ուշադիր հե-
տևում էր համագումարի ընթացքին։ Եվ երբ համագումարի պատգամավոր-
ներն առաջին նիստում Լենինին միաձայն պատվավոր նախագահ ընտրեցին
և գրություն ուղարկեցին, որպեսզի նա հանդիպի իրենց ներկայացուցիչների
հետ, առաջնորդը սիրով համաձայնեց և Կրեմլում ընդունեց պատվիրակու-
թյանը։

Կոմերիտմիության ողջ պատմությունը սերտորեն կապված է կոմունիս-
տական կուսակցության գործունեության հետ։ Կուսակցությունն է երիտասար-
դական կուսակցության գործունեության հետ։ Կուսակցությունն է երիտասար-
դական միության կազմակերպիչը, նա է սահմանել ՀամԼԿԵՄ կազմակերպա-
կան սկզբունքները, օգնել մշակելու քաղաքական ճիշտ գիծ, որոշել կոմերիտ-
միության տեղն ու դերը սոցիալիստական հասարակարգում։ Ահա թե որն է
ՀամԼԿԵՄ ուժի աղբյուրը։

Սոցիալիստական շինարարության ընթացքում կուսակցությունն անողոք
պայքար մղեց երիտասարդությանը լենինյան ուղուց շեղել ցանկացող տա-
պալված դասակարգի մնացորդների, «ձախ» և աջ օպորտունիստների դեմ։
Միշտ էլ կոմերիտմիությունը սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող երի-
տասարդության պայքարի մարտական դպրոց է եղել։ Քաղաքացիական պա-
տերազմի տարիներին ավելի քան 200 հազար կոմերիտական անձնվեր մար-
տնչել են հանուն սովետների իշխանության։ Հինգ հազար կոմերիտական-
ներ պարգևատրվել են Կարմիր աստղի շքանշանով, որն այդ տարիներին ա-
մենաբարձր պարգևն էր։

Առաջին հնգամյակի տարիներին կոմերիտմիությունը դարձավ համա-ժո-
ղովրդական սոցիալիստական մրցության նախաձեռնողն ու վիթխարի կա-
ռույցների շեֆը։ Միայն առաջին հնգամյակի կառույցներում աշխատել են
ավելի քան 250 հազար կոմերիտական, որոնցից 200 հազարը՝ ՀամԼԿԵՄ
ուղեգրերով։

Անգրագիտությունը վերացնելու համար 1928 թ. 100 հազար կոմերիտա-
կան մեկնեցին գյուղերը։ Պայքարել բարձր բերքի և կոլեկտիվացման համար,
պատրաստել գյուղատնտեսության մասնագետներ, վերացնել անգրագիտու-
թյունը՝ այս հույժ կարևոր գործերով էր զբաղված կոմերիտմիությունը քաղա-
քային և երեսնական թվականներին։ Անսահման էր կոմերիտականների նպատա-
կասլացությունն ու խանդավառությունը։ Այն գործերը, որոնց համար տարիներ
էին պահանջվում, հաղթահարվում էին ամիսների ընթացքում։ Այդ տարինե-
րին էր, որ Զորագէսի կառուցմանը ներդրած իր հերոսական աշխատանքի
համար Հայաստանի կոմերիտմիությունը պարգևատրվեց Աշխատանքային
կարմիր դրոշի շքանշանով։

1941 թ. հունիսի 22-ին հայրենիքի կոչով երիտասարդությունը մեկ մարդու
պես ելավ ընդդեմ ֆաշիզմի։ Պատերազմի առաջին օրերին տասնյակ հա-
զարավոր կոմերիտականներ ՀամԼԿԵՄ Կենտկոմի կոչով կամավոր ճակատ
մեկնեցին։ Հայաստանից պատերազմի առաջին երեք տարիներին հայրենիքը
պաշտպանելու մեկնեցին 20 հազար կոմերիտական, իսկ պատերազմի ողջ ըն-
թացքում՝ 70 հազար։ Հայրենիքի հանդեպ ունեցած մեծ վաստակի համար
ՀամԼԿԵՄ-ը պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Երբ ավարտվեց պատերազ-



մը, մեր 1710 քաղաքներից ու 70 հազար գյուղերից ածխացած փլատակներ
էին մնացել։ Երկիրը կորցրել էր ազգային հարստության 30 տոկոսը։ Ան-
հրաժեշտ էր նորից կառուցել 84 հազար դպրոց և այլ ուսումնական հաստա-
տություններ, տասնյակ հազար գործարաններ, հանքահորեր, ֆաբրիկաներ։
Հազարավոր երիտասարդներ կոմերիտական ուղեգրերով մեկնեցին վերա-
կանգնելու ավերված քաղաքները։ Միայն էլեկտրակայանների շինարարու-
թյանը մասնակցեցին 98 հազար պատանիներ ու աղջիկներ։ Փլատակներից
նոր քաղաքներ ու գյուղեր էին գոյանում, վերականգնվում էին ավերված գոր-
ծարաններն ու հանքերը, գութանը հարթում էր ռմբակոծություններից գոյա-
ցած փոսերը։

Արևմուտքում շատերն ասում են, թե այսօրվա սովետական երիտասար-
դությունը համակված չէ իրենց հայրերի ու մայրերի հեղափոխական գործերի
ավյունով։ Մեղմ ասած, դա կատարյալ զրպարտություն է։ «Комсомольская
правда» թերթի Հասարակական կարծիքի ինստիտուտը (որը Արևմուտքի
ժուռնալիստները կոչել են «Սովետական Հելապ»), 14—30 տարեկան երի-
տասարդներին Ի՞նչ եք մտածում ձեր վիճակի վերաբերյալ ընդհանուր վերնա-
գրով անկետա էր բաժանել։ Այն լրացրել էին երկրի աշխարհագրական
բոլոր շրջաններում ապրող և ՍՍՀՄ բնակչության բոլոր ազգությունները ներ-
կայացնող մոտ 20 հազար երիտասարդ։ Սովետական երիտասարդության
մասսայական այդ հարցափորձը համոզիչ կերպով ցույց տվեց, որ երիտա-
սարդ սերնդի հասարակական բնավորության հիմնական գիծը հայրերի հե-
ղափոխական գաղափարներին հավատարիմ մնալն է, պատրաստակամու-
թյունը՝ անելու ամեն ինչ, կոմունիստների մեծ նպատակներն իրականացնե-
լու համար։

Իսկ ինչպիսի՞ հոգեկան աշխարհ ունեն Արևմուտքի մեր հասակակիցնե-
րը։ Ֆրանսիացի ժուռնալիստ Մ. Շեվալիեն իր նախաձեռնությամբ յուրօրինակ
հարցում էր արել ԳՖՀ-ի երիտասարդությանը։ «Առանց խորհելու երկու խոս-
քով ասացեք՝ ո՞րն է ձեր դերը, կյանքի նպատակը»։ Այդ հարցը նա տվել է
արևմտագերմանական քաղաք Մյունխենի փողոցներում։ Պատասխանը մեկն
է եղել. «Փո՛ղ, փո՛ղ, փո՛ղ»։ Թվում էր, թե մենք ակցիոներական վճռական
ժողովում ենք... Ապագայով նրանք հետաքրքրվում էին միայն փող շահելու
հնարավորությունների միտումով,— նշում է այնուհետև Շեվալիեն։

Մեր երիտասարդությունն ընթանում է կյանքի ուրույն ուղիով, որը լուսա-
վորված է ապագայի նկատմամբ մեծ հավատով։ Հայրենիքը նրա զարգացման
համար ստեղծում է բոլոր հնարավորությունները և մեծ սպասելիքներ ունի
նրանից։ Երիտասարդությունը պետք է իր աշխատանքային ավանդը ներդնի
հնգամյակի հաջող կատարման, բարոյական ավանդը՝ նոր մարդու ձևավոր-
ման համար, պահպանի և զարգացնի հայրերի վեհ ավանդույթները։

Մեր հանրապետության կոմերիտական կազմակերպություններն իրենց
կեսդարյա հոբելյանին աշխատանքային և քաղաքական մեծ վերելք են ապ-
րում։ Այս տարի կայացած ՀԼԿԵՄ XXIV համագումարում մեր հանրապե-
տության կոմերիտականները պարտավորվել են ժամկետից շուտ կատարել
հնգամյակի խնդիրները, կատարելագործել երիտասարդության գաղափարա-
կան դաստիարակության բոլոր ձևերը։ Երևանի երիտասարդ էլեկտրամեքե-
նաշինարարները, Լենինականի մանածագործները, Կիրովականի քիմիագործ-
ները, Ղափանի հանքագործները քաջ գիտեն իրենց անելիքը հնգամյակի խըն-

դիրները ժամկետից շուտ լուծելու համար: Ձեռնարկությունների արտադրամասերի, բրիգադաների, տեղամասերի կոմերիտական կազմակերպություններն իրենց առջև դրված այդ կարևորագույն խնդիրները կարողանում են լուծել շնորհիվ երիտասարդ բանվորների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի ուժեղացման, պրոֆտեխնիկական ուսուցման բարելավման:

Հանրապետության կոմերիտական կազմակերպությունների կոմերիտականները անձնական և կոլեկտիվ պարտավորություններ են վերցրել, որոնց հիմքում ընկած են աշխատանքի արտադրողականության աճի, արտադրվող արտադրանքի որակի, բանվոր դասակարգի և գյուղացիության աճող սերնդի ձևավորման, մասնագիտական վարպետության կատարելագործման հարցերը: Հոբելյանական տարում հանրապետությունում ստեղծվեց ՀամԼԿԵՄ 50-ամյակի անունը կրող ուսանողական առաջին շինարարական ջոկատը: Ավելի քան 2.000 ուսանող ամառային արձակուրդներին աշխատում էին քաղաքի և գյուղի շինարարական կարևորագույն օբյեկտներում: Գյուղի կոմերիտականները արշավ են կազմակերպել գյուղի կուլտուրայի բարձրացման համար: Մարտունու, Արտաշատի, Աշտարակի, Իջևանի շրջանների կոմերիտական կազմակերպությունները գործնական օգնություն են ցույց տալիս կուլտուրայի և կենցաղի օբյեկտների կառույցներին:

ՀամԼԿԵՄ 50-ամյակի առթիվ ծավալված մրցությունը կոմերիտական կազմակերպությունը դիտում է որպես Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, հնգամյակի ժողովրդատնտեսական պլանները ժամկետից շուտ կատարելու համաժողովրդական շարժման կարևորագույն փուլերից մեկը:

Հանրապետության կոմերիտմիության և երիտասարդության համար ՀամԼԿԵՄ 50-ամյակը ո՛չ միայն տոն էր, այլ, ամենից առաջ՝ 223 հազարանոց կոմերիտական բանակի անցած օրերի ու տարիների հաշվետվությունն էր Հայաստանի կոմունիստական կուսակցության առջև:

Իր կատարած քաղաքական-հասարակական բեղմնավոր գործունեության և աշխատանքային բազում սխրանքների համար համամիութենական լենինյան կոմերիտմիությունը արժանացավ Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի: Նրա տեղական շատ կազմակերպություններ, որոնց թվում և Հայաստանի Հոկտեմբերյանի շրջանի կոմերիտական կազմակերպությունը, պարգևատրվեցին շքանշաններով:

ՍՄԿԿ XXIII համագումարում ընդգծվեց, որ կոմերիտմիության գլխավոր խնդիրը երիտասարդությանը կոմունիզմի ոգով դաստիարակելն է: Իսկ դա նշանակում է՝ պատանիներին ու աղջիկներին պատվաստել մարքս-լենինյան աշխարհայացք, գաղափարական անխախտ համոզվածություն, կյանքի երևույթների հանդեպ դասակարգային մոտեցում: Կուսակցության մեզ առաջադրած խնդիրները չափազանց պարզ են ու հստակ: Դրանք հաջողությամբ լուծելու համար կիրառում ենք բազմապիսի ձևեր ու միջոցներ, որ ձեռք է բերել կոմերիտմիությունն իր գործնական աշխատանքում: Սակայն անհրաժեշտ է նաև ճիշտ ըմբռնել գաղափարական դաստիարակչական աշխատանքի պրակտիկան, նրա հիմնական ուղղությունները, չթերագնահատել կոնկրետ պատմական իրադրությունը, աղջիկների ու պատանիների հայացքների ձևավորման վրա զանազան օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների ազդեցությունը, չանտեսել, որ երիտասարդության համար այսօր առավել դժվար է տվյալ իրադրության մեջ կողմնորոշվելը, քան հեղափոխության տարիներին, երբ



հասարակության մեջ գոյություն ունեին հակամարտ դասակարգեր: Այժմյան երիտասարդությանը վիճակվել է հասարակության զարգացման ինչպես արտաքին, այնպես և միջազգային տեսակետից բավական բարդ ժամանակաշրջան: Մեր զարգացման դժվարընթաց ճանապարհը, կուսակցության պայքարը կյանքում լենինյան նորմերի վերականգնման համար, իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաները, չինական պառակտիչների ստեղծած հակասովետական ճակատը, Չեխոսլովակիայի դեպքերը— ահա այն պրոբլեմների ոչ լրիվ թվարկումը, որոնք հուզում են երիտասարդությանը և ազդում նրա հայացքների ձևավորման վրա: Մեր ժամանակի երիտասարդ մարդիկ ապրում են իրադրությունների չտեսնված դինամիզմի, բարդ երևույթներ ծնող բազմազանության մեծ ինֆորմացիայի, հակադիր հոսանքների գաղափարական սուր պայքարի պայմաններում:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումն (1968 թ.) ընդգծեց, որ պատմական զարգացման ժամանակակից փուլը բնորոշ է գաղափարական պայքարի խիստ սրմամբ: Բուրժուական գաղափարախոսները կոմունիզմի հանդեպ իրենց դիվերսիաները կատարելիս հույսները դնում են, ամենից առաջ, երիտասարդության վրա, ձգտելով նրանց շրջանում սերմանել անհատապաշտություն, հասարակական պասսիվություն, դասակարգային անհաշտ պայքարը Նենգափոխել մեշչանական բարեկեցիկ կյանք ձեռք բերելու պատրանքով, գաղափարական համոզվածությունը՝ անտարբերությամբ ու ապոլիտիզմով: Իրենց իդեոլոգիական պայքարում հակակոմունիզմի գաղափարախոսներն ի չարն են գործադրում Սովետական Միության՝ իրենց հնարած «սերունդների բախումը»: Սովետական մարդկանց «սերունդների բախման» շուրջ առաջացած աղմկարարության իսկական նպատակը սովետական երիտասարդությանը մոլորեցնելն է, նրա հեղափոխական ոգու սասանումը:

Պատմությանը մարքսիզմի դեմ պայքարի, սոցիալիզմի շինարարությունը վիժեցնելու, սերունդների հակադրման շատ դեպքեր են հայտնի: 20-ական թվականներին տրոցկիստները կոմունիստական կուսակցության, սոցիալիզմի շինարարության դեմ պայքարի ընթացքում երիտասարդության շրջանում էին հենարան փնտրում, շողոքորթելով՝ նրան վերագրում էին արտակարգ արժանիքներ: Բոլշևիկների կուսակցությանը մեղադրելով «վերասերման մեջ»՝ Տրոցկին ու նրա համախոհները հակադրում էին կուսակցության հին, փորձված կադրերին կուսակցական և անկուսակցական (հատկապես ուսանող) երիտասարդությանը: Կոմունիստների սերունդը պառակտելու, երիտասարդական միությունը կուսակցությունից կտրելու, երիտասարդ սերնդին բոլշևիկների կուսակցության դեմ օգտագործելու տրոցկիստների ջանքերը իովին տապալվեցին: ՉԿԿ ղեկավար խումբը ներկայումս Չինաստանի սերունդների հակադրումը հասցրել է ծայրահեղ չափի: Սովորող երիտասարդության մի մասը, դաստիարակվելով անհատի պաշտամունքի, կամայականության և նացիոնալիզմի պայմաններում, «կուլտուրական հեղափոխության» պատրվակի տակ, օգտագործվում է երկրի ամեն տեսակ օպոզիցիաների ճնշման, կուսակցական կադրերի ջախջախման համար: Բարձր գնահատելով երիտասարդության դերը հայրերի հեղափոխական վարքագիծը շարունակելու գործում, Լենինը, միաժամանակ, զգուշացնում էր. «մենք չպետք է շողոքորթենք երիտասարդությանը»: Նա խիստ պարզորոշ ձևակերպեց կուսակցության և երիտասարդ սերնդի փոխհարաբերության կարևորա-

գույն սկզբունքներից մեկը. հանուն երիտասարդական միությունների լիակատար ինքնուրույնության, բայց և հանուն նրանց սխալների, ընկերական քննադատության լիակատար ազատության։

Այսօր, ինչպես երբեք, մեծանում է երիտասարդ մարդու սոցիալական պատասխանատվությունն իր դերի, հասարակության մեջ իր տեղի համար։ Ուստի, կոմունիստական կազմակերպություններն իրենց գործունեության մեջ առաջնահերթ ուշադրություն պետք է նվիրեն երիտասարդության քաղաքական դաստիարակությանը։ Կոմերիտական կոմիտեները ձգտում են այդ գործը կատարել առավել նպատակասլաց և կոնկրետ, հաշվի առնելով երիտասարդության տարբեր վիճակները՝ տարիքը, կրթությունը, զբաղմունքը։

Հանրապետությունում մեծ աշխատանք է տարվում երիտասարդության շրջանում մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդման համար։ Բավական է ասել, որ ավելի քան 200 հազար աղջիկներ ու պատանիներ միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում, քաղաքական լուսավորության ցանցի բազմաթիվ խմբակներում և սեմինարներում տիրապետում են մարքս-լենինյան տեսությանը։ Ստեղծվել և ստեղծվում են քաղաքական կրթության նոր, արդյունավետ ձևեր։ «Մտահորիզոն», «Հայրենիք», «Գլոբուս», «Պրոմեթեոս», «Մեր լենինյան կոմերիտմիությունը», «Զրույցներ կուսակցության մասին»— խմբակների և քաղաքական ակումբների այս անունները խոսում են պրոբլեմների լայն ընդգրկման, հոծ երիտասարդության տարբեր խավերի շրջաններում արդյունավետ աշխատանք տանելու մասին։ Միաժամանակ, չի կարելի չնկատել, որ մեր պրոպագանդիստական աշխատանքը դեռևս բավարար ճկուն չէ։ Քաղաքական զրույցները հաճախ գորշ են, տաղտկալի։ Որոշ պրոպագանդիստներ, ինչպես հարկն է, չեն կարողանում ցույց տալ մեր նվաճումները, պատմել կուսակցության քաղաքականության մասին, խուսափում են արտահայտվել թերությունների շուրջ։

Վերջին ժամանակներս նշանակալի չափով բարձրացել է հանրապետության կոմերիտական ակտիվի գաղափարական ընդհանուր մակարդակը։ 2.700 պրոպագանդիստների մոտ 80 տոկոսը կուսակցության անդամ է կամ անդամության թեկնածու, ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։

Մեր գաղափարական հակառակորդները, չարաշահելով երիտասարդության աննշան մասի քաղաքական թույլ զինվածությունը, անփորձությունը, «ազատություն», «դեմոկրատիա», «լիբերալիզմ» տերմիններով ձեռնածությամբ են զբաղվում, դրանով ներգործում երիտասարդության վրա։ Ձախ ֆրազներն ազդում են ո՛չ միայն Արևմուտքի, այլև սոցիալիստական աշխարհում ապրող երիտասարդության որոշ խմբերի վրա։ Հայտնի է, որ վերջին ժամանակներս Չեխոսլովակիայում ուսանողության և երիտասարդ ինտելիգենցիայի մի մասը, քողարկվելով «դեմոկրատիայի» և «լիբերալացման» դրոշով, իրականում հանդես եկավ հակասոցիալիստական դիրքերից, պահանջելով բուրժուական դեմոկրատական կարգերի վերականգնում։ Այստեղ զգացվում էր Արևմուտքի երկարատև և միտումնավոր ազդեցությունը չեխ երիտասարդների վրա։

Ճիշտ չէր լինի ասել, որ երիտասարդության դաստիարակության գործը մեզ համար հեշտ է ու հարթ։ Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ Կենտկոմի պլենումում նշեց. «Այսօր մեզ չի կարող բավարարել այն, որ սովետական երի-



տասարդության բացարձակ մեծամասնությունը պատասխանատվության բարձր զգացումով կատարում է իր քաղաքացիական պարտքը, խորապես հասկանում է ու ակտիվ կենսագործում կուսակցության քաղաքականությունը։ Մեր խնդիրն է՝ պայքարել յուրաքանչյուր երիտասարդ մարդու, նրա համոզմունքների, կյանքում ունեցած նրա նոր և ակտիվ դերի համար։ Եվ դա, թերևս, լենինյան կոմերիտմիության ամենապատվավոր, ամենաշնորհակալ կոչումն է»։ Դժբախտաբար, հարկ է լինում երիտասարդության շրջանում բախվել այնպիսի երևույթների հետ, ինչպես գաղափարազրկությունն է, ապոլիտիկությունը, պորտաբուծությունը, խուլիգանությունը։ Սրանց գոյության պատճառները տարբեր են, բայց անվիճելի է, որ շատ բան բացատրվում է երիտասարդության շրջանում (դպրոցներում, արտադրական կոլեկտիվներում) տարվող կոմերիտմիության աշխատանքի որոշակի թուլացմամբ։ Մեզ, օրինակ, դեռևս չի հաջողվում մեր ազդեցության ոլորտը ներգրավել յուրաքանչյուր երիտասարդի, նրա կյանքի զարգացման բոլոր աստիճաններում։ Կոմերիտմիության և հասարակական կազմակերպությունների ներգործությունը երիտասարդության վրա թուլանում է հատկապես այն ժամանակ, երբ կարևոր փոփոխություններ են կատարվում աղջիկների ու պատանիների կյանքում։ Նրանք փոխում են իրենց միջավայրը— դպրոցից բուհ կամ աշխատանքի են գնում։ Այս դեպքում երիտասարդության զգալի մասը մնում է առանց կոլեկտիվի ներգործության։ Անբավարար է երիտասարդության վրա հասարակական ներազդեցությունը որոշ շրջաններում։ Կոմերիտական կազմակերպությունները ձգտում են շտկել հիշյալ թերությունները, այդ խնդրում ցուցաբերել պատշաճ նախաձեռնություն։

Կոմերիտական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի ուժեղացման հարցերն անմիջականորեն պայմանավորված են նրանց կազմակերպական քաղաքական մակարդակով։ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո հանրապետական կոմերիտական կազմակերպությունները առավել ուշադրություն են նվիրում կոմերիտմիության մեջ կուսակցական կորիզի ամրապնդմանը։ Այդ ժամանակաընթացքում զգալի չափով մեծացել է երիտասարդ կոմունիստների թիվը, որոնք անմիջաբար մասնակցում են կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը։ Բավական է ասել, որ այսօր շրջանային ու քաղաքային կոմիտեների բոլոր քարտուղարները ՍՄԿԿ անդամներ կամ թեկնածուներ են, կոմերիտական սկզբնական կազմակերպությունների յուրաքանչյուր երրորդ քարտուղար (բացի դպրոցներից) երիտասարդ կոմունիստ է։

Անցյալ տարվա կոմերիտական փաստաթղթերի փոխանակումը կարևոր միջոցառում էր։ Դա հնարավորություն ընձեռեց մոտիկից ծանոթանալու սկզբնական կոմերիտական կազմակերպությունների գործերի վիճակին։ Փոխանակման ընթացքում ավելի քան 50 հազար կոմերիտական հասարակական հանձնարարություն ստացան, մոտ 10 հազար ՀամԼԿԵՄ անդամ, որոնք առանց հաշվառումից հանվելու դուրս եկած էին համարվում, ընդգրկվեցին իրենց կազմակերպությունների աշխատանքներում։

XX դարը երիտասարդության համար հույսի և հուզումների, որոնումների և պայքարի դարաշրջան է։ Աշխարհում գնալով ավելի ու ավելի է մեծանում այն երիտասարդ մարդկանց թիվը, որոնք անցնում են մարքսիզմ-լենինիզմի դիրքերը, կոմունիստական կուսակցության և երիտասարդական կազմակերպություն-

ների շարքերը։ Եթե 1919 թ. երիտասարդական կոմունիստական ինտերնացիոնալի առաջին կոնգրեսում ՌԿԵՄ հետ միասին 14 երիտասարդական միություններ էին ներկայացվել, ուր հաշվվում էին 219 հազար կոմերիտական, ապա այսօր կոմունիստական միությունները գործում են ավելի քան 70 երկրներում, միավորելով 80 միլիոն հոգի։

Լենինյան կոմերիտմիությունն ակտիվ դեր է գրավում միջազգային երիտասարդական շարժման մեջ, մեր կուսակցության քաղաքականության պրոպագանդման համար օգտագործում իր կապերն ու կոնտակտները։ Ներկայումս ՀամԼԿԵՄ-ը կապեր է պահպանում 1.500 երիտասարդական և ուսանողական կազմակերպությունների հետ։ Առանց ամպագորգոռ արտահայտությունների և փքուն լոզունգների, սովետական երիտասարդությունը կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը, օգնում է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի իր հասակակիցներին։ Սովետական երիտասարդության պատվիրակները՝ մեր հիանալի մասնագետները, հայրենիքից հազարավոր կիլոմետրեր հեռու, կատարում են իրենց ինտերնացիոնալ պարտքը, նրանք անձնուրաց աշխատում են Ասուանի և Բհալայի շինարարություններում, Հնդկաստանի, Կամբոջայի, Մալիի և Ասիայի ու Աֆրիկայի երկրների դպրոցներում և ինստիտուտներում։

Տարեցտարի ընդլայնվում են մեր հանրապետության կապերն արտասահմանի հետ։ Միայն 1967 թ. արտասահմանում եղել են ավելի քան 900 պատանիներ ու աղջիկներ։

Հանրապետության կոմերիտական կազմակերպություններն իրենց տոնին նախապատրաստվելու օրերին մեծ գործունեություն ծավալեցին հոբելյանը արժանավայել, աշխատանքային անձնական նվերներով դիմավորելու համար։ Հայաստանի փառապանծ որդիների, բոցավառ հեղափոխականներ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Բ. Կնունյանցի, Ալ. Մյասնիկյանի, լեգենդար Կամոյի, Ղ. Ղուկասյանի, Հայրենական պատերազմի հերոսներ՝ Ն. Սաֆարյանի, Ն. Ստեփանյանի, Ս. Մաթևոսյանի, Հ. Ավետիսյանի ավանդներին հավատարիմ, սովետական ժողովրդի հեղափոխական և աշխատանքային տրադիցիաներին հարազատ հանրապետության պատանիներն ու աղջիկները ճիշտ են հասկանում, որ հայրերի գործին հավատարիմ մնալու իրենց լավագույն ապացույցը, ՀամԼԿԵՄ հոբելյանին արժանի նվերը՝ հայրենիքի բարօրության համար անձնուրաց աշխատանքն է։ ՀամԼԿԵՄ 50-ամյակի պատվին աշխատանքային հերթափոխի կանգնած հանրապետության երիտասարդության անձնուրաց ջանքերի օրինակները շատ են։ Այդ կոմերիտականներն են ակտիվ մասնակցում Արփա—Սևան ջրատարի, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի, Տաթևգէսի կառույցներին, կոմերիտական-երիտասարդական բրիգադներն են խաղողի և այլ այգիների համար յուրացնում զառիթափերն ու ադուտները, այդ նրանք են կառուցում Էջմիածնի, Արտաշատի, Մարտունու, Նոյեմբերյանի, Եղեգնաձորի շրջանների ոռոգման սիստեմները։

Հայրենանվեր աշխատանքում երևան են գալիս լավագույն գծերը մեր երիտասարդության, որը գործով ապացուցում է իր հավատարմությունը կոմունիստական կուսակցությանը։

---

ՄԻՐԶՈՅԱՆ Բ. Ս.

# ՆՈՐ ՀԱՄԱՐԱԿԱՐԳ, ՆՈՐ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ

(ԵՐԵՎԱՆԻ 2750-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Դարավոր պատմության տարբեր հատվածներում Հայաստանն ունեցել է իր քաղաքամայրը՝ ազգի պետականության, հարատևության խորհրդանիշն ու կենտրոնը։ Եվ ամեն անգամ, երբ «քաղաքակիրթ» պետությունների ու բարբարոս ցեղերի ասպատակություններից կործանվել, փլատակների են վերածվել Հայաստանի քաղաքները, ժողովուրդը միշտ կարողացել է ոտքի կանգնել, հավաքել իր ուժերը, նոր ամրոցներ ու քաղաքներ կառուցել, ճարտարապետական հոյակապ կոթողներ կերտել, բարգավաճել, օտարազգի ոսոխներից իր պատիվը պաշտպանել։ Այսպես ծնվել և իր ժամանակին շեն ու մեծ քաղաքներ են եղել Տիգրանակերտը, Երվանդաշատը, Դվինը, Անին, Արտաշատը, Վաղարշապատը և Հայաստանի մյուս մայր քաղաքները, որոնք իրարից ժառանգել են ազգի՝ ապրելու, հարատևելու և ստեղծագործելու տենչը։

Որքան նոր, նույնքան հին է նաև այսօրվա մեր քաղաքամայրը՝ Երևանը։ Իր կրծքի տակ դարեր շարունակ նա պահել է այն սեպագիր արձանագրությունը, որում ասված է. «Խալդի աստծու մեծությամբ Արգիշտին, Մենուայի որդին այս հզոր բերդը կառուցեցի. նրա համար սահմանեցի Էրեբունի անունը. Բիաինիլի երկրի հզորության համար և թշնամական երկրին ի սարսափ»: Արինբերդի և Կարմիր բլուրի պեղումները, պատմական փաստաթղթերը վկայում են, որ Էրեբունի Երևանն այդ ժամանակից ի վեր չի դադարել գոյություն ունենալուց։ Այն անցել է պատմական բազում փորձությունների միջով, մաքառել, ոտքի կանգնել, վերաշինվել, ապրել, որպեսզի 27 դար անց հավաքագրի կործանումից հազիվ փրկված ազգի բեկորները, դառնա Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության նոր մայրաքաղաքը։

Երևանը միջնադարում ևս, հատկապես այն բանից հետո, երբ Արարատյան դաշտավայրի կենտրոնական քաղաքները՝ Դվինը, Անին, Ջուղան, կործանվում և դուրս են գալիս պատմական ասպարեզից, առևտրական կարևոր դեր է խաղացել Արևմուտքից-Արևելք տանող ճանապարհի վրա, եղել է Արարատյան նահանգի, մի ամբողջ դար էլ՝ պարսկական խանություններից մեկի կենտրոնը։ Մակայն հենց որ քաղաքի տնտեսական կյանքն աշխուժանում էր, նրա վրա էր

բևեռվում թուրքական ու պարսկական զավթիչների ուշադրությունը, այն կռվախնձոր էր դառնում նրանց միջև։ Տասնչորս անգամ ձեռքից ձեռք է անցել քաղաքը, նրա բնակիչները թալանվել են, իսկ մի մասը՝ ոչնչացվել, քշվել է հայրենի շենից։

Ցարական Ռուսաստանի գրեթե մեկդարյա տիրապետության ժամանակաշրջանում Երևանը գավառային, ապա նահանգական ծայրամասային այն քաղաքներից էր, որտեղ կապիտալիստական հարաբերությունները չզարգացան այնպես, ինչպես, ասենք, Բաքվում կամ Թիֆլիսում։ Արդյունաբերության ու առևտրի զարգացման որոշ տենդենց է նկատվել միայն XIX դարի վերջին և XX դարի սկզբի երկու տասնամյակում։ Դրա շնորհիվ 20 տարում (1890—1910 թթ.) քաղաքի բնակչությունը կրկնապատկվում, հասնում է 31,5 հազարի։

Առաջին համաշխարհային պատերազմի և դաշնակցության տիրապետության տարիներին քաղաքը տնտեսական անկում է ապրել։ Սովետական կարգերը նախկին Երևանից ժառանգում են ավերված ու կավաշեն թաղամասեր, քանդված, ծուռ ու մուռ փողոցներ, սովից հյուծված ու անօթևան բնակիչներ, համաճարակ, մարդկանց դիակներ։

Արևելյան Հայաստանում սովետական իշխանության հաստատման նախօրյակին քաղաքն ուներ 48 հազար բնակիչ։ Դառնալով սոցիալիստական նորաստեղծ հանրապետության մայրաքաղաքը, աշխարհով մեկ ցրված հայերի իղձերի իրականացման օջախը, Երևանն, ասես, զարթնում է դարավոր քնից, մեծ վերելք ապրում, տարածում թևերը Արարատյան դաշտավայրով, Քանաքեռի, Արաբկիրի, Աշտարակի սարահարթերով մեկ, միավորում հայ ժողովրդի միտքն ու եռանդը և կես դարը դեռ չբոլորած, վերածվում արդյունաբերական ու կուլտուրական խոշոր կենտրոնի՝ 700 հազար բնակչությամբ։ Այստեղից հետևում է, որ մեր մայրաքաղաքի բուռն զարգացման համար վերջին հիսնամյակում, սովետական իշխանության տարիներին, ստեղծվել են սոցիալ-տնտեսական ու քաղաքական բարենպաստ պայմաններ։

Առավել բարձր տեմպերով աճեց Երևանի բնակչությունը։ Բնական աճի հետ մեկտեղ այստեղ եկել ու գալիս են շատ շատերը, մանավանդ երիտասարդները։ Չէ՞ որ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում ճառագեց Հոկտեմբերի արևը։ Ծանր ու երկարատև պայքարի, բազում զոհերի, անլուր տառապանքների գնով ձեռք բերված այդ մեծագույն հաղթանակով հաջողվեց փրկել հոգեվարք ապրող մի ողջ ժողովուրդ։ Իրեն օգնության հասած ժողովուրդների հետ մեկտեղ միավորվելով սոցիալիստական հանրապետությունների եղբայրական մեծ ընտանիքում, նա ձեռք բերեց այն ամենը, ինչ երազել էր— ազատ, ապահով հայրենիք, ամեն շահագործումից ձերբազերծված աշխատանք, անշահախնդիր, անկեղծ եղբայրություն այլ ազգերի հետ, ազգային մշակույթի ծաղկման ու զարգացման լայն հնարավորություններ և, որ ամենակարևորն է, պետականություն, որից նա զրկվել էր դարեր ի վեր։ Նոր պետություն, նոր մայրաքաղաք։

Ընթանալով սոցիալիզմի կառուցման ուղիով, հայ ժողովուրդը փրկվեց բնաջնջման վտանգից և իսկական վերածնունդ ապրեց. նկատելիորեն բարձրացավ բնակչության աճը և տարեկան հասավ 3—3,5 տոկոսի, մոտ երկու անգամ գերազանցելով Միության բնակչության միջին աճի տեմպերը։ Եվ, քանի որ գլխավորապես Երևանում էին կենտրոնանում հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական օբյեկտները, տրանս-



պորտը, առևտուրը, գիտական, կուլտուրական օջախները և ուսումնական հաստատությունները, կառավարական հիմնարկությունները, ապա այն մեծ ձգողականություն ձեռք բերեց աշխարհով մեկ ցրված հայ ժողովրդի հավաքագրման գործում։

Այստեղ կարելի է մոտ 80 բանվորական պրոֆեսիայի տիրապետել, դառնալ ինժեներ, բժիշկ, ուսուցիչ, ագրոնոմ, անասնաբույժ, տնտեսագետ, պատմաբան, լեզվաբան, երաժիշտ, դերասան, նկարիչ... Ավելի քան 600 հազար մարդ այստեղ «երևանցի» չեն։ Եվ սոցիալական խիստ խայտաբղետ, բայց առավելապես աշխատավոր գյուղացու ծոցից ելած բազմահազար այդ զանգվածը տարիների ընթացքում փոխել է իր զբաղմունքն ու սոցիալական կազմը, ապրելակերպը, բնավորությունը, կուլտուր-կրթական մակարդակը, դարձել իսկական երևանցի։

Նախասովետական Երևանն ըստ էության կազմավորված բանվոր դասակարգ ու մտավորականություն չի ունեցել։ Այն գերազանցապես արհեստավորների ու տնայնագործների, մանրավաճառների ու ծառայողների քաղաք էր։ Արտադրության միջոցների հանրայնացման ու երկրի ինդուստրացման շնորհիվ փոխվեց Միության բոլոր քաղաքների, այդ թվում և Երևանի բնակչության սոցիալական կազմը։ Այսպես, 1959 թ. մարդահամարի տվյալներով, քաղաքի մոտ 517,8 հազար բնակչից 191,1 հազարը զբաղված էր ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի տարբեր բնագավառներում։ Ընդ որում, նրանց 55,9 տոկոսը բանվորներ էին, 37,4-ը՝ ծառայողներ, մնացածը՝ կոլտնտեսականներ, ազատ պրոֆեսիայի մարդիկ, կոոպերացված և չկոոպերացված տնայնագործներ։ Բնակչության 92,3 տոկոսը հայեր էին։ Աշխատող բնակչության զգալի մասն ուներ միջնակարգ ու բարձրագույն կրթություն։ Անցած 9—10 տարիներին առավել ցայտուն փոփոխություններ են տեղի ունեցել քաղաքի բնակչության սոցիալական ու դեմոգրաֆիական (ժողովրդագրական) կազմում, զբաղվածության, ապրելակերպի, կուլտուր-կրթական մակարդակի մեջ։

***

Երևանի արագ զարգացման հիմքը, այն կազմավորող հիմնական գործոնը սովետական իշխանության տարիներին ստեղծված խոշոր արդյունաբերությունն է. մեր մայրաքաղաքում այժմ մեկ օրում թողարկվում է ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան արտադրվում էր 1913 թվականին։ Ասենք, նախկին Երևանն, ըստ էության, խոշոր արդյունաբերություն չի էլ ունեցել։ Քաղաքում գործում էին գինու-կոնյակի, կաշվի, թաղիքի, խառատա-մեխանիկական, աղյուսի և այլ մանր, գերազանցապես տնայնագործական 92 ձեռնարկություն, ուր աշխատում էին 580 բանվոր։ Ընդ որում, արդյունաբերական ամբողջ պատույտի 90 տոկոսը տալիս էին սպիրտի թորման 4 գործարանները՝ 150 բանվորով։ Իսկ 1965 թվականի տվյալներով, ինքնուրույն բալանսով աշխատող մոտ 200 ձեռնարկությունից միայն 2,7 տոկոսը 100-ից պակաս բանվոր ուներ։ Դրանց կեսը 1000-ից ավելի, այդ թվում 16 տոկոսը՝ 3000-ից ավելի բանվոր ունեցող խոշոր միավորումներ, կոմբինատներ, գործարաններ են։ Ամեն մի այդպիսի ձեռնարկություն մի նոր քաղաքի հիմնադրման ու զարգացման բազա կարող է դառնալ։

Ներկայումս Երևանի արդյունաբերությունն այնքան բազմաճյուղ է և այնքան բազմատեսակ արտադրանք է թողարկում, որ ո՛չ միայն Սովետական

Միության ցանկացած հանրապետությունում ու երկրամասում, այլև արտասահմանյան տասնյակ երկրներում կարելի է հանդիպել երևանյան (հայկական) մակնիշով շարժական էլեկտրակայաններ, գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, էլեկտրալամպեր, ժամացույց ու ճշգրիտ սարքեր, հաշվիչ մեքենաներ, հաստոցներ, կաբել, քիմիական բազմատեսակ նյութեր, կոնյակ, գործվածք ու տրիկոտաժ, կոշիկ և արդյունաբերական բազմաթիվ այլ ապրանքներ:

Քաղաքն աստիճանաբար մասնագիտանում է մեքենաշինության, մասնավորապես էլեկտրամեքենաշինության, հաստոցաշինության, գործիքաշինության, ճշգրիտ սարքաշինության, ռադիոէլեկտրոնիկայի, ավտոմոբիլաշինության ուղղությամբ, որոնք առավել աշխատատար լինելով, պահանջում են բանվորական ու ինժեներա-տեխնիկական բարձրորակ կադրեր: Պատերազմի նախօրյակին, մեքենաշինական ու մետաղամշակման բոլոր ձեռնարկություններում աշխատող բանվորների թիվը չէր հասնում 1000-ի, իսկ 1966 թվականին այստեղ կենտրոնացված էր արդյունաբերական բանվորների 38,1 տոկոսը (մոտ 35,6 հազար մարդ):

Երևանը Միության մեջ որոշակի տեղ է գրավում նաև բազմատեսակ արտադրանք թողարկող, ժամանակակից տեխնիկայով հագեցած քիմիական, դունավոր, թեթև, սննդի և արդյունաբերության այլ ճյուղերի ձեռնարկություններով:

Որակյալ բանվորական կադրերի ու մասնագետների, տեխնիկայի ու կառավարման փորձի բացակայության պայմաններում կառուցված փոքր ձեռնարկություններից՝ ժամանակակից գիգանտ գործարաններ, որտեղ լուծվում են ամենաբարդ տեխնիկական ու տեխնոլոգիական հարցեր: Այսպիսի դժվարին ու փառավոր ուղի է անցել մեր մայրաքաղաքի արդյունաբերությունը: Այսօր արդեն 100 հազարի է հասնում Երևանի բանվորների և 15 հազարի՝ ինժեներա-տեխնիկական անձնակազմի թիվը: Արդյունաբերության և նյութական արտադրության մյուս ճյուղերի բուռն զարգացման շնորհիվ Երևանն աստիճանաբար դարձել է որակյալ բանվորների ու տեխնիկական մտավորականության քաղաք: Եվ իրոք, եթե նախապատերազմյան շրջանի համեմատությամբ քաղաքի բնակչությունն աճել է 2,5 անգամ, ապա միայն արդյունաբերության մեջ աշխատող բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի թիվն ավելացել է 6 անգամ:

Առավել արագ է աճել մտավորականության այն ջոկատը, որն ապահովում է արտադրության կառավարումը, գիտության զարգացումը, տեխնիկական առաջադիմությունը:

Ինչպես մարդու օրգանիզմը չի կարող գործել առանց կենտրոնական նյարդային համակարգության, այնպես էլ ժամանակակից հասարակությունն ու արտադրությունը չեն կարող գոյություն ունենալ ու զարգանալ առանց կենտրոնական կառավարման օրգանների ու գիտահետազոտական հիմնարկությունների: Երևանն այդ իմաստով Հայաստանի ուղեղն է, որտեղ մշակվում են հանրապետության նոր քաղաքների ու գործարանների կառուցման նախագծերը, կանխագծվում ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները, ստեղծվում արտադրանքի նորագույն տեսակների (ընդհուպ բարդ հաշվիչ ու կառավարող մեքենաների) նմուշներ, արվում կարևոր հայտնագործություններ, գիտատեխնիկական ու սոցիալ-տնտեսագիտական ուսումնասիրություններ:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման, նրա բնակչության կենսապայմանների, հոգևոր ու կուլտուրական կյանքի բարելավման համար վճռա-



կան դեր են խաղում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Մինիստրների սովետի, պետպլանի, ճյուղային մինիստրությունների ու գերատեսչությունների որոշումներն ու միջոցառումները: Դրանց գիտական մշակումն ու հիմնավորումը կարևոր նշանակություն են ստանում, հատկապես, տնտեսական ռեֆորմի իրականացման, ժողովրդական տնտեսության ու հասարակական կյանքի կառավարման լենինյան դեմոկրատական սկզբունքների կիրառման արդի պայմաններում:

Մայրաքաղաք Երևանում են գործում՝ ՀԿԿ Կենտկոմը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, Մինիստրների սովետն իր 23 մինիստրություններով, Պետպլանով և 19 կոմիտեներով, ՀԿԿ Երևանի քաղկոմն իր վեց շրջանային կոմիտեներով, աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետն իր շրջանային վեց սովետներով, ինչպես և հանրապետական ու միութենական բազմաթիվ վարչա-տնտեսական, կուլտուր-հասարակական հիմնարկություններ ու հաստատություններ:

**Երևանը Միության խոշորագույն գիտական կենտրոններից մեկն է:** Այստեղ հետպատերազմյան ժամանակաշրջանում, հատկապես վերջին տասը տարում, կազմակերպվել է գիտահետազոտական հիմնարկությունների լայն ցանց (40 ինստիտուտ, 20 սեկտոր, լաբորատորիա, փորձակայան, կոնստրուկտորական բյուրո), որի բազմահազար գիտական աշխատողներն զբաղված են ո՛չ միայն հանրապետական, այլև միութենական ու համաշխարհային նշանակություն ունեցող գիտատեխնիկական հարցերի մշակմամբ:

**Երևանն ուսանողական քաղաք է:** Այն դարձել է հանրապետության ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի տարբեր բնագավառների համար բարձրորակ մասնագետների պատրաստման խոշոր կենտրոն, գիտության ու տեխնիկայի նվաճումները կոփելու դարբնոց: Բավական է նշել, որ ներկայումս քաղաքի 11 բուհերում և 25 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ավելի շատ ուսանող է ընդգրկված, քան 1926 թ. նրա բնակչության թիվն էր՝ 64,6 հազար:

**Կուլտուրական հիմնարկների խոշոր կենտրոն է Երևանը:** Այն հայտնի է իր թատրոններով (6), երաժշտական բազմաթիվ խմբերով, թանգարաններով (12), աշխարհահռչակ մատենադարանով, մասսայական գրադարաններով (55), կինոթատրոններով (27), որոնք նույնպես լուսավորում են մեր ժողովրդին, հարստացնում նրա հոգևոր աշխարհը, ինչպես և այլազգի ժողովուրդներին հաղորդակից դարձնում մեր պատմական անցյալի և ժամանակակից մշակութային նվաճումներին: Նույն ֆունկցիաներն են կատարում, նպաստում նոր մարդու դաստիարակությանը և մեր մշակույթի զարգացմանը Երևանի տասնյակ թերթեր ու հանդեսներ, հրատարակչություններ, հեռուստացուցային և ռադիոհաղորդումների կենտրոններ, կինեմատոգրաֆիայի ստուդիան, գրողների, նկարիչների, ճարտարապետների միություններ և այլն:

***

Երևանն այսօր համարվում է աշխարհի գեղեցիկ քաղաքներից մեկը, որով հպարտանում է հայ ժողովուրդը, հիանում, էսթետիկական մեծ բավականություն են ստանում օտարազգի այցելուները: Նա հայտնի է ճարտարապետական անկրկնելի կոթողներով ու հոյակապ հրապարակներով, լայնարձակ մայրուղիներով, վարդագույն, տուֆակերտ շենքերով, գողտրիկ պուրակներով, սաղարթախիտ զբոսայգիներով, շատրվաններով, ջրավազաններով, որոնց մեջ

մարմնացել է «ոսկե ձեռքերով» հայ շինարարի դարավոր փորձը, ճարտարապետների հին ու նոր սերնդի ստեղծագործ տաղանդը:

Ակադեմիկոս Ա. Թամանյանի մշակած՝ Երևանի առաջին գլխավոր հատակագիծը (1924 թ.) այսօր էլ կազմում է քաղաքի կոմպոզիցիայի առանցքը: Նրա մտահղացմամբ է ստեղծվել Լենինի հրապարակը՝ քաղաքի սիրտը, ճարտարապետական կոթողների այդ անկրկնելի թանգարանը: Այժմ ևս Թամանյանի ոգով շարունակում է կառուցվել մեր մայրաքաղաքը: Նրա նշանաբանը եղել և մնում է՝ կառուցել նոր կյանքի պահանջներին համեմատ: Քաղաքը մի հսկայական շինարարական հրապարակ է, որի սահմաններն ընդարձակվել են ավելի քան 10 անգամ, ընդարձակվել մարդկանց նախապես մշակված պլանով, երբեմն էլ՝ նրանց կամքին հակառակ արագությամբ և ուղղությամբ: Նրա բնակչության աճի տեմպերն այնքան անակնկալ էին, որ չորս տասնամյակում չորս անգամ կազմվել ու վերակազմվել են քաղաքի զարգացման հատակագծերը: Չնայած դրան, ընդհանուր առմամբ այն կառուցվել է ճիշտ, ազգային հարուստ ավանդական ճարտարապետության և ժամանակակից տեխնիկայի ու քաղաքաշինության պահանջներին համապատասխան: Այստեղ արտացոլվել են սոցիալիստական քաղաքի զարգացման օրինաչափությունները:

Քաղաքում ներկայումս աշխատում է շինարարների մի մեծ բանակ (1965 թ. տվյալներով 23 հազար մարդ): Նրանց ջանքերով սովետական իշխանության տարիներին (1921—1966 թթ.) իրացվել են 1560 միլիոն ռուբլու պետական կապիտալ ներդրումներ, կառուցվել ներկայումս գործող բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները, շահագործման հանձնվել 2.225,9 հազար քմ. բնակելի տարածություն, 97,7 հազար աշակերտական տեղով 156 դպրոցական շենք (1933—1966 թթ.), բազմաթիվ հիվանդանոցներ, հասարակական շենքեր, խանութներ, կոմունալ կառուցվածքներ ու կոմունիկացիոն գծեր: Բացի այդ, քաղաքային սովետի բյուջեի ու բնակչության խնայողության հաշվին միլիոնավոր ռուբլիներ են ծախսվել քաղաքի բարեկարգման, շենքերի պահպանման, անհատական բնակելի տների կառուցման նպատակով:

Երևանի, ինչպես և Միության բոլոր քաղաքների տնտեսության, բնակարանային պայմանների բարելավման բնագավառում մեծ բեկում սկսվեց վերջին տասը տարում, երբ կուսակցության ու կառավարության նախաձեռնությամբ խոշոր կապիտալ միջոցներ հատկացվեցին բնակարանային, ինչպես և կոմունալ ու կուլտուր-կենցաղային շինարարության ընդլայնմանը: Այդ տարիներին (1957—1967 թթ.) Երևանի բնակարանային ֆոնդն ընդլայնվեց 2,5 անգամ: Ստեղծվեցին նոր միկրոշրջաններ ու թաղամասեր: Տասնյակ տարիներ քաղաքը հիմնականում կառուցապատվում էր անբարեկարգ, անհատական տներով: Վերջին տասը տարում գրեթե դադարեցվել է այդ անկազմակերպ շինարարությունը, դրան փոխարինել բնակարանային կոոպերացիան: Քաղաքի բնակելի տարածության մեջ պետական շենքերի տեսակարար կշիռը 1968 թ. սկզբին հասավ 60 տոկոսի:

Ահա հին և նոր Երևանը, նրա բնակիչների կոմունալ-բնակարանային ու կուլտուր-կենցաղային պայմանները բնութագրող մի քանի բնորոշ տվյալներ ևս: 1923 թ. քաղաքն ուներ 4.688 բնակելի շենք (203,8 հազար քմ բնակելի տարածությամբ): Դրանց 99 տոկոսը մեկ-երկուհարկանի, մեծ մասամբ կավաշեն տնակներ էին: Բնակարանների 80 տոկոսը չուներ խոհանոց, 96,9-ը՝ ջրմուղ, 99,3 տոկոսը՝ կոյուղի: Անցել է 45 տարի, քաղաքի բնակարանային ֆոնդն ավելացել է 22,5 անգամ, իսկ յուրաքանչյուր բնակչին ընկնող բնակելի տարա-



ծությունը՝ 50 տոկոսով: Բայց ավելի շատ փոխվել են բնակելի շենքերի ներքին կոմունալ հարմարությունները: Քաղաքի մոտ 150 հազար բնակարաններում բնակվող ընտանիքների մեծ մասը օգտվում է մեր սարերի սառնաղբյուրների ջրերից (որոնք քաղաք բերելու համար կառուցվել են 11 ջրատար), բնական ու հեղուկ գազից, կենտրոնական ջեռուցումից և այլն:

Էլեկտրականությունը, գազը, դրանցով աշխատող բազմատեսակ սարքերը հիմնովին փոխել են կենցաղը, թեթևացրել կնոջ աշխատանքը: Երևանցիների մեծ մասը բնակարանը տաքացնելու և ճաշ պատրաստելու համար այլևս չի գործածում նավթ, ածուխ, փայտ (1960 թ. հետո նավթի վաճառքը պակասել է ավելի քան 2 անգամ): Երևանցին այլևս չի ցանկանում նույնիսկ գնել տեղական կահույք, չնայած դրա որակն զգալի չափով բարելավվել է:

Քաղաքի բնակարանների կահավորումը, բնակիչների կուլտուրան, ճաշակը, հոգեկան աշխարհը հիմնովին փոխում են դաշնամուրը, ռադիոընդունիչը, հեռուստացույցը, գիրքը և այլ կուլտապրանքներ, որոնց վաճառքը վերջին 10—11 տարվա ընթացքում (1956—1966 թթ.) ավելացել է ավելի քան 4, այդ թվում՝ երաժշտական ու ռադիոապրանքներինը՝ 10,5 անգամ (նկատենք, որ այդ տարիներին արդյունաբերական բոլոր ապրանքների շրջանառությունն ավելացել է 2,7 անգամ):

Գնալով բարելավվում է նաև սննդի ու հագուստի արտադրման բնույթը: Այսպես, 1955 թ. քաղաքի պետական ու կոոպերատիվ ամբողջ ապրանքաշրջանառության մեջ հացի, հացաբուլկեղենի, ալյուրի տեսակարար կշիռը կազմում էր 13,4, բամբակե գործվածքեղենինը՝ 5,6, իսկ 1966 թ.՝ 7,9 և 2,1 տոկոս: Երևանցին վաղուց միայն հացով ու չթով չի ապրում: Նա համեմատաբար ավելի շատ գնում և սպառում է՝ միս, կաթ, ձու, միրգ, բանջարեղեն, հյութեր, բրդե գործվածքներ, տրիկոտաժ, կաշվե նրբագեղ կոշիկներ, որոնց տեսակարար կշիռը քաղաքի ապրանքաշրջանառության մեջ, վերջին տասը տարում նկատելիորեն բարձրացել է:

Յուրաքանչյուր երևանցի զգում է, որ չնայած կենսապահանջների աճման, այժմ նա անհամեմատ լավ է սնվում ու հագնվում, ապրում է համեմատաբար բարեկարգ բնակարանում: Նա սկսել է ավելի հաճախ օգտվել հասարակական սննդի ծառայություններից, ուրախ ժամանց անցկացնել քաղաքից դուրս՝ բնության գրկում, հանգստանալ ու բուժվել առողջարաններում, տուրիստական ճանապարհորդություններ կատարել, սպորտով զբաղվել, հետևել տեխնիկայի ու մշակույթի նվաճումներին, ետ չմնալ նորաձևությունից, քաղաքական ակտիվություն ցուցաբերել:

Մենք իրավամբ հպարտանում ենք քաղաքամայր Երևանով, այստեղ ապրող ու ստեղծագործող աշխարհահռչակ գիտնականներով, արվեստագետներով, գրողներով, նրա աշխատասեր, եռանդուն մարդկանցով, ընդունակ, առողջ ու գեղեցիկ նոր սերնդով: Անսահման ուրախությունն է համակում մեր սիրտը, երբ 8—13 տարեկան երեխաներին համեմատում ենք 15—20 տարի առաջվա նույն տարիքի երեխաների հետ և տեսնում, որ նրանց հասակն ու կրծքավանդակի լայնությունն ավելացել են միջին հաշվով 5—6 սմ-ով, իսկ կշիռը՝ 14—16 տոկոսով: Հետպատերազմյան առաջին տարիների համեմատությամբ, մինչև մեկ տարեկան մանուկների մահացությունն իջել է ավելի քան երկու անգամ: Այս գործում մեծ է բժշկական աշխատողների երախտիքը: Քաղաքն ունի բուժհիմնարկների լայն ցանց, ուր մասնագիտական բուժօգնու-

թյուն է ստանում ո՛չ միայն մայրաքաղաքի, այլև հանրապետության մյուս բնակավայրերի և այլ վայրերի բնակչության զգալի մասը։

Նյութական բարիքների արտադրության, կոմունալ-բնակարանային ու կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության, տրանսպորտի, կապի միջոցների զարգացման բազայի վրա Երևանում ստեղծվել է հզոր ու բազմաճյուղ տնտեսություն, որտեղ միայն քաղաքային սովետի ենթակայության օբյեկտներում ներկայումս աշխատում են 68 հազար մարդ։ Նրանք են, որ 700 հազար երևանցիների կյանքը դարձնում են ավելի բարեկեցիկ, կենցաղը հաճելի, պահպանում առողջությունը, ապահովում երթևեկությունը... Նրանց աշխատանքով ու վերաբերմունքով է հաճախ կարծիք կազմվում Երևանի մասին։

* * *

Այնտեղ, ուր կա առաջադիմություն, զարգացում, կան նաև հակասություններ, չլուծված պրոբլեմներ։ Անտարակույս, երևանցիներին հուզող հոգսերն ու խնդիրները ամենևին երևանյան ծագում չունեն, այլ բխում են խոշոր քաղաքների օրինաչափություններից և ունեն սոցիալ-տնտեսական արմատներ։ Երևանյանն այստեղ այն է, որ ներկայիս համար պիտանի գեթ մի շենք, փողոց, խոշոր քաղաքներին հատուկ տրադիցիաներ այն չի ժառանգել, միշտ աճել, ընդլայնվել ու վեր է խոյացել, բայց ժամանակ չի ունեցել մի պահ կանգնելու, շունչ առնելու, շուրջը նայելու և նորից առաջ շարժվելու համար։

Մենք ամեն կերպ խրախուսել ենք Երևանի բուռն զարգացումը, մոռանալով, որ դրանով մեզ կերակրող հողերի, բերքատու այգիների զգալի մասը պետք է շինարարական հրապարակների վերածենք, գործարաններ ու բնակելի տներ կառուցենք և այստեղ վերաբնակեցնենք մեր լեռնաշխարհի, առողջության համար առավել բարենպաստ պայմաններում ապրող բնակչությունը (Երևանը, Էջմիածինը, Հոկտեմբերյանը և Արտաշատի շրջանները միասին զբաղեցնում են Հայկական ՍՍՀ տերիտորիայի 7 տոկոսը։ 1926 թ. այդտեղ բնակվում էր հանրապետության բնակչության 19, իսկ 1967 թ. 42 տոկոսը)։

Երևանում հավաքել ենք բնակչության մոտ $^{1}/_{3}$-ը և ուզում ենք այն դարձնել միլիոնանոց քաղաք, չխորհելով, որ դրանով խիստ դանդաղեցնում ենք մեր ազգի աճը, բնակչության ընդլայնված վերարտադրության տեմպերը (1961—1966 թթ. հանրապետության բնակչության բնական աճը դանդաղել է $^{1}/_{3}$-ով։ Ընդ որում, այդ պրոցեսն ավելի նկատելի է Երևանում, որտեղ բնակչության բնական աճը երկու անգամ ցածր է լեռնային շրջանների համեմատությամբ)։

Երևանի բնակչությունը հասցրել ենք 700 հազարի, այստեղ կենտրոնացրել հանրապետության արդյունաբերության մոտ $^{2}/_{3}$-ը, քաղաքը շրջապատել քիմիական արդյունաբերության ու գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններով, Սևանի և լեռնաղբյուրների հորդառատ ջրերը բերել, որ դրանք աշխատեն, բայց գրեթե ոչինչ չենք արել քաղաքի վրա կուտակված ծխի ամպերը, ձեռնարկությունների ու կոմունալ տնտեսությունների արտաթորած կեղտաջրերը թունազերծելու, մաքրելու համար։

Կուլտուրական, ուսումնական և գիտական օջախները, նույնիսկ գյուղատնտեսական ինստիտուտներն ու բուհերը կազմակերպել ենք Երևանում, ուր աճեցրած սածիլները՝ կենդանի մարդկանց, աքցաններով անգամ չենք կարող հանել, պոկել երևանյան հողից։

Ստեղծել ենք ազգային հարուստ կոլորիտով ու նուրբ օռնամենտներով ճարտարապետական հոյակապ անսամբլներ, հրապարակներ, կամուրջներ,



համարավետ բնակելի շենքեր, բայց միաժամանակ քաղաքի հիմնական տերիտորիան կառուցապատել 1—2 հարկանի մասնավոր տներով, կամա թե ակամա նպաստել հողի վատնումին, կարծելով թե ձրի է։

Վերջապես, մենք ժողովրդին տվել ենք կրթություն, ստեղծել կենցաղային ու կուլտուրական հիմնարկությունների լայն ցանց, բուհերում սովորողների թվով ու գրքերի հրատարակությամբ աշխարհում գրավել առաջին տեղերից մեկը (1000 շնչի հաշվով), բայց չենք կարողացել ինչպես հարկն է բարձրացնել բնակչության սպասարկման կուլտուրան, լիովին վերափոխել երևանցուն, կանխել արատավոր ու հակահասարակական շատ երևույթներ, որոնք վնասում են քաղաքացիների բարօրությանը։

Քաղաքի հակասական զարգացման այս պրոցեսը, անկասկած, իր վրա է կրում ժամանակի և տնտեսապես հետամնաց երկրում սոցիալիզմի կառուցման ու ինդուստրացման ընթացքում առաջացած անխուսափելի դժվարությունների ու սխալների կնիքը։ Այդ պրոցեսը հետևանք է նաև այն բանի, որ հաճախ խախտվել են ժողովրդական տնտեսության զարգացման համամասնությունները, չեն զուգակցվել քանակական ու որակական ցուցանիշները։ Գլխավոր պահանջը եղել է արտադրանքի քանակը, իսկ որակը թերագնահատվել։ Այսօր առաջին պլանի վրա է որակը։ Այս առումով մենք ասում ենք. եթե ուզում եք լուծել երևանյան պրոբլեմները, ապա չպետք է հեծել, շնչակտուր վազել ու ձգտել, որ մեր քաղաքը «բարով հասնի մինչև Արաքս ու Սևան»։

Միլիոն բնակչով մայրաքաղաքը մեր ցանկացածը չէ։ Չի կարելի փոքր մարմնի վրա մեծ գլուխ դնել։ Իհարկե, դա չի նշանակում, որ Երևանի տնտեսական, գիտական ու կուլտուրական կյանքը պետք է կանգ առնի, չզարգանա։ Այն առաջ կշարժվի, բայց ոչ թե այսպես կոչված, էքստենսիվ, այլ ինտենսիվ ուղիով։ Դրա համար, ամենից առաջ, անհրաժեշտ է Երևանում չկառուցել արդյունաբերական նոր օբյեկտներ, խիստ չընդլայնել գործող ձեռնարկությունները։ Պետք է միայն ողջունել, որ Հայաստանի ԿԿ Կենտկոմը և կառավարությունը, վերջին տարիներին աշխատանքային ռեսուրսների ավելցուկ ունեցող փոքր քաղաքներում ու գյուղական լեռնային շրջաններում արդյունաբերության ավելի ինտենսիվ զարգացման կուրս են վարում, որի շնորհիվ 60-ական թվականներին հանրապետությունում ամբողջությամբ վերցրած արդյունաբերությունն առաջին անգամ սկսեց ավելի արագ զարգանալ, քան Երևանում։

Արդյունաբերության համախառն արտադրանքի միջին տարեկան աճը Հայկական ՍՍՀ-ում և Երևանում (տոկոսներով)

| | 1920—1928 | 1929—1940 | 1946—1950 | 1951—1960 | 1961—1966 |
|---|---|---|---|---|---|
| Հայկական ՍՍՀ-ում | 16,6 | 19,9 | 21,8 | 12,2 | 9,8 |
| Երևանում | 24,9 | 24,6 | 26,2 | 14,3 | 8,2 |

Ոչ հեռու անցյալում, կենտրոնացված կապիտալ ներդրումների $^{2}/_{3}$-ը և ավելին հատկացվում էր Երևանի արդյունաբերության զարգացմանը, այնինչ ընթացիկ և հաջորդ հնգամյակում (1971—1976 թթ.) Երևանի բաժինն այդ ներդրումների մեջ աստիճանաբար կիջնի մինչև $^{1}/_{3}$-ի։ Դա լավ է, օրինաչափ, բխում է ինչպես Երևանի, այնպես էլ ամբողջ հանրապետության շահերից։ Սակայն ձեռնարկված միջոցները բավարար համարել չի կարելի։ Քաղաքում

կառուցվում և նախատեսվում է կառուցել արդյունաբերական, այդ թվում՝ քիմիական շատ ձեռնարկություններ։ Հաճախ ընդլայնման անվան տակ փաստորեն նոր խոշոր գործարան է կառուցվում։ Այսպես, մեր պետպլանի հաշվարկներով միայն չորս գործարանների (Կիրովի անվան, «Պոլիվինիլացետատ», ավտոդողերի, ալյումինի) ընդլայնման համար հաջորդ հնգամյակում նախատեսվում են մոտ 100 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, չնայած առանց այդ էլ քաղաքը լի է մեծ քիմիայի ձեռնարկություններով։ Պետք է մինչև վերջ հաղթահարել թույլ դիմադրության ու սխալ այն ճանապարհը, երբ առանց տեխնիկական ու սոցիալ-տնտեսական հիմնավորման ցանկացած արդյունաբերական օբյեկտը տեղադրում ենք Երևանում, մտածելով, որ դա ավելի էժան կնստի, աշխատուժով ապահովելու և նոր կոմունիկացիաներ ստեղծելու տեսակետից գլխացավանք չի պատճառի։

Քաղաքը կազմավորող մյուս գործոնները (շինարարություն, տրանսպորտ, ոչ-արտադրական ոլորտ) առավելապես պետք է զարգանան նրա բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը բարձրացնելու հաշվին։ Հանրապետական նշանակություն ունեցող հիմնարկությունների ընդլայնումը Երևանում նպատակահարմար չէ։ Ավելին, անհրաժեշտ է հանրապետության որևէ գեղատեսիլ վայրում ստեղծել գիտական և ուսումնական խոշոր կենտրոն, տեղափոխելով այնտեղ մայրաքաղաքի գիտահետազոտական ու բարձրագույն ուսումնական հիմնարկությունների զգալի մասը։

Հիշատակված և այլ կոմպլեքս միջոցները, մեր մյուս քաղաքների, գյուղական բնակավայրերի հետագա բարեկարգումը, ամենուրեք բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակի բարձրացումը, հաղորդակցության, կապերի կատարելագործումը ռեալ հնարավորություններ կստեղծեն սահմանափակելու և կարգավորելու մեր մայրաքաղաքի բնակչության աճը։

Երևանի գլխավոր (թվով արդեն 4-րդ) հատակագծով քաղաքի ներկայիս գրաված տերիտորիան (23,7 հազար հեկտար) հետագայում չպետք է ընդլայնվի, չնայած ենթադրվում է, որ նրա բնակչության թիվը մինչև 1980 թ. կհասնի մոտ մեկ միլիոնի։ Իրոք, այդ տերիտորիան այնքան է ընդլայնվել ցածրահարկ շինությունների կառուցապատման հաշվին, որ եթե քաղաքաշինական նորմաներով առաջնորդվեն, ոչ միայն մեկ, այլև 2 միլիոն մարդ կարելի է բնակեցնել Երևանում։ Ուստի, նախատեսվում է քաղաքի տերիտորիան ինտենսիվ յուրացնելու, բազմահարկ շենքեր կառուցելու միջոցով այն դարձնել ավելի կոմպակտ, բարեկարգ ու գեղեցիկ, ավելորդ ծախսումներ չկատարել կոմունիկացիաների ընդլայնման և նոր տարածությունների բարեկարգման համար, խնայել քաղաքացիների ժամանակը։

Այդ նախագծով ապագա Երևանը մեզ ներկայանում է որպես քաղաքաշինական տարրերից բաղկացած մի բարդ ու միասնական օրգանիզմ, որտեղ մեկ միլիոն երևանցիներ (ինչպես նաև նրանց բազմահազար հյուրերը) կապրեն բազմահարկ, կոմունալ-կենցաղային նորագույն հարմարություններով օժտված բնակելի շենքերում ու հյուրանոցներում, կօգտվեն տրանսպորտի ամենատարբեր տեսակներից (այդ թվում մետրո, մոնոռելս, ճոպանուղի), երեխաները կապահովվեն նախադպրոցական հիմնարկություններով ու մեկհերթ դպրոցներով։

Քսանյոթդարյա արհավիրքներով լի ճանապարհ անցնելուց հետո Երևանը, կարմիր դրոշի հովանու տակ, կես դարում դուրս եկավ աշխարհի ինդուստրիալ ու կուլտուրական խոշոր կենտրոնների առաջավոր բնագիծը, դարձավ համաշխարհային քաղաք։

ԱԴՈՆՑ Մ. Հ.

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Աշխատանքային ռեսուրսները դա աշխատունակ բնակչությունն է, որը հանդիսանում է հասարակական արտադրաուժի գլխավոր տարրը։ Դրանց լրիվ և արդյունավետ օգտագործումն ազգային եկամտի աճի վճռական գործոնն է։ Աշխատանքային ռեսուրսների աճը, ամենից առաջ, պայմանավորված է երկրի բնակչության աճով։ 1913 թ. համեմատությամբ, 1968 թ., Հայաստանի բնակչությունն աճել է 2,3 անգամ. գրեթե նույն չափով ավելացել են աշխատանքային ռեսուրսները։ Նախահեղափոխական Հայաստանի աշխատունակ բնակչության զգալի մասն աշխատանքով ապահովված չէր։ Ամեն տարի 10—12 հազար երիտասարդներ գյուղերից գնում էին Բաքու և այլ քաղաքներ աշխատանք փնտրելու։

Ոչ վաղ անցյալում Հայաստանի բնակչության մոտ 80 տոկոսն զբաղվում էր գյուղատնտեսությամբ, արդյունաբերության մեջ աշխատողների թիվը փոքր էր։ Սոցիալիզմի տնտեսական բազայի կառուցմամբ մեր երկրում իսպառ վերացվեց գործազրկությունը։ Էական փոփոխություններ կատարվեցին զբաղված բնակչության կառուցվածքում։ Այժմ մեր հանրապետության աշխատունակ բնակչության 35 տոկոսն աշխատում է արդյունաբերության ու շինարարության մեջ, մոտ մեկ երրորդը՝ գյուղատնտեսության, իսկ մնացածը՝ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում և սպասարկման ոլորտում։ Առանց էկոնոմիկայի ինդուստրացման, հնարավոր չէր ապահովել արագ աճող բնակչության լրիվ զբաղվածությունը և անընդհատ բարձրացնել աշխատավոր մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակը։

* * *

Կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանում աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը կարելի է բարձրացնել երկու եղանակով՝ զբաղվածության մակարդակի բարձրացմամբ և աշխատանքի արտադրողականության աճով։

Հայտնի է, որ մեզ մոտ վերացված է գործազրկությունը և զբաղվածության մակարդակը որոշվում է հանրային տնտեսությունում, անձնական օժանդակ ու տնային տնտեսության մեջ աշխատողների թվի հարաբերակցությամբ։

Աշխատունակ բնակչության ընդհանուր թվաքանակում որքան մեծ լինի հանրային տնտեսությունում զբաղված մարդկանց տեսակարար կշիռը, այնքան բարձր կլինի զբաղվածության մակարդակը և, հակառակը, որքան բարձր լինի անձնական օժանդակ տնային տնտեսության մեջ աշխատողների տեսակարար կշիռը, այնքան մեծ կլինեն աշխատանքային ռեսուրսների ռեզերվները:

Մեր երկրում աշխատունակ բնակչության զբաղվածության մակարդակը հանրային տնտեսության մեջ արագ է բարձրանում: 1960 թ. այն 78 տոկոս էր, 1965-ին՝ 87, իսկ 1970-ին՝ կկազմի 91 տոկոս: Հայկական ՍՍՀ-ում հանրային տնտեսության մեջ աշխատողների թիվը (16 տարեկանից բարձր տարիք ունեցող սովորողների հետ միասին) 1960 թ. կազմել է աշխատունակ բնակչության 71,5, 1965-ին 84, 70-ին կկազմի 86,7 տոկոսը: Աշխատունակ բնակչության մնացած մասն զբաղվել է անձնական օժանդակ և տնային տնտեսությամբ:

Նախորդ հնգամյակում հանրային տնտեսության մեջ զբաղված աշխատողների թիվը հիմնականում ավելացավ անձնական օժանդակ և տնային տնտեսության մեջ զբաղված աշխատողների հաշվին: ՍՍՀՄ-ում 1965 թ., 1960 թ. համեմատությամբ, բանվոր-ծառայողների թիվն ավելացավ 14,9 միլիոնով, որից 10,1 միլիոնը՝ օժանդակ և տնային տնտեսության մեջ աշխատողների, իսկ 4,8 միլիոնը բնակչության բնական աճի հաշվին:

Անցյալ հնգամյակում ազգաբնակչությանը պատերազմի պատճառած խոշոր վնասները իսպառ վերացված չէին. աշխատունակ բնակչությունը համալրվեց 1944—1949 թթ. ծնվածներով (այդ տարիներին ծնընդաբերության գործակիցը դեռևս ցածր էր): Հայաստանում ևս աշխատանքային տարիք ունեցող բնակչության աճը մեծ չէր, սակայն հանրային տնտեսության մեջ զբաղվածների թիվը 1965 թ., 1960 թվականի համեմատությամբ, ավելացավ 160 հազարով: Այդ աճը հիմնականում իրականացվել է անձնական օժանդակ և տնային տնտեսությունում աշխատողների կրճատմամբ: Այդ ժամանակամիջոցում օժանդակ տնային տնտեսության աշխատողներից 101 հազարն ընդգրկվել են հանրային տնտեսության մեջ:

Ընթացիկ հնգամյակում միանգամայն փոխվել են ժողովրդական տնտեսությունն աշխատուժով ապահովելու պայմանները: Այժմ հանրային տնտեսության աշխատողների ավելացումը գերազանցապես պետք է կատարվի ոչ թե անձնական օժանդակ և տնային տնտեսության աշխատողների կրճատմամբ, այլ աշխատանքային տարիք ունեցող բնակչության բնական աճով: Խիստ նվազել են անձնական օժանդակ և տնային տնտեսություններում եղած աշխատանքային ազատ ռեզերվները: Այդ պատճառով էլ հանրային տնտեսության աշխատողների ավելացման հնարավորությունները սահմանափակ են: ՍՍՀՄ-ում օժանդակ և տնային տնտեսության մեջ 1960 թ. զբաղված էր ողջ աշխատունակ բնակչության 22, 1968-ին՝ 13 տոկոսը, իսկ Հայկական ՍՍՀ-ում համապատասխանորեն՝ 28,6, 15,9 տոկոսը:

Նախորդ հնգամյակի համեմատությամբ, ընթացիկ հնգամյակում աշխատունակ բնակչության բնական աճը կավելանա մոտ 1,7 անգամ: Սակայն, քանի որ նվազել են աշխատանքային ազատ ռեսուրսների ռեզերվները, ժողովրդական տնտեսության արագ զարգացման շնորհիվ աշխատուժի պահանջարկն արագ է աճում: Այդ է պատճառը, որ մեր երկրի շատ շրջաններում աշխատուժի պակաս է զգացվում: Եթե 1967 թ. ժողովրդական տնտեսության մեջ աշխատող բանվորներն ու ծառայողները 700 հազարով ավելի էին պլա-



նով նախատեսվածից, ապա այժմ խոշոր քաղաքների արդյունաբերության մեջ աշխատողների փաստացի թիվը պլանայինից 3 տոկոս ցածր է:

Սակայն, բոլոր տեղերում չէ, որ աշխատուժի պակասը սուր բնույթ է կրում: Միջինասիական հանրապետություններում և Ադրբեջանական ՍՍՀ-ում դեռևս աշխատանքային ռեսուրսների զգալի ռեզերվներ կան: Հայկական ՍՍՀ-ում ևս դրանք փոքր չեն: Բայց այս հանրապետությունների ժողովրդական տնտեսության որոշ ճյուղեր աշխատող ձեռքի պակաս են զգում: Օրինակ, մեր հանրապետության շինարարական կազմակերպություններն ու արդյունաբերական շատ ձեռնարկություններ լրիվ ապահովված չեն աշխատուժով: Կապիտալ ներդրումների պլանների թերակատարման լուրջ պատճառներից մեկը աշխատուժի պակասն է: Պլանավորման գիտական մակարդակի բարձրացմամբ և կազմակերպական աշխատանքի բարելավմամբ միայն հնարավոր կլինի մեղմել և նույնիսկ վերացնել այդ պակասը:

Ընթացիկ հնգամյակում Հայկական ՍՍՀ աշխատանքային ռեսուրսները կաճեն զգալի չափով, ընդ որում՝ արդյունաբերության մեջ զբաղված բանվորների և ծառայողների թիվը՝ 72, շինարարության աշխատողներինը՝ 7, տրանսպորտի և կապի աշխատողներինը՝ 10, առևտրի և նյութատեխնիկական մատակարարման ցանցի աշխատողներինը՝ 12 հազարով: Ավելի արագ տեմպերով կաճի սպասարկման ճյուղերի աշխատողների թիվը: Միայն 1966—1967 թ թ. ժողովրդական կրթության, գիտության ու արվեստի աշխատողներն ավելացել են 14, իսկ առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի և սոցիալական ապահովության ցանցինը՝ 4,8 հազարով: 1967 թ. 16 տարեկանից բարձր տարիք ունեցող և արտադրությունից կտրված սովորողների թիվը հասել է 100 հազարի:

Նախատեսված է հնգամյակի ընթացքում 22 հազարով կրճատել կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններում աշխատողների թիվը: Մինչդեռ հնգամյակի անցած երկու տարում դրանց թիվը նվազել է միայն 5,8 հազարով, իսկ տնային տնտեսություններում աշխատողներինը՝ անփոփոխ է: Օժանդակ և տնային տնտեսություններում զբաղված աշխատանքային ռեսուրսների ռեզերվներն օգտագործելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է ընդլայնել նախադպրոցական հիմնարկների ցանցը, բարելավել բնակչության կենցաղսպասարկման գործը և հիմնովին վերակառուցել հասարակական սննդի կազմակերպությունների աշխատանքը: Ի դեպ, այդ բնագավառներում, մեր հանրապետության ցուցանիշները միութենական միջին ցուցանիշներից ցածր են: Անձնական օժանդակ տնտեսություններում և տնային տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը չափազանց ցածր է: Կոլտնտեսականի տնամերձ տնտեսության մեջ հեկտարի վրա 1957 թ. գործադրվել է 1481, իսկ մեկ գլուխ խոշոր եղջերավոր անասունի խնամքի համար՝ 400 մարդ-ժամ:

Աշխատանքային ռեսուրսների որոշ ռեզերվներ կան նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում: Մինչև այժմ գյուղը արդյունաբերությանն ու շինարարությանը աշխատուժ տրամադրող գլխավոր աղբյուրն է: Հայկական ՍՍՀ գյուղերից սովորելու և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում աշխատելու համար ամեն տարի քաղաք են եկել 18—20 հազար հոգի: Մինչև ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը գյուղական բնակչությունը դանդաղ էր աճում (զգալի թվով աշխատողներ փոխադրվում էին քաղաք): Այժմ, երբ գյուղական բնակչության եկամուտները նշանակալի չափով ավե-

լացել են և կոլտնտեսություններում կիրառվում է երաշխավորված վարձատրության սիստեմը, աշխատուժի հոսքը նվազել է։ Որոշ տեղաշարժեր են կատարվել նաև գյուղի աշխատանքային ռեսուրսների կառուցվածքում. իջել է երիտասարդ աշխատուժի տեսակարար կշիռը, իսկ կանանցն ու ծերերինը՝ բարձրացել։ Ավելի մեծ թվով երիտասարդների գյուղատնտեսական աշխատանքների մեջ ընդգրկելու հարցը շատ կարևոր է, որի համար պետք է բարելավել գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը, մեքենայացնել գյուղատնտեսական ծանր աշխատանքները և անցկացնել մի շարք այլ միջոցառումներ։

Գյուղի աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման համար, ամենից առաջ, պետք է ձգտել, որ բոլոր աշխատունակ կոլտնտեսականները տևականորեն մասնակցեն ընդհանուր տնտեսության աշխատանքներին։ 1956 թ. ՀՍՍՀ կոլտնտեսություններում ընդհանուր տնտեսության մեջ չեն աշխատել 20,8 հազար հոգի, որից 16,9 հազարը կանայք են։ Որոշ կոլտնտեսականներ տարվա ընթացքում աշխատել են միայն մի քանի տասնյակ օր։ Իսկ ամառվա ամիսներին կոլտնտեսություններն աշխատող ձեռքի խիստ պակաս են զգում։ Կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների տվյալներով, 1966 թ. մեր հանրապետությունում յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսական տարվա ընթացքում աշխատել է 192, իսկ ՍՍՀՄ-ում՝ միջին հաշվով, 228 օր։ Եթե յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսական տարվա ընթացքում ընդհանուր տնտեսության մեջ աշխատեր 276 օր, ինչպես սովխոզների բանվոր-ծառայողներն են, ապա նրանք լրացուցիչ կվաստակեին 13,5 միլիոն մարդ-օր։

Չափազանց կարևոր է գյուղատնտեսության սեզոնային ազատ աշխատանքային ռեսուրսների օգտագործումը։ Հայաստանում գյուղատնտեսական աշխատանքների ամենաեռուն ամիսը հուլիսն է։ 1966 թ. հունվարին հանրապետության կոլտնտեսություններում աշխատել են 61 հազար հոգի, ապրիլին 121, հուլիսին 168, նոյեմբերին՝ 100 հազար հոգի։ Ինչպես տեսնում ենք, հուլիսին կոլտնտեսություններում աշխատողների թիվը 2,7 անգամ ավելի է, քան հունվարին։ Դա նշանակում է, որ տարվա 5—6 ամիսը (նոյեմբերից-ապրիլը) Հայաստանի կոլտնտեսություններում 40—50 հազար հոգի չեն աշխատել։ Այդ աշխատուժն լրիվ տարին օգտագործելու համար անհրաժեշտ է գյուղում ստեղծել արդյունաբերական մանր ձեռնարկություններ, սեզոնային ճյուղերը զուգակցել այն ճյուղերին, որոնցում ողջ տարին աշխատուժը համաչափորեն զբաղված է (ջերմոցային բանջարաբուծությունը՝ բաց դաշտում տարվող բանջարաբուծության հետ)։ Բացի այդ, կոլտնտեսություններն ու սովխոզները ձմեռվա ամիսներին աշխատուժով կարող են օգնել մոտակա քաղաքների ադյունաբերական ձեռնարկություններին ու այլ կազմակերպությունների, պայմանով, որ վերջիններս ամառվա ամիսներին աշխատուժով օգնեն գյուղատնտեսական ձեռնարկություններին։

* * *

Աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման գլխավոր ուղին աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Մինչդեռ մեր հանրապետությունում, արդյունաբերության մեջ, այդ տեմպերը թուլացել են։ 1960—1966 թթ. միջին տարեկան տեմպերը կազմել են 3,1 տոկոս (Միության մասշտաբով այն 5,3 տոկոս է)։ Հայկա-



կան ՍՍՀ-ում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի
թուլացման պատճառներից են արդյունաբերության ճյուղային կառուցվածքում կատարված փոփոխությունները։ Բայց, անկախ դրանից, մեր արդյունաբերական ձեռնարկություններում կան աշխատանքի արտադրողականության բարձրացման խոշոր ռեզերվներ։ Առանց այդ ռեզերվների օգտագործման, ի վիճակի չենք առաջիկա տարիներին պահպանել արդյունաբերության զարգացման ներկայիս բարձր տեմպերը։ Հաշվումները ցույց են տալիս, որ մոտակա հեռանկարում միայն աշխատանքային ռեզերվների բնական աճի հաշվին կարելի է ապահովել արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը (մոտ 5,7 տոկոսով)։ Իսկ 12—13 տոկոսով արդյունաբերական արտադրանքի միջին աճ ապահովելու համար կպահանջվի արտադրողականությունը բարձրացնել 6—6,5 տոկոսով։ Այդպիսի արագ տեմպեր ապահովելու համար պետք է ամենուրեք արմատավորել առաջավոր տեխնիկան, կոմպլեքսային մեքենայացումը, բարձրացնել աշխատավորների տեխնիկական ու հանրակրթական մակարդակը, բարելավել արտադրության ու աշխատանքի կազմակերպումը։ Առաջին հերթին, անհրաժեշտ է մեքենայացնել ձեռքի ծանր աշխատանքը (բարձում ու բեռնաթափում, շինարարական քարի արդյունահանում ու մշակում, անասնապահություն, կոմունալ տնտեսություն)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար պետք է պայքարել աշխատուժի հոսունության դեմ, բարձրացնել աշխատողների որակավորումը։ Սակայն վերջին տարիներին, հոսունությունը որոշ չափով ավելացել է։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների և ծառայողների կեսից ավելին նույն ձեռնարկությունում 5 տարուց ավելի չի աշխատել։ Նույն ձեռնարկությունում մինչև 3 տարվա աշխատանքային ստաժ ունեն արդյունաբերության աշխատողների 39, շինարարության՝ 57, սովխոզների՝ 27, տրանսպորտի՝ 28 տոկոսը, այդ թվում՝ ավտոմոբիլային տրանսպորտի՝ 47 տոկոսը։ Հայկական ՍՍՀ-ում աշխատուժի հոսունությունն ավելի մեծ է։ 1967 թ. հուլիսի 1-ի դրությամբ, նույն ձեռնարկությունում մինչև 3 տարվա ստաժ են ունեցել արդյունաբերության մեջ աշխատող բանվոր-ծառայողների 47, շինարարության՝ 66,9, սովխոզների՝ 22,2 տոկոսը։

Արդյունաբերության մեջ աշխատուժի հոսունությունն ավելի մեծ է շինանյութերի արտադրության ձեռնարկություններում և մեքենաշինության մեջ։ 1967 թ. հուլիսի 1-ի դրությամբ, Հայաստանի շինանյութերի արդյունաբերության բանվոր-ծառայողների 26,9 տոկոսն ունեցել է մինչև 1, 18,4-ը՝ 1—3 տարվա աշխատանքային ստաժ։ Արդյունաբերության այս ճյուղի աշխատողների ընդհանուր թվի մեջ չափազանց ցածր է մինչև 25 տարեկան բանվոր-ծառայողների թիվը։ Աշխատուժի հոսունությունը բարձր է շինարարության մեջ։ Այստեղ ևս աշխատողների ընդհանուր թվաքանակում ցածր է երիտասարդ բանվորների տեսակարար կշիռը։ Մինչև 25 տարեկան բանվորները կազմում են միայն 17,3 տոկոսը։

Երիտասարդ աշխատողների թիվը ցածր է պետական ապարատում։ 1957 թ. հուլիսի 1-ի դրությամբ, մինչև 25 տարեկանները կազմել են պետական ապարատի բոլոր աշխատողների միայն 9, իսկ 50 և ավելի տարիք ունեցողները՝ 19,2 տոկոսը (մոտ 1,5 մասը)։

Երիտասարդները, հատկապես միջնակարգ կրթություն ունեցողները, հաճախ տեղից-տեղ են փոխադրվում։ Նրանց չի բավարարում տեխնիկապես

Հետամնաց ձեռնարկությունների հասարակ, միապաղաղ ու անհեռանկար աշխատանքը։ Աշխատուժի հոսունության դեմ պայքարելու համար անհրաժեշտ է, առաջին հերթին, մեքենայացնել ծանր աշխատանքները և հոգատար վերաբերմունք ունենալ երիտասարդ աշխատողների նկատմամբ։ Այս գործում մեծ նշանակություն ունի մասնագիտությունների ընտրությունը։ Հաճախ երիտասարդի ընտրած առաջին մասնագիտությունն անհաջող է, չի համապատասխանում նրա խառնվածքին ու ընդունակություններին։ Նույնիսկ բուհերն ընդունվելիս քիչ չեն դեպքերը, երբ աբիտուրիենտները մասնագիտություններն ընտրում են ո՛չ թե իրենց ընդունակություններին համապատասխան, այլ գործերը հանձնում են այն ուսումնական հաստատությունները, ուր համեմատաբար հեշտ է ընդունվել։ Եվ շատերն ավարտելուց հետո չեն աշխատում իրենց մասնագիտությամբ և այլ բնագավառ են փնտրում։ Մասնագիտությունների ընտրության գործում մեծ անելիքներ ունեն միջնակարգ դպրոցներն ու արտադրական ձեռնարկությունները։

Ձեռնարկություններում պետք է կիրառեն երկարատև աշխատանքը խթանող վարձատրության ձևեր։ Պլանավորման ու նյութական խթանման նոր կարգին անցնելուց հետո, արդյունաբերական շատ ձեռնարկություններում տարվա արդյունքների համար վճարում են այն աշխատողներին, որոնք ունեն տվյալ ձեռնարկությունում 3 տարվա և ավելի աշխատանքի ստաժ։ Մեր կարծիքով, այս ժամկետը, որոշ չափով, պետք է իջեցնել, քանի որ արդյունաբերության աշխատողների գրեթե կեսը տվյալ ձեռնարկությունում 3 տարուց ավելի աշխատանքի ստաժ չունի։

Սովետական Միությունում միլիոնավոր մարդիկ, իսկ Սովետական Հայաստանում հարյուր հազարավորներ, կենսաթոշակ են ստանում։ Բնակչության կենսամակարդակի բարձրացման, բժշկական սպասարկման բարելավման ու կյանքի տևողության երկարացման շնորհիվ կենսաթոշակի տարիք ունեցողների զգալի մասը կարող է աշխատել։ 1967 թ. ՀՍՍՀ-ում 40,3 հազար կենսաթոշակ ստացողներ աշխատել են հասարակական արտադրության մեջ, այդ թվում՝ պետական ու կոոպերատիվ ձեռնարկություններում՝ 34,7, կոլտնտեսություններում՝ 5,6 հազար հոգի։ Վերջին տարիներին թույլատրվում է թոշակառուներին աշխատելու տնտեսության մի շարք ճյուղերում։ Մեր կարծիքով, առաջիկայում պետք է խթանել նրանց աշխատանքը ժողովրդական տնտեսության մեջ, հատկապես սպասարկման ճյուղերում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծ ռեզերվներ կան վարչա-կառավարչական ապարատում։ Այժմ կառավարման բնագավառում աշխատողների տեսակարար կշիռը կազմում է բանվոր-ծառայողների ընդհանուր թվի 9 տոկոսը (ձեռնարկություններում ու հիմնարկություններում 7 տոկոս)։ Եթե չկատարելագործվեն կառավարչական ապարատի աշխատանքի ձևերն ու մեթոդները, հետագայում աշխատողների թիվն ավելի կաճի։

Մինչև այժմ վարչա-կառավարչական ապարատի անձնակազմը կրճատելիս գերազանցապես վերացվել են աշխատավարձի ցածր դրույք ունեցող հաստիքները, որի հետևանքով գործավարի, հաշվետարի և բարձր որակավորում չպահանջող այլ աշխատանքներ հանձնարարվել են ինժեներներին, տնտեսագետներին, որը իջեցրել է նրանց աշխատանքի արդյունավետությունը։ Շատ ձեռնարկություններում ճշտված չէ կառավարման ապարատի կառուցվածքը. բացակայում են որակավորման տեղեկագրերը, սահմանազատված չեն ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների պարտականությունները,



դեռևս մշակված չեն բարձրագույն կրթությամբ մասնագետների և որակյալ այլ աշխատողների նորմատիվները։ Այսպիսի պայմաններում զուգահեռականություն է առաջանում տարբեր պաշտոնյաների աշխատանքներում, և նույն աշխատանքը կրկնվում է մի քանի բաժիններում։ Կառավարման ապարատի աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, նշված թերությունների վերացման հետ միասին, պետք է օգտագործել էլեկտրոնային-հաշվիչ մեքենաները, կապի ժամանակակից սարքերն ու կառավարման ավտոմատիկ սիստեմի այլ միջոցներ։

Աշխատող ձեռքի պակասը մեղմացնելու նպատակով, տնտեսագետների համամիութենական խորհրդակցությունն իր հանձնարարականներում գրել է, որ առաջիկա տարիներին գործող ձեռնարկությունների արտադրանքի աճը, որպես կանոն, պետք է ապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, քանի որ աճող աշխատանքային ռեսուրսները բացառապես պետք է օգտագործվեն շահագործման հանձնվող նոր ձեռնարկություններում։ Անհրաժեշտ է կիրառել աշխատավարձի պլանավորման այնպիսի կարգ, որը խթանի յուրաքանչյուր ձեռնարկությունում աշխատող բանվորների և ծառայողների կրճատումը։

Այդ տեսակետից ուսանելի է Շչեկինսկու քիմիական կոմբինատի փորձը։ Այստեղ մասնագիտությունների համատեղման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և այլ միջոցառումների կիրառման շնորհիվ 1967 թ. աշխատողների թիվը կրճատվել է 300-ով։ Կոմբինատի համար 3 տարի ժամանակով սահմանված է աշխատավարձի կայուն ֆոնդ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ և բանվոր-ծառայողների թվի կրճատմամբ տնտեսված աշխատավարձի գումարը մնում է ձեռնարկության տրամադրության տակ։ Ձեռնարկությունների ղեկավարներն իրավունք պետք է ունենան տնտեսված գումարներն օգտագործելու լավ աշխատող բանվոր-ծառայողների լրացուցիչ վարձատրման համար։ Այս կոմբինատի փորձն ու աշխատողների կրճատումը խրախուսող մյուս ձևերն անհրաժեշտ է լայնորեն կիրառել մեր հանրապետության ձեռնարկություններում ու հիմնարկություններում։

* * *

Աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը կապված է արտադրաուժերի տեղաբաշխման հետ։ Երբեմն արդյունաբերական ձեռնարկություններ են կառուցվում այնպիսի վայրերում, որտեղ պահանջվող աշխատուժ չկա։ Դրա հետևանքով ձգձգվում է օբյեկտի շինարարությունը, իսկ շահագործման հանձնելուց հետո աշխատուժի պակասության պատճառով այն իր նախագծային կարողությամբ չի գործում։ Կան նաև այնպիսի շրջաններ, ուր նոր ձեռնարկություններ չեն կառուցվում և նրանց աշխատանքային ռեսուրսների մի մասը չի օգտագործվում, կամ ցածր արդյունավետությամբ է օգտագործվում։

Արդյունաբերության ոչ ճիշտ մասնագիտացման հետևանքով որոշ քաղաքներում լրիվ օգտագործվում է տղամարդկանց աշխատուժը, իսկ կանանց զգալի մասը հասարակական տնտեսության մեջ չի աշխատում։ Մինչև 1950-ական թվականները Լենինականում միակողմանիորեն զարգացել էր տեքստիլ արդյունաբերությունը և լրիվ օգտագործվում էր կանանց աշխատուժը, իսկ տղամարդկանց աշխատուժի մի մասը հնարավոր չէր տեղում

օգտագործել: Այլ էր պատկերը Ղափանում և Ալավերդում: Գունավոր մե-
տալուրգիայի ձեռնարկություններում գրեթե բացառապես օգտագործվում էր
տղամարդկանց աշխատուժը, իսկ կանանց աշխատուժի նշանակալի մասը
հասարակական տնտեսությունում չէր օգտագործվում: Վերջին 10—12 տա-
րում Լենինականում արագ զարգացավ մեքենաշինությունը, իսկ Ղափանում
և Ալավերդում կառուցվեցին վերամշակող արդյունաբերական ձեռնարկու-
թյուններ: Դրա շնորհիվ այժմ այդ քաղաքների տղամարդկանց և կանանց
աշխատուժը համաչափ է օգտագործվում:

Աշխատող ձեռքի պակասի պատճառով և մի շարք այլ նկատառումներով
ղեկավար մարմինների որոշմամբ ՍՍՀՄ խոշոր քաղաքներում սահմանա-
փակվում է արդյունաբերական մեծ ձեռնարկությունների կառուցումը:
Նույնն է Երևանում և որոշ չափով Լենինականում ու Կիրովականում:

Արդյունաբերական նոր ձեռնարկությունների մեծ մասն այժմ կառուց-
վում է միջին ու մանր քաղաքներում: ՍՍՀՄ պետպլանի առանձնացրած 7 խո-
շոր և 513 միջին ու մանր քաղաքներում կկառուցվեն նոր արդյունաբերական
խոշոր ձեռնարկություններ: Դրանց 70 տոկոսը 1967 թ. տեղադրվել է միջին
ու մանր քաղաքներում, իսկ 1968—1970 թթ. այդպիսի քաղաքներում կտե-
ղադրվի արդյունաբերական ձեռնարկությունների 60 տոկոսը: Հայկական
ՍՍՀ-ում 1967 թ. կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների մոտ
կեսը տեղադրվել է միջին ու մանր քաղաքներում: Առաջիկա տարիներին այն
կկազմի 60—70 տոկոս:

Սակայն միջին ու մանր քաղաքներում արդյունաբերական շինարարու-
թյունը նույն թափով ու մասշտաբներով չպետք է կատարել: Աբովյանում,
Չարենցավանում, Հրազդանում, Իջևանում, Էջմիածնում, Սևանում և մի քանի
այլ վայրերում այնքան ձեռնարկություններ են կառուցվել ու կառուցվում, որ
այժմ աշխատող ձեռքը չի բավարարում: Այդ քաղաքներում աշխատող
բանվորների զգալի մասն ապրում է շրջակա գյուղերում: Աբովյան քաղա-
քում աշխատող ինժեներա-տեխնիկական աշխատողների մոտ 80 տոկոսը
ապրում է Երևանում: Արդյունաբերական շինարարության հետ միասին
պետք է ծավալել բնակարանային և կուլտուր-կենցաղային օբյեկտների շի-
նարարությունը, որ հնարավոր լինի պահանջվող աշխատողներ հավաքագրել:
Բնակարանների առկայության դեպքում այդ հարցը հեշտությամբ կլուծվի:

Արդյունաբերական նոր օջախները բարձրորակ կադրերով ապահովելու
հարցը, համեմատաբար, հեշտ է լուծվում, երբ խոշոր քաղաքների մեծ ձեռ-
նարկությունները մանր քաղաքներում ստեղծում են իրենց ֆիլիալները: Հա-
յաստանի շրջաններում իրենց ֆիլիալներն են ստեղծել Հայէլեկտրո, էլեկտրա-
լամպերի գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ: Սրանց օրինա-
կին պետք է հետևեն հանրապետության մյուս խոշոր գործարաններն ու ֆաբ-
րիկաները:

Աշխատուժի պրոբլեմը դժվար է լուծվում նոր ոռոգվող հողերում կազ-
մակերպված սովխոզներում:

Ժողովրդական տնտեսությանն աշխատուժով ապահովելու գործում մեծ
անելիքներ ունեն աշխատանքային ռեսուրսների օգտագործման պետական
կոմիտեները: Այդ կոմիտեների առջև խնդիր է դրված՝ նպաստել աշխատան-
քային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացմանը և
ժողովրդական տնտեսությունը պլանային կարգով աշխատուժով ապահովե-
լուն: Նրանք պետք է ուսումնասիրեն բնակչության կազմը, հայտնաբերեն աշ-



խատանքային ռեսուրսների չօգտագործվող ռեզերվները, ապահովեն ազատ
աշխատուժի նպատակահարմար օգտագործումը, կարգավորեն աշխատանքա-
յին ռեսուրսների բաշխումն ու վերաբաշխումը տարբեր շրջանների և ժողո-
վրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև, բնակչությանը տեղյակ
պահեն աշխատուժի նկատմամբ ձեռնարկությունների պահանջների մասին,
կազմակերպեն բանվոր-ծառայողների հավաքագրումն ու նրանց վերաբնա-
կեցումը և այլն:

Հայկական ՍՍՀ մինիստրների սովետի աշխատանքային ռեսուրսների
օգտագործման պետական կոմիտեն շնորհակալ գործ է կատարում հանրապե-
տության շրջանների բնակչության կազմի ուսումնասիրության, ազատ աշ-
խատանքային ռեսուրսների հայտնաբերման, տնտեսության տարբեր ճյուղե-
րի աշխատուժի պահանջները պարզելու գործում: Կոմիտեն ՀՍՍՀ պետպլանի
տնտեսագիտության ու պլանավորման ինստիտուտի հետ կազմում են յուրա-
քանչյուր քաղաքի ու շրջանի աշխատանքային ռեսուրսների բալանսը, որոնք
պետք է օգտագործվեն արդյունաբերական նոր ձեռնարկությունների տեղա-
բաշխումը պլանավորելիս: Որոշ աշխատանք է կատարված նաև ժողովրդա-
կան տնտեսության պահանջներն աշխատուժով բավարարելու և աշխատան-
քային ռեսուրսների բաշխման ու վերաբաշխման գործում: Ցանկալի է, որ
աշխատանքային ռեսուրսների օգտագործման կոմիտեն մինիստրությունների
ու ձեռնարկությունների հետ միասին կազմակերպի բարձրորակ կադրերի
պատրաստման ու վերապատրաստման գործը: Դա հնարավորություն կընձե-
ռի լայնորեն արմատավորելու մասնագիտությունների համատեղման պրակ-
տիկան, որն աշխատուժի խնայողության միջոցներից մեկն է:

Նպատակահարմար կլինի, եթե յուրաքանչյուր քաղաքի ձեռնարկու-
թյուններն աշխատուժի պահանջի իրենց հայտերը ներկայացնեն աշխատան-
քային ռեսուրսների օգտագործման կոմիտեին: Դա վերջինիս հնարավորու-
թյուն կընձեռի բնակչությանն իրազեկ պահելու աշխատանքի ազատ տե-
ղերի մասին:

Աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը
բարձրացնելու նպատակով իրենց անելիքներն ունեն նաև գիտահետազոտա-
կան կազմակերպությունները: Անհրաժեշտ է կատարելագործել աշխատան-
քային ռեսուրսների բալանսը, կազմել ռեգիոնալ (տեղական) բալանսներ,
ինչպես նաև աշխատանքի ու աշխատուժի, երիտասարդ կանանց, որակյալ
աշխատուժի բալանսներ, ուսումնասիրել և հայտնաբերել աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման ու աշխատուժի ներարտադրական ռե-
զերվներ և այլն:

Աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության հարցը մեր երկիրը
վաղուց է լուծել: Կապիտալիստական ոչ մի երկիր այս դեպքում չի կարող
համեմատվել Սովետական Միության հետ: Այժմ, աշխատանքային ռեսուրս-
ների ազատ ռեզերվների օգտագործումն ապահովելու հետ միասին, հրա-
տապ է դարձել աշխատուժի պակասը մեղմելու ու վերացնելու հարցը: Այս
բոլորից հետո, նորից ակնհայտ է դառնում կապիտալիզմի ջատագովների
այն մերկապարանոց պնդումների կեղծությունը, որ իբրև սոցիալիզմը ևս ի
վիճակի չէ լուծելու գործազրկության հարցը:

ԼԵԲԵԴԵՎ Վ. Պ.

# ԿՈՍՄՈԼՈԳԻԱՆ, ՖԻԶԻԿԱԿԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԸ ԵՎ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ

Մարդկությունը երբեք անտարբեր չի եղել այն հարցի նկատմամբ, թե ինչպիսին է Տիեզերքի կառուցվածքը։ Տիեզերք ասելով հասկացվում է մարդուն հայտնի աշխարհը, որի մասին եղած պատկերացումները միշտ հատուկ են այս կամ այն դարաշրջանին։ Առաջին հայացքից վերացական և մարդկանց ռեալ պահանջներից հեռու թվացող այս հարցի՝ Տիեզերքի կառուցվածքի նկատմամբ ցուցաբերվող հետաքրքրասիրությունը բացատրվում է այդ պրոբլեմի փիլիսոփայական, աշխարհայացքային նշանակությամբ։ Մարդուն, որպես սոցիալական ակտիվ էակի, պարզապես անհրաժեշտ է իմանալ, թե ինչ տեղ է գրավում ինքն աշխարհում, ինչպես է կառուցված այդ աշխարհը, ինչ չափով այն կարելի է ճանաչել և այլն։ Ամենաընդհանրական ձևով այս հարցերի պատասխանը կապված է, ամբողջությամբ վերցրած, Տիեզերքի մասին մեր ունեցած պատկերացումների հետ։

Ներկայումս առավել ընդարձակ է ընդհանրական տեսությունը, որի միջոցով կարելի է ներկայացնել Տիեզերքի կամ ավելի ճիշտ՝ Մետագալակտիկայի (Տիեզերքի այժմ դիտվող ողջ մասի) կառուցվածքը, դա Ա. Էյնշտեյնի հարաբերականության ընդհանուր տեսությունն է (ՀԸՏ)։ Թվում է, թե Տիեզերքի ռելյատիվիստական կոսմոլոգիական մոդելը, որը կառուցված է հարաբերականության ընդհանուր տեսության հիման վրա, պետք է հանդիսանա ռեալ աշխարհի ճշմարիտ արտացոլումը և այդ իսկ պատճառով պետք է լինի միակը։

Իրոք, մատերիալիստական մոնիզմի սկզբունքը նշանակում է աշխարհի մատերիական միասնություն և այդ իմաստով իսկ՝ Տիեզերքի միասնություն, որը Հ. Պուանկարեի պատկերավոր արտահայտությամբ՝ «հրատարակված է միայն մեկ օրինակով»։ Եվ, քանի որ հարաբերականության ընդհանուր տեսությունը, որպես ադեկվատ տեսություն, պետք է արտահայտի ռեալ դույր, ապա այն կիրառելով Տիեզերքի նկատմամբ՝ պետք է ստացվի մի կոսմոլոգիական մոդել։

Իրականում կարելի է կառուցել բազմաթիվ մոդելներ, որոնք ստացվում են տարբեր պայմանների առկայությամբ հարաբերականության ընդհանուր տեսության հավասարումների լուծումից։ Իմանալով Մետագալակտիկայի



որոշ հատկություններ, կարելի է դրանցից եզրակացություններ անել Տիեզերքի հատկությունների մասին ամբողջությամբ վերցրած. այս իդեան համապատասխանում է աշխարհի մատերիական միասնության սկզբունքին, որը կոսմոլոգիայի արմատական սկզբունքն է։ Նման ձևով և դիալեկտիկայի ամենաընդհանուր օրենքները բխում են այն օրենքներից, որոնք բացահայտված են աշխարհի՝ մարդկային գործունեությունն ընդգրկող մասում։ Մինչդեռ հարաբերականության ընդհանուր տեսությունից բխող բազմաթիվ կոսմոլոգիական մոդելների գոյությունը վկայում է միայն այն մասին, որ այդ տեսությունը չունի համընդհանուր բնույթ, կիրառելի չէ տիեզերքի բոլոր կառուցվածքային բազմազանությունների նկատմամբ։

Ներկայումս Տիեզերքի (այստեղ Տիեզերք ասելով, որպես կանոն, հասկացվում է Մետագալակտիկան) ամենից շատ ուսումնասիրված մոդելներն ընդարձակվող Տիեզերքի համասեռ ու իզոտրոպ մոդելներն են, որոնք առաջ են քաշվել Ա. Էյնշտեյնի և, հատկապես, սովետական մաթեմատիկոս Ա. Ֆրիդմանի կողմից։ Մոդելների «համասեռություն» ասելով հասկացվում է տարածության մեջ մատերիայի բաշխման հավասարաչափությունը, իսկ իզոտրոպություն՝ նշանակում է տարածության հատկությունների միատեսակություն՝ բոլոր ուղղություններով։ Տարածության հատկությունների և դրանում մատերիայի միջին բաշխման վերաբերյալ այս տեսակետը կոչվում է «կոսմոլոգիական պոստուլատ»։

Ա. Ֆրիդմանը ցույց տվեց, որ հարաբերականության ընդհանուր տեսության հավասարումների լուծումը ստացիոնար չէ։ Սա նշանակում է, որ ռեալ եռաչափ տարածության կորության շառավիղը գնալով պետք է մեծանա, այսինքն՝ տիեզերքը պետք է ընդարձակվի։ 1929 թ. Հաբլը գալակտիկաների հեռավոր կուտակումների սպեկտրներում հայտնագործելով, այսպես կոչված, «կարմիր տեղաշարժի» երևույթը, դրանով իսկ փայլուն կերպով հաստատեց Տիեզերքի ընդարձակման մասին տեսական այդ հաշվումները։ Պարզվեց, որ գալակտիկաներից եկած լուսային ալիքների երկարության մեծացումը, նրանց տեղաշարժը դեպի սպեկտրի կարմիր կողմը, կարող է բացատրվել միայն Դոպլերի էֆեկտով, այսինքն՝ այդ գալակտիկաների բոլոր կուտակումները հեռանում են միմյանցից, բացվածվում։ Գալակտիկաների հեռացման արագությունն ավելանում է դրանց միջև եղած հեռավորությանը համեմատական։ Մեկ միլիոն պարսեկի վրա այն աճում է 75 կմ/վրկ-ով (Հաբլի օրենքը)։

Ուստի, եթե մտովի պատկերացնենք նման մոդելներում եղած բոլոր պրոցեսները, մետագալակտիկայի անցյալի նկատմամբ յուրօրինակ հայացքը կհանգեցնի այն տարօրինակ հետևությանը, թե ինչ-որ մի ժամանակ անվերջ զանգվածը կենտրոնացված է եղել զրոյի հավասար ծավալում (անսահման խտություն ունեցող) և ժամանակի հոսք տեղի չի ունեցել։ Այս պարադոքսները վկայում են, որ Տիեզերքում մատերիայի ներկա վիճակին վերաբերող մեզ հայտնի օրենքները չեն տարածվում այլ վիճակների վրա (օրինակ, մեծ խտությունների դեպքում)։ Այսպիսով, ՀԸՏ-ն բավարար չափով բացատրում է Մետագալակտիկայի ընդարձակման պրոցեսը, բայց այդ ընդարձակման սկզբնական էտապի մասին ոչինչ ասել չի կարող։ Այն հանգամանքը, թե գոյություն չունի տիեզերքի միակ, բացարձակ ճիշտ մոդել, ըն-

բխում է դիալեկտիկական այն ուսմունքից, որ ռեալ աշխարհը անսահման է և որակապես բազմազան:

Այդ ուսմունքը Վ. Համբարձումյանի խոսքերով ասած՝ «...հույս չի ներշնչում, որ հնարավոր է կառուցել Տիեզերքի մոդել, որը թեկուզ և առանձին էական գծերով կարողանա սպառել այդ բազմազանությունը» (В. А. Амбарцумян, В. В. Казютинский. Метагалактика и Вселенная, в книге Структура и формы материи, изд. «Наука», М., 1967, стр. 398):

Այնուամենայնիվ, Տիեզերքի գոյություն ունեցող բազմաթիվ մոդելներից ո՞րն է ավելի լավ արտացոլում Մետագալակտիկայի գոնե որոշ էական գծերը: Չէ՛ որ կարելի է նշել բազմաթիվ մոդելներ, որոնք բոլորն էլ բավարարում են համասեռության և իզոտրոպության պայմաններին: Օրինակ, Տիեզերքում մատերիայի միջին խտության համապատասխան (իսկ այդ մեծությունն առայժմ խիստ մոտավոր է), կարելի է ընդունել, որ Մետագալակտիկայի տարածությունն ունի դրական կորություն, այսինքն՝ փակ է, կամ՝ բացասական կորություն, այսինքն՝ բաց է: Մոդելը կարող է ժամանակի որևէ զրոյական մոմենտից սկսած մոնոտոն կերպով ընդարձակվել (միայն թե դա չպետք է հասկանալ ընդհանրապես որպես աշխարհի արարչագործություն), կարող է լինել նաև բաբախող, այսինքն՝ ընդարձակվելով հասնել մինչև որոշակի շառավղի, և ապա սեղմվելով՝ փոքր ծավալի և այլն:

Կոսմոլոգիայի և ֆիզիկայի փորձնական ու տեսական արդյունքները դեռևս բավարար հիմք չեն տալիս դատելու այս կամ այն կոսմոլոգիական մոդելի հարաբերական արժեքավորության մասին (խոսքն այն մոդելների մասին է, որոնք բավարար չափով բացատրում են դիտվող կոսմոլոգիական երևույթները): Այդ դատողություններն անհրաժեշտ է հիմնել այն բանի վրա, որ Տիեզերքի ներկայիս մարդկային գործունեությանը մատչելի մասի օրինաչափությունները տարածվում են (էքստրապոլյացիայի են ենթարկվում) Մետագալակտիկայի և նույնիսկ ողջ Տիեզերքի վրա:

Կան օրենքներ, որոնց կիրառման սահմանները նշելն առայժմ անհնար է: Այդպիսիք են՝ պահպանման ֆիզիկական առավել ընդհանուր օրենքները, մասնավորապես, էներգիայի պահպանման օրենքը, որն արտահայտում է մատերիալիստական տեսակետը, ըստ որի մատերիան անստեղծելի, անոչնչանալի է:

Այս բոլոր օրենքներն ապրիորի չեն, ունեն փորձնական հիմք և, ի վերջո, մարդկության փորձի արդյունք են: Ուստի, պահպանման այս կամ այն օրենքը կասկածի տակ առնելն իդեալիզմ չի պարունակում: Հակառակը, պահպանման որևէ օրենքի ամեն մի խախտում անհրաժեշտորեն կհանգեցնի ավելի ընդհանուր օրենքի հայտնագործման, որը, իբրև սահմանային դեպք, կընդգրկի նախորդ օրենքը:

Առայժմ էներգիայի պահպանման օրենքի խախտման ոչ մի կոնկրետ փաստ հայտնի չէ: Դրա իրավացիությունն ու կատարելիությունն ապացուցեցին վերջերս հիանալի ճշգրտությամբ կատարված փորձերը (Մյոսբաուերի էֆեկտի օգնությամբ):

Կոսմոլոգիան գործնականում հիմնավորել է իր էքստրապոլյացիաներից շատերի իրավացիությունը: Այն ժամանակ, երբ հարաբերականության ընդհանուր տեսության ճշգրտությունն անհրաժեշտ չափով ստուգված չէր նույնիսկ արեգակնային համակարգության սահմաններում, Էյնշտեյնը և



այնուհետև Ֆրիդմանը այն տարածեցին Տիեզերքի ողջ տեսանելի մասի վրա, որի արդյունքը եղավ վիթխարի մի երևույթի՝ Մետագալակտիկայի ընդարձակման տեսական կանխատեսումը:

Սակայն որոշակի տարբերություն գոյություն ունի փաստական առնչությունների էքստրապոլյացիաների (Հաբլի օրենքի, կոսմոլոգիական պոստուլատի, տարածության չափի բնույթի) և այնպիսի համընդհանուր օրենքների էքստրապոլյացիաների միջև, ինչպիսիք են՝ պահպանման օրենքները. թերմոդինամիկայի երկրորդ հիմունքը, ՀԸՏ-ն և դիալեկտիկայի օրենքները: Այդ տարբերությունը պայմանավորված է այն սիստեմների մասշտաբներով, որոնց նկատմամբ դրանք կիրառվում են: Անտարակույս, ֆիզիկայի համընդհանուր օրենքները և առավել ևս դիալեկտիկայի օրենքներն ունեն կիրառման ավելի լայն բնագավառ և օժտված են ավելի ընդհանրականությամբ, քան փորձնական առնչությունները:

Օրինակ, ակնհայտ է, որ Հաբլի հաստատունը (75 կմ/վրկ մեկ մեգապարսեկի վրա), իրականում չի կարող մնալ հաստատուն ամբողջ Տիեզերքում: Իրոք, որքան մոտենում ենք Մետագալակտիկայի սահմաններին, այնքան մեծանում են գալակտիկաների հեռացման արագությունները. և եթե Հաբլի օրենքը չփոխի իր ձևը, ապա գալակտիկաների արագությունը կարող է գերազանցել լույսի արագությանը, մի բան, որ անհնարին է: Ներկայումս շատ բնագետներ և փիլիսոփաներ՝ Վ. Համբարձումյանը, Զելմանովը, Գ. Նաանը, Վ. Կազյուտինսկին, Մելյուխինը և ուրիշներ, ենթադրում են, որ անօրինաչափ է «փորձնական» օրենքների (օրինակ, կոսմոլոգիական պոստուլատի) տարածումը Մետագալակտիկայի և առավել ևս ողջ տիեզերքի վրա:

Այժմ տեսնենք, թե ինչ չափով կարելի է էքստրապոլյացիայի ենթարկել ֆիզիկական ամենաընդհանուր օրենքները:

Ինչպես ասացինք, ՀԸՏ-ն չի արտացոլում ռեալ աշխարհն ամբողջությամբ և սկզբունքորեն չի էլ կարող արտացոլել, թեև այժմ Մետագալակտիկայի մասին դատողությունները հենվում են միայն ՀԸՏ տվյալների վրա:

Այսօր ոչ մի հիմք չկա կասկածելու նաև էներգիայի պահպանման օրենքի ճշգրտության վրա: Ուշագրավ է, որ վերջերս Վ. Համբարձումյանը հիմնվելով որոշ դիտողական տվյալների վրա արծարծել է այն միտքը, թե կոսմիկական նոր օբյեկտների ուսումնասիրման ժամանակ կարող է նկատվել այդ օրենքի խախտում նրա որոշակի ձևում (В. А. Амбарцумян, **Парадоксы сверхгигантских галактик**, «Техника молодежи», 1966, № 3, стр. 6): Մեծ գիտնականի վերոհիշյալ արտահայտությանը մակերեսային մոտեցում ցուցաբերելու դեպքում կարող է տարակուսանք առաջանալ: Իրոք, մենք վարժվել ենք ֆիզիկայի այս հիմնական օրենքի նկատմամբ ցուցաբերած ամեն մի տարակուսանք դիտել որպես իդեալիստական մտածելակերպ, որը փորձում է կասկածելի դարձնել մատերիալիզմի հիմնական սկզբունքը՝ մատերիայի անստեղծելիության և անոչնչանալիության սկզբունքը:

Համբարձումյանի նշված արտահայտության համար հիմք են ծառայում ռադիոգալակտիկաներում և 1963 թ. հայտնագործված նոր, չափազանց հետաքրքրական աստղագիտական օբյեկտների՝ քվազարների դիտվող անկայուն երևույթները, որոնք կապված են ահռելի քանակությամբ էներգիայի ճառագայթման հետ: Ճիշտ կլինի, իհարկե, վերջիններս կոչել ո՛չ թե նոր, այլ հին օբյեկտներ, քանի որ դրանք գտնվում են մեզնից մոտ 13 միլիարդ լուսա-

տարի հեռավորության վրա, իսկ դա նշանակում է, որ մենք դրանք տեսնում ենք ո՛չ թե այնպես, ինչպես կան այժմ, այլ այնպես, ինչպես եղել են միլիարդավոր տարիներ առաջ, այսինքն՝ այն ժամանակ, երբ նրանց մեզ հասած լույսը նոր էր ճառագայթում։

Քվազարները համեմատաբար մեծ չեն։ Դրանց տրամագիծն արեգակնային համակարգության տրամագծից մեծ է ընդամենը մի քանի տասնյակ անգամ, բայց օժտված են ահռելի զանգվածով, որը մի քանի հարյուր միլիոն անգամ գերազանցում է արեգակի մասսային։ Այդ օբյեկտներից մի քանիսը մեկ վայրկյանում առաքում են ավելի քան $10^{45}$ էրգ միայն ռադիոալիքների ձևով, չհաշված այն էներգիան, որ դրանք կարող են առաքել ինֆրակարմիր, ուլտրամանուշակագույն և գամմա ալիքների միջոցով ու կորցնել նյութի (նեյտրինո) առաքման շնորհիվ։ Այդ օբյեկտների գոյության միլիոնավոր տարիների ընթացքում տեղի ունեցող էներգիայի այդպիսի մշտական հոսքը չի կարող տալ էներգիայի ստացման ներկայումս մեզ հայտնի և ոչ մի եղանակ։ Համեմատության համար նկատենք, որ որոշ ռադիոգալակտիկաներ և քվազարներ իրենց ողջ գոյության ընթացքում առաքում են ավելի քան $10^{62}$ էրգ, որը հավասար է 10 միլիարդ արեգակնային զանգված պարունակող գալակտիկայի գրավիտացիայի պոտենցիալ էներգիային կամ այդ ողջ մասսայի անիգիլյացիայի հետևանքով ճառագայթվող էներգիային։ Այդպիսի ռեալ պրոցեսներ այժմ գիտությանը հայտնի չեն։ Հավանաբար հետագայում կհայտնաբերվեն էներգիայի ստացման նորանոր աղբյուրներ։ Եվ էներգիայի ստացման նոր հիպոթետիկ սկզբունքի հայտնագործմամբ Համբարձումյանի ենթադրությունը չի դադարում իրոք մատերիալիստական լինելուց։

Հիրավի, ներկայումս մատերիայի ամենաընդհանուր ֆիզիկական հատկանիշը մասսա-էներգիան է, և էներգիայի պահպանման օրենքը ծառայում է որպես մատերիայի անստեղծելիության և անոչնչանալիության մասին մատերիալիստական սկզբունքի բնագիտական կոնկրետացում։ Որևէ հիմք չկա ենթադրելու, որ գիտությունը հետագայում չի հայտնաբերի մատերիայի՝ մասսա-էներգիայից ավելի խոր ու ավելի ընդհանրական հատկանիշ։ Այդ դեպքում մատերիայի անոչնչանալիության սկզբունքը կարտահայտվի այդ նոր հատկանիշի պահպանման օրենքով, իսկ էներգիայի պահպանման օրենքը՝ մասնակի դեպք, որը որոշ փոխազդեցությունների ընթացքում կարող է և խախտվել։ Այդ ցույց կտա գիտության հետագա զարգացումը։ Առայժմ էներգիայի պահպանման օրենքը խախտող ամեն մի կոսմոլոգիական մոդել ֆիզիկայի տեսակետից կլինի ոչ ճիշտ, իսկ փիլիսոփայական տեսակետից՝ անընդունելի։

Ինչ վերաբերում է Տիեզերքի նկատմամբ թերմոդինամիկայի երկրորդ հիմունքի կիրառմանը, ապա այս հարցում կան մեծ տարաձայնություններ։ Ինչպես հայտնի է, ամենամատչելի ձևակերպմամբ ըստ այդ հիմունքի, ջերմությունն ինքնաբերաբար կարող է միայն տաք մարմնից անցնել սառը մարմնին։ Այս կապակցությամբ եղել են վեճեր։ Որոշ գիտնականներ գտնում են, որ այս սկզբունքը չի կարելի տարածել Տիեզերքի վրա, քանի որ այդ կհանգեցնի «ջերմային մահվան», այսինքն՝ Տիեզերքում կստեղծվի բացարձակ հավասարակշռություն, մոլեկուլների և ատոմների քաոսային շարժում, որն անհնար կդարձնի էներգիայի մի ձևի փոխակերպումը մյուսին։ Այդ



դեպքում գոյություն չի ունենա ոչ մի մակրոմարմին (մոլորակներ, աստղեր և այլն)։

Մյուսները գտնում են, որ չկան օբյեկտիվ տվյալներ, որոնք արգելեն մեզ՝ թերմոդինամիկայի երկրորդ հիմունքը տարածելու Տիեզերքի վրա։ Նրանց կարծիքով գոյություն ունի սերտ տրամաբանական կապ այդ սկզբունքի և էներգիայի պահպանման օրենքի միջև, որի հետևանքով այնտեղ, ուր գործում է էներգիայի պահպանման օրենքը, պետք է գործի նաև երկրորդ հիմունքը և, հակառակը, եթե չի գործում երկրորդ հիմունքը, չպետք է գործի նաև էներգիայի պահպանման օրենքը։

Ներկայումս Պ. Ստանյուկովիչի, Ե. Մ. Լիվշիցի և, հատկապես, Լ. Դ. Լանդաուի աշխատանքներից հետո պարզ դարձավ, որ երկրորդ հիմունքը գործում է Տիեզերքի մեզ հայտնի բոլոր մասերում և այն չի հանգեցնում «ջերմային մահվան», քանի որ ինքը՝ «հավասարակշռված վիճակի» գաղափարը, Տիեզերքի նկատմամբ կիրառելի չէ։ Տիեզերքը, անկախ նրա վերջավոր կամ անվերջ մոդելից, գտնվում է փոփոխվող արտաքին պայմաններում, որոնք իրականացվում են գրավիտացիոն դաշտերի միջոցով, ուստի և երբեք չի կարող հասնել հավասարակշռության վիճակի՝ «ջերմային մահվան»։

Արտաքուստ այս իրավիճակը թվում է որոշ չափով պարադոքսային։ Մի կողմից՝ ողջ Տիեզերքում երկրորդ հիմունքի իրավացիության ընդունումը, ինչպես ընդունված է կարծել, հանգեցնում է «ջերմային մահվան», մյուս կողմից՝ ապացուցվում է, որ սկզբունքորեն «ջերմային մահ» տեղի ունենալ չի կարող։ Այս պարադոքսն անմիջապես կհաղթահարվի, եթե, համաձայն դիալեկտիկական ուսմունքի, ընդունենք, որ Տիեզերքն ամբողջությամբ վերցրած զարգանում է, և այդ զարգացումը չունի ոչ մի նախընտրելի ուղղություն և ներկայացնում է ամբողջությամբ վերցրած Տիեզերքի ներքին կառուցվածքի անդարձելիության որակական փոփոխություններ։ «Զարգացման» գաղափարը Տիեզերքի նկատմամբ չի նշանակում դրա ստրուկտուրայի բարդացում, վերընթաց շարժում, առավել ևս՝ պրոգրես։ Այդպիսի ըմբռնումը կհանգեցներ այն բանին, որ Տիեզերքի զարգացման մեջ կա ինչ-որ նպատակ, որը կանխորոշված է «գերագույն կամքով»։

Տվյալ դեպքում զարգացումը նույնացվում է անդարձելի փոփոխության, ընդհանրապես շարժման հետ։ Ուստի և երկրորդ հիմունքը կհանդիսանա զարգացման ընդհանուր փիլիսոփայական գաղափարի բնագիտական արտահայտություն, ինչպես էներգիայի պահպանման օրենքը հանդիսանում է մատերիայի անստեղծելիության և անոչնչանալիության մասին ընդհանուր փիլիսոփայական գաղափարի բնագիտական դրսևորումը։ Պատկերավոր ասած՝ Տիեզերքը գոյություն ունի «միայն մեկ անգամ»՝ մատերիայի այն վիճակով ու ձևերով (մոլորակներ, աստղեր, գալակտիկաներ, գազային և փոշու միգամածություններ) և իր այն օրենքներով, որոնք հայտնի են մեզ այսօր։

Այժմ աստղագիտության մեջ եղած ամենանոր, հեղափոխական նշանակություն ունեցող հիպոթեզը Վ. Համբարձումյանի իդեան է այն մասին, որ աստղերը և գալակտիկաներն առաջացել են ո՛չ թե դիֆուզ փոշե-գազային մատերիայից, ինչպես առաջ կարծում էին, այլ ինչ-որ գերխիտ նյութից, որն առայժմ մեզ հայտնի չէ։ Ըստ Համբարձումյանի արագ փոփոխվող, բռնկվող աստղերի պայծառության փոփոխությունները բացատրվում են նրանով, որ դրանց մակերևույթի վրա են բարձրանում կենտրոնում պահ-

պանված գերխիտ նյութերը, որոնցից ինչ-որ ժամանակ առաջացել են գալակտիկաներն ու աստղերը, իսկ քվազարներն իրենցից ներկայացնում են նույն գերխիտ մատերիան՝ Գալակտիկայի վերածման սկզբնական էտապում։ Կարելի է ենթադրել, որ ողջ Մետագալակտիկայի մատերիան ևս նախքան այժմ մեզ հայտնի վիճակին անցնելը, գտնվել է այդ հիպոթետիկ գերխիտ վիճակում։ Մատերիայի տարբեր որակական վիճակների հերթափոխությունը, ըստ երևույթին, անվերջ է։

Վերջապես քննարկենք այն հարցը, թե ի՞նչ չափով կարելի է ողջ Տիեզերքի վրա տարածել (էքստրապոլյացիայի ենթարկել) ամենաընդհանուր օրենքները՝ դիալեկտիկայի օրենքները։

Դիալեկտիկայի ոչ բոլոր օրենքներն են, որ հավասարաչափ կարող են կոսմոլոգիական մոդելների չափանիշ ծառայել։ Այնպիսի օրենքներ, ինչպիսիք են՝ քանակի անցումը որակի և հակադրությունների միասնության ու պայքարի օրենքները, հանդիսանալով աշխարհի մասին մարդու մատչելի առկա գիտելիքների ընդհանրացում, այնուամենայնիվ, բացարձակ չեն։ Այստեղ բացարձակության տակ մենք հասկանում ենք անփոփոխություն և հավերժություն։ Ընդ որում, այդ օրենքների ոչ-բացարձակությունը դրսևորվում է ո՛չ թե նրանով, որ փոխվում է դրանց արտահայտման ձևը, այլ նրանով, որ փոփոխվում է այն հասկացողությունների բովանդակությունը, որոնց վրա հենվում են այդ օրենքները։ Բնագիտության զարգացման շնորհիվ ո՛չ միայն ճշգրտվում են հայտնի կատեգորիաները, այլև ստեղծվում են փիլիսոփայական նոր կատեգորիաներ։

Վերջերս միայն սկսեցին զարգանալ էլեմենտ և ստրուկտուրա, ինֆորմացիա և այլ կատեգորիաներ։ Իսկ, այսպես կոչված, կլասիկ կատեգորիաների (հատկապես վերջավորի և անվերջի) շուրջ մղվող սուր տեսական պայքարը հարստացրեց դրանք նոր բովանդակությամբ։

Դիալեկտիկան պարունակում է մարդկային գործունեության ընդհանրացման ավելի բարձր աստիճան, քան վերը նշված կատեգորիաներում։ Այս ընդհանրացումները ևս ենթարկվում են փոփոխության, բայց ավելի դանդաղ են փոփոխվում։ Դրանցից են աշխարհի մատերիականության, մատերիայի անսպառության և զարգացման սկզբունքները, որոնք կոսմոլոգիական մոդելների գնահատման ամենաընդհանրական չափանիշներն են։

Ընդհանուր առմամբ ներկայիս ամեն մի կոսմոլոգիական մոդել պետք է բավարարի հետևյալ պայմաններին.

1. Այն պետք է հաշվի առնի և բացատրի բոլոր, այսպես կոչված, էքսպերիմենտալ օրինաչափությունները (Հաբլի օրենքը, Տիեզերքում մատերիայի բաշխումը, տարածության ստրուկտուրան)։

2. Պետք է հենվի «տեսական» օրենքների վրա և չպետք է հակասի դրանց (հարաբերականության ընդհանուր տեսությանը, էներգիայի պահպանման օրենքին, թերմոդինամիկայի երկրորդ հիմունքին)։

3. Պետք է համապատասխանի մատերիալիզմի ամենալայն սկզբունքներին (մատերիականության, մատերիայի անսպառության և զարգացման)։

Ելնելով այս չափանիշներից, կարելի է համեմատության կարգով գնահատել գոյություն ունեցող կոսմոլոգիական մոդելները։ Այսպես, այդ չափանիշներին չեն բավարարում այն մոդելները, որոնք կառուցված են հարաբերականության ընդհանուր տեսության վերանայման սկզբունքով։ Օրինակ, Միլնի կոսմոլոգիական մոդելը։



Ակնհայտորեն հակասում է էներգիայի պահպանման օրենքին Հոյլ-Բոնդիի առաջին՝ այժմ մերժված մոդելը, որը հենվում էր կատարյալ կոսմոլոգիական պոստուլատի վրա, ըստ որի, մատերիայի խտությունը, իզոտրոպությունն ու համասեռությունը հաստատուն են ո՛չ միայն Տիեզերքի ցանկացած կետում, այլև դրա գոյության բոլոր ժամանակներում։ Այդ մոդելի ստեղծողներն աներկմիտ հայտարարում էին. «Մատերիան պարզապես ծնվում է՝ այն ստեղծվում է։ Նյութ կազմող տարբեր ատոմները, որ մի ժամանակ գոյություն չունեին, հետագայում գոյություն են ունենում։ Պետք է պարզ ասել, որ ատոմների ստեղծումը, որի մասին խոսվում է, հանդիսանում է մատերիայի ձևավորում ո՛չ թե ճառագայթումից, այլ պարզապես ոչնչից»։ Այս մոդելին չի օգնում նաև այն, որ «ոչնչի» փոխարեն ներմուծվում են ինչ-որ «արարչագործ» դաշտից, որից, իբր ստեղծվում է մատերիան, քանի որ կատարյալ կոսմոլոգիական պոստուլատի վրա հենվող ամեն մի մոդել հակասում է զարգացման սկզբունքին։

Զարգացման սկզբունքին հակասում է նաև Կ. Պ. Ստանյուկևիչի հիպոթեզը, թեև այն բավականին անսովոր է հնչում։ Այս հիպոթեզի էությունն այն է, որ Մետագալակտիկան առաջացել է մի քանի գերռելյատիվիստական միկրոմասնիկների բախումից կամ պարզապես դրանց քայքայումից։ Այդ մասնիկների էներգիան այնքան մեծ է եղել, որ ունեցել է մոտ $10^{45}$ գրամ մասսա (նկատենք, որ մեր Գալակտիկայի մասսան մոտ $2{,}5 \times 10^{44}$ գրամ է)։ Այդ գերռելյատիվիստական մասնիկների նկատվող կարմիր տեղաշարժը տարրական մասնիկների վերածվելու արդյունք է, որը տեղի է ունեցել մոտ 10 միլիարդ տարի առաջ։ Այսպիսով, Մետագալակտիկայի մասշտաբով ոչ մի զարգացում տեղի չի ունեցել, սկզբում գոյություն են ունեցել մի քանի տարրական մասնիկներ, հետագայում դրանք պարզապես շատացել են։

Անբավարար են նաև բոլոր բաբախող համասեռ ու իզոտրոպ մոդելները, որոնց համաձայն Մետագալակտիկան ընդարձակվելով հասնում է մի որոշ շառավղի և այնուհետև սկսում է սեղմվել, հասնելով շատ փոքրիկ ծավալի։ Նման մոդելների ընդունմամբ Տիեզերքը դրվում է միևնույն որակների կրկնման փակ շրջանի, մի ուրույն «հոռի անվերջության» վիճակում։ Հետաքրքրական է նկատել, որ Մետագալակտիկայի կամ դրա նման համակարգերի բաբախման ընդունումը կարող է հանգեցնել չափազանց տարօրինակ եզրակացությունների։

Ենթադրենք, որ մեր հարևան Մետագալակտիկաներից մեկը ո՛չ թե ընդարձակվում է, ինչպես մեր Մետագալակտիկան, այլ սեղմվում է։ Այդ դեպքում, դրա վրա ապրող աստղագետները կնկատեին ո՛չ թե կարմիր, այլ մանուշակագույն տեղաշարժ։ Ի դեպ, սա զուտ հիպոթետիկ ենթադրություն է, քանի որ սեղմվելու դեպքում դրա վրա կյանք գոյություն ունենալ չէր կարող, որովհետև այդ դեպքում տարածության բոլոր կետերում ջերմաստիճանը հավասար կլիներ աստղերի մակերևույթի ջերմաստիճանին։ Բայց էականն այն է, որ մասսաներն սեղմվելիս հեշտությամբ կհասնեին, այսպես կոչված՝ Շվարցշիլդի սահմանին։ Դա նշանակում է, որ մասսայի երկրաչափական շառավիղը կհավասարվի գրավիտացիոն շառավղին կամ նրանից էլ փոքր կլինի, որի հետևանքով սեղմվող սիստեմն այլևս չի դիտվի։

Այլ կերպ ասած, այդպիսի սիստեմում ձգողական ուժը կլինի այնքան մեծ, որ այն իր դաշտից չի արտաղատի ոչ մի ճառագայթում, էլ չենք խոսում առարկաների մասին, որի հետևանքով և սիստեմը արտաքին դիտողի համար կմնա աննկատ։

Այստեղից սովետական գիտնական Իդլիսն անում է զուտ ֆանտաստիկ եզրակացություն։ Նախքան սեղմվող սիստեմի շառավիղը և մասսան կհավասարվեն զրոյի, այսինքն՝ կչքանան արտաքին դիտողի տեսադաշտից, դրանք պետք է ընդունեն այն արժեքը, որը համապատասխանում է տարրական մասնիկների, օրինակ՝ էլեկտրոնի մասսային և շառավղին։ Իսկ թե որքան ժամանակ սեղմվող սիստեմը կարող է մնալ այդ վիճակում, հայտնի չէ։ Ուստի, բոլոր տարրական մասնիկները կարելի է դիտել որպես մեր Մետագալակտիկայի նման կոսմիկական սիստեմներ, որոնք գտնվում են սեղմված վիճակում։ Այստեղ ակամայից հիշում ենք Չեխովի հերոսներից մեկի խոսքերը. «Գուցե և մեր ողջ Տիեզերքը գտնվում է մի վիթխարի հրեշի ատամի փչակո՞ւմ...»։

Այնուամենայնիվ, ո՞ր մոդելներն են ներկայումս ավելի լավ համապատասխանում վերը բերված պահանջներին։ Դրանք այն իզոտրոպ ու համասեռ մոդելներն են (անիզոտրոպ և անհամասեռ մոդելները դեռևս բավարար չափով ուսումնասիրված չեն), որոնք ենթադրում են Տիեզերքի զարգացումը ժամանակի մինուս անսահմանությունից մինչև զրո և, այնուհետև, մինչև պլյուս անսահմանություն։ Զրո ժամանակն այստեղ չի նշանակում «աշխարհի սկիզբը»։ Այն պարզապես նշանակում է «մեր Տիեզերքի» առաջացում, այսինքն՝ մատերիայի անցում ինչ-որ ներկայումս մեզ անհայտ ձևից դեպի ներկայումս հայտնի, ընդարձակվող Տիեզերքի վիճակին, որտեղ տարածության ու ժամանակի մասին մեր ունեցած պատկերացումները ճշմարիտ են։ Ամբողջությամբ առած այս սխեման էլ իրենից ներկայացնում է Տիեզերքի անվերջ, անդարձելի փոփոխությունը, մատերիայի մի վիճակի հերթափոխումը մյուսով։

Ուշագրավ է նաև ընդարձակվող Տիեզերքի «շիկացած», համասեռ և իզոտրոպ մոդելը, որը մշակել է Յա. Բ. Զելդովիչը։ Այստեղ Մետագալակտիկայի ընդարձակումը դիտվում է ո՛չ թե ժամանակի զրո մոմենտից (այդ մոմենտում մատերիան կգտնվի այնպիսի վիճակում, որի նկարագրման համար առայժմ չկա ոչ մի համապատասխան տեսություն), այլ մի մոմենտից, որը մոտիկ է T=1 վրկ-ի, և օժտված է մոտ 10 միլիարդ աստիճան ջերմությամբ։ Այս տեսությունը չի ժխտում այն, որ մինչև T=0 մոմենտը մատերիան գտնվել է վերը նշված գերխիտ վիճակում։ Հետագայում, շիկացած խառնուրդից առաջացել են պրոգալակտիկաներ, որոնք ընդարձակվելով վեր են ածվել գալակտիկաների, աստղերի և այլն։

Քաղ. Մինսկ

**ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.**
Պատմական գիտությունների թեկնածու

# ՏԵՍԱԿԱՆ ՎԱՐԺՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՋԱՏԱԳՈՎՈՒԹՅՈՒՆԸ

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության աճը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման նորանոր հաջողությունները խորացնում են կապիտալիզմի համաշխարհային սիստեմի ընդհանուր ճգնաժամը։ Գնալով սրվում են հաղթանակող կոմունիզմի և մեռնող կապիտալիզմի միջև եղած անհաշտելի հակասությունները։ Այդ հակասությունների շուրջ ծավալված պայքարը ժամանակակից համաշխարհային զարգացման հիմնական բովանդակությունն է կազմում։

Իմպերիալիստական ուժերը և նրանց գրչակիր ծառաները յուրաքանչյուր քայլափոխում խեղաթյուրում են Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականությունը, ծուռ հայելու մեջ ներկայացնում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների փոխհարաբերությունները։ Նրանք աշխատում են թուլացնել միջազգային կոմունիստական շարժման միասնությունը, խարխլել ու քայքայել սոցիալիստական երկրների հասարակական-քաղաքական կարգը, հասնել նրա «վերասերմանը», արգելակել սոցիալիստական շինարարության փարձի տարածումը մյուս երկրներում։ Միաժամանակ բուրժուական գաղափարախոսները հին ու նոր զանազան «տեսությունների» օգնությամբ կաշվից դուրս են գալիս արդարացնելու կապիտալիստական կարգերը, ամեն կերպ ձգտում են հիմնավորել դրանց «հավերժականությունը»։

Կապիտալիզմի պաշտպանների խայտաբղետ ամբոխին իրենց ձայնն են միացրել նաև սփյուռքում գործող դաշնակցական գործիչները, լրագրողները, «տեսաբանները»։

* * *

Կապիտալիստական կարգերի արդարացման ու պաշտպանության նպատակին ուղղված տեսություններից մեկը շոշափում է բուրժուական պետության և բուրժուական հասարակության փոխհարաբերությունների պրոբլեմը։

Վերջերս բուրժուական գաղափարախոսները, այդ թվում նաև դաշնակցական «տեսաբանները», հաճախ են տարփողում կապիտալիստական արտադրա-

հարաբերությունների պայմաններում բուրժուական պետության դերի աճման
մասին տեսությունը։

Կապիտալիստական հասարակարգի պաշտպանների կարծիքով վերջին
տասնամյակների ընթացքում արմատապես փոխվել է բուրժուական պետու-
թյան բնույթը։ Վերջինս, իբր, կանգնել է հասարակությունից վեր, կամ, դաշ-
նակցական մտավորականներից մեկի՝ Աշոտ Գասպարյանի արտահայտու-
թյամբ «ինքնակախ նշանակություն է ստացել» («Յուսաբեր», 19 նոյեմբերի,
1962 թ.)։ Դա նշանակում է, որ ժամանակակից բուրժուական պետությունն
իբրև, ոչ թե մի դասակարգի քաղաքական տիրապետության գործիք է, այլ
վերդասակարգային մի օրգան, որը հավասարապես հոգ է տանում հասարա-
կության բոլոր անդամների մասին։ Այդպիսի պետությունն, ասում են նրանք,
օգտագործելով իր «վերդասակարգային» դիրքը, աստիճանաբար կատարե-
լագործում է կապիտալիզմը, սահմանում ազգային եկամտի արդարացի բաշ-
խում։

Արևմուտքի բուրժուական գաղափարախոսների օրինակով դաշնակցա-
կանները ևս գտնում են, որ արմատական հեղափոխություն է տեղի ունեցել,
ամենից առաջ, պետության տնտեսական ֆունկցիաների մեջ։ Նրանց կարծիքով
բուրժուական պետությունն այսօր ավելի ու ավելի լայն մասշտաբներով է
միջամտում երկրի տնտեսության կառավարման գործերին՝ ի օգուտ հասարա-
կության բոլոր անդամների։ Նրանք ողջունում են բուրժուական կառավարու-
թյունների այն բոլոր փորձերը, որոնց նպատակն է հասարակական կյանքին
պետական միջամտության ընդարձակ ծրագրերի իրականացման միջոցով
կործանումից փրկել կապիտալիզմի տնտեսական սիստեմը։ Այս տեսակետից
հատկանշական է, որ տնտեսագիտական հարցերի վերաբերյալ դաշնակցա-
կան մամուլում լույս տեսած շատ հոդվածներում կուրորեն պրոպագանդում են
իմպերիալիզմի տնտեսագետ, անգլիացի լորդ Ջ. Մ. Քեյնսի հայացքները,
մասնավորապես նրա Զբաղվածության, տոկոսի և փողի ընդհանուր տեսու-
թյունը հայտնի գրքի (1936 թ.) գլխավոր թեզերը։

Ինչպես հայտնի է, Քեյնսը, հանդես գալով մոնոպոլիաների միջև մրցակ-
ցային պայքարի ազատության տրադիցիոն դոկտրինայի դեմ, գտնում էր, որ
կապիտալիզմը կարող է ներդաշնակ զարգացմամբ վերացնել տնտեսական
ճգնաժամերն ու գործազրկությունը, միայն պետք է խիստ մեծացնել բուր-
ժուական պետության դերը տնտեսության մեջ, իրականացնել կապիտալիս-
տական տնտեսության պետական կարգավորում, արտադրության և բաշխման
պլանավորում՝ բյուջետային հատկացումների միջոցով։ Բուրժուական տնտե-
սության «հակաճգնաժամային կարգավորում» իրականացնելու մտքով,
Քեյնսը կոչ էր անում ամեն կերպ ավելացնել մոնոպոլիաներին տրվող ար-
դյունաբերական պատվերների պետական ծախսումները, ընդլայնել ռազմա-
կան արդյունաբերությունը, խոշոր ֆիրմաներին տրամադրել արտոնյալ վարկ,
ճնշում գործել արհմիությունների վրա. մի խոսքով, պետական բյուջեից որ-
քան կարելի է ավելի շատ գումարներ տեղափոխել կապիտալիստների սեյ-
ֆերը։

Պրոպագանդելով քեյնսականության գաղափարները, դաշնակները սփ-
յուռքահայ աշխատավորների շրջանում պատրանքներ են սերմանում, թե կա-
պիտալիզմի պայմաններում հնարավոր է լիակատար վերահսկողություն ա-
պահովել արտադրության և նրա պլանավորման վրա. իբր թե «վերդասա-
կարգային» պետությունը, ֆինանսավորելով կապիտալիստներին, նպաստում է



աշխատավորների բարեկեցության բարձրացմանը։ Քեյնսականության դիր-
քերից արդարացնելով կապիտալիզմը, դաշնակ գաղափարախոսները հավաս-
տիացնում են, թե ստեղծված նոր պայմաններում բուրժուական պետությունն ի
վիճակի է վերջ տալու տնտեսական ճգնաժամերին, վերացնելու գործազրկու-
թյունը, «բռնագրավելու մոնոպոլիաների շահույթները»։

Բուրժուական կառավարությունների հակաճգնաժամային միջոցառումների
մասին խոսելիս, կապիտալիզմի դաշնակ ջատագով Ռուբեն Դարբինյանը ճրգ-
նում է ապացուցել, որ ԱՄՆ-ում, ինչպես այժմ, այնպես էլ ապագայում, լիո-
վին բացառված են տնտեսական խոշոր ճգնաժամերի առաջացումն ու դրանցից
բխող սոցիալական ցնցումների հնարավորությունը, որովհետև կառավարու-
թյունն ի վիճակի է ակտիվ «միջամտելու երկրի տնտեսական կյանքի մեջ»
և «արտասովոր միջոցներ ձեռք առնելու տնտեսական տագնապներու դեմ»
(«Յուսաբեր», 31 հունվարի, 1964 թ.)։
Նա հարկադրված է ընդունել, որ կապիտալիզմի պատմության մեջ շատ են ե-
ղել «տհաճ ու անտեղի» տնտեսական անկումներ, որոնք, իբր, կարող էին նաև
չլինել։ Մասնավորապես նա չի կարող շրջանցել ու չհիշատակել 1929—1933
թվականների տնտեսական ճգնաժամը, որն անասելի զրկանքներ ու թշվառու-
թյուն բերեց կապիտալիստական երկրներին, այդ թվում նաև ԱՄՆ-ի տասնյակ
միլիոնավոր աշխատավորների։ Բայց այդ «տնտեսական աննախընթաց տագ-
նապը լավ դաս մը եղավ ինչպես Միացյալ Նահանգներու, այնպես ալ ուրիշ ա-
ռաջավոր դրամատիրական երկրներու համար» (նույն տեղը)։ Այսպիսի բան
այլևս տեղի չի ունենա, հավաստիացնում է նա, որովհետև դա թույլ չեն տա
ինչպես բուրժուական պետությունները, այնպես էլ աշխատավորների բարեկե-
ցության համար օր ու գիշեր «մտահոգված» դրամատերերը։

Իսկ ո՞րն է երաշխիքը, որ կապիտալիստական զարգացած երկրներում
այլևս չեն լինի «տնտեսական տագնապներ»։ Երաշխիքն այն է,— ասում է
Ռուբեն Դարբինյանը,— որ այդ երկրները վերջնականապես հրաժարվել են
դրամատիրական տնտեսության ու կառավարության փոխհարաբերություն-
ների կարգավորման Ադամ Սմիթի տեսությունից և որդեգրել տնտեսության
նկատմամբ բուրժուական պետության գերակայությունը քարոզող քեյնսա-
կանությունը։

Կապիտալիստական զարգացած երկրների հակաճգնաժամային միջոցա-
ռումները, «վճռական կռիվը տնտեսական տագնապներու դեմ» միաժամանակ
լայն ճակատով պայքար է գործազրկության դեմ,— պրոպագանդում են բուր-
ժուական տեսաբանները։ Ըստ որում, նրանք ամեն կերպ ժխտում են գոր-
ծազրկության և կապիտալիստական սիստեմի միջև եղած ուղղակի կապը։
«Յուսաբեր»-ը ճգնում է հավատացնել, թե կապիտալիզմին հատուկ արտադրա-
կարողությունների թերբեռնվածության երևույթը հասել է իր վախճանին և «ա-
զատ աշխարհում» աշխատանքային ռեզերվային բանակի աճն աստիճանաբար
սկսում է տեղի տալ «լրիվ զբաղվածությանը»։ Իսկ եթե առանձին դեպքերում
այդ երևույթը տեղի չի ունենում և եթե հակառակն է կատարվում, ապա, նույն-
իսկ այդպիսի դեպքում, գործազուրկները հիմնավոր պատճառ չունեն դըժ-
գոհելու իրենց բուրժուական կառավարություններից, որովհետև վերջիններս
ձեռք են առնում բոլոր միջոցները նրանց «ապրուստը անգործութեան ատեն
տանելի չափով ապահովելու համար» («Յուսաբեր», 31 հունվարի, 1964 թ.)։
Իր Գործազրկությունը և ընկերավարությունը հոդվածում Ռուբեն Դար-
բինյանը «աշխատավորների անունից» երախտագիտական խոսք է ուղղում

ամերիկյան կառավարությանը, որ «ինքզինքն պարտավոր կզգա՝ գործազրկութեան պարագային նպաստներ տալ անոթիներուն» (նույն տեղը)։

Իսկ ի՞նչ է պատահել, որ բուրժուական կառավարությունը նպաստավորում է «անոթիներուն»։ Պատճառն այն է, ասում են դաշնակցականները, որ բուրժուական պետությունը ձեռք է բերել տնտեսական վիթխարի հզորություն և ճակադրվել է մոնոպոլիաներին։

Որպես ապացույց դաշնակցական մամուլը հաճախ է վկայակոչում արտադրամիջոցների ազգայնացման կամ «հանրային արտադրության ստեղծման» («Ալիք», 19 սեպտեմբերի, 1964 թ.) այն երևույթները, որոնք նկատվում են կապիտալիստական առանձին երկրների տնտեսության տարբեր ճյուղերում։

Մեր ժամանակներում բուրժուական շատ երկրներում պետությունն անմիջականորեն ղեկավարում է իրեն պատկանող բազմաթիվ ձեռնարկություններ, բանկեր, արդյունաբերության և տրանսպորտի ամբողջական ճյուղեր։ Պետական սեփականության հիմքի վրա իմպերիալիստական երկրներում զարգանում է կապիտալիստական տնտեսության խոշոր սեկտորը։ Կապիտալի ձգտումն է՝ ամեն կերպ հարմարվել արտադրաուժերի զարգացման արդի պահանջներին, ուժեր, որոնք այլևս չեն համապատասխանում կապիտալիզմի արտադրահարաբերություններին։ Մասնավորապես, ժամանակակից տեխնիկայի զարգացման շնորհիվ առաջանում են արդյունաբերության նոր ճյուղեր՝ ատոմային արդյունաբերություն, էլեկտրոնիկա և այլն, որոնք պահանջում են հսկայական կապիտալ ներդրումներ, մի բան, որը նույնիսկ ամենահզոր մոնոպոլիաների ուժից վեր է։

Ելնելով բուրժուական երկրներում պետական սեփականության ստեղծման փաստից, դաշնակները հավաստիացնում են, թե որքան մեծանում է այդ սեփականության ծավալը, բուրժուական պետությունն այնքան ավելի է անկախ դառնում մոնոպոլիաներից, հետևապես ավելի ու ավելի վճռականորեն է «հակադրվում» վերջիններիս կամքին։ Նրանք այդպիսի «հակադրման» արտահայտություններից մեկն են համարում հարկերի գանձման «ճիշտ» սիստեմը, որի միջոցով կապիտալիստական զարգացած երկրների կառավարությունները, իբր, համարյա ամբողջովին «բռնագրավում են» մոնոպոլիաների շահույթները։ Հարկային այդպիսի քաղաքականությամբ, իբր, բուրժուական պետությունն ազգային հարստությունը վերաբաշխում է՝ եկամուտների հավասարեցման սկզբունքի իրականացման նշանաբանով։

Սփյուռքահայ առաջադիմական ուժերը մերկացնում են բուրժուական պետության դերի նենգափոխման, նրա «վերդասակարգային» բնույթի վերաբերյալ Արևմուտքում համառորեն պրոպագանդվող և դաշնակների պաշտպանությունը գտնող կապիտալիզմի ջատագովների վերոհիշյալ հակագիտական ու ստահոդ քարոզները։

Վերդասակարգային պետության մասին բոլոր խոսակցությունները բացահայտ աչքակապություն են, գրում է Լևոն Զորմիսյանը։ Երևութապես բուրժուական «պետութեան կը վերաբերե ազգային հավաքական շահի պաշտպանութեան պարտականությունը», բայց իրականում այն «բացառապես և առավելապես» տիրող «դասակարգին շահերու պաշտպան կը հանդիսանա»։ Այս է իրականությունը, «անոր հակառակ արտահայտուած տեսակետները պարզապես մտքերու մեջ շփոթություն ստեղծելու, մարդիկը օրորելու, իրականությունն անոնց տեսողութենեն ծածկելու նպատակը կը հետապնդե» (Լևոն Զորմիսյան, Կուսակցութիւնները..., Պեյրութ, 1965, էջ 185)։



Բուրժուական պետությունը չի կարող փոխել իր բնույթը։ Այն մի մեքենա է, որի միջոցով բուրժուազիան իրականացնում է իր քաղաքական տիրապետությունը շահագործվող դասակարգերի նկատմամբ։ Կապիտալիզմի զարգացման և արտադրության հետագա մոնոպոլիզացիային զուգընթաց բուրժուական պետությունն ավելի ու ավելի ակնհայտորեն է դրսևորում իր հակաժողովրդական, հակաբանական էությունը։

«Մ. Նահանգներու կառավարությունը,— նշում է սփյուռքահայ առաջադիմական գործիչներից մեկը,— եթե ժողովրդական կառավարություն է, ուրեմն ան կենալու է ժողովրդի մեծամասնութեան շահերը պաշտպանելու դիրքին վրայ։ Մինչդեռ այդ կառավարությունը բացահայտորեն կեցած է այդ ժողովրդի արյունն ու քրտինքը շահագործելով յղբացող կապիտալիստ դասակարգի շահերը «պաշտպանելու անշեղ ճամբուն վրայ» (Լեւոն Մարտիրոսյան, Դասակարգային կռիվներու գիծը ազգերու պատմութեան մէջ, Գ. հատոր, էջ 720)։

Անշուշտ, վերջին տասնամյակների ընթացքում Արևմուտքի կապիտալիստական երկրներում զգալի չափով աճել է պետության տնտեսական դերը, գրում է «Լրաբեր»-ը, ընդլայնվել նրա գործունեության ոլորտը։ Սակայն ճըգնաժամերը բուրժուական պետության ջանքերով կանխելու վերաբերյալ խոսակցությունները, նշում է թերթը, բորբոքված երևակայության արդյունք են։ Կյանքն իր ընթացքն ունի և այն երբեք չի տեղավորվի կապիտալիզմի պաշտպանների պրոկրուստյան մահճի մեջ։ Պատմությունը ցույց է տվել, որ տնտեսական ճգնաժամերը կապիտալիզմի անխուսափելի ուղեկիցն են, և դրանից խուսափել չի կարող բուրժուական ոչ մի երկիր։

Ինչպես կապիտալիստական բոլոր երկրների, այնպես էլ ԱՄՆ-ի տըրնտեսական զարգացման պրոցեսը կրել ու կրում է ցիկլային բնույթ։ Չնայած ամերիկյան կապիտալիզմի զարգացման «յուրատեսակ ուղու» մասին խոսակցություններին, կյանքն իր ընթացքն ունի։ Եթե անցյալ դարում կապիտալիզմի տնտեսական ճգնաժամերը, հիմնականում սկսվելով Եվրոպայում, այնուհետև տարածվում և ընդգրկում էին նաև ԱՄՆ-ը, ապա մեր դարում դրությունն արմատապես փոխվել է։ Այժմ տնտեսական ճգնաժամերը մեծ մասամբ սկսվում են հենց Ամերիկայի Միացյալ Նահանգներից (1920—1921, 1929—1933, 1937—1938 թթ. տնտեսական ճգնաժամերը) և, այնուհետև, տարածվում կապիտալիստական աշխարհով մեկ։

Նշելով, որ «դրամատիրութեան դրութեան գործած աններելի մեղանչումներեն մինն այն է, թե ան պարբերաբար կստեղծե տնտեսական սուր տագնապներ, որոնց երեսեն միլիոնավոր ժողովուրդներ կմատնվեն ահագին նյութական կորուստներու, անթիվ անհամար միամիտ մարդիկ իրենց բոլոր ունեցածը կկորսընցնեն և հացի կարոտ աղքատներուն շարքին կմտնեն», «Նոր օր»-ը ընդգծում է, որ ամերիկյան աշխատավորության համար «վերջին հարյուր տարվա ընթացքին» 10—15 անգամ ստեղծվել է նման անտանելի կացություն։ Դրանցից «մեծագույնը, ամենեն ողբալին էր 1930—1933-ի տագնապը, որուն պատճառով երկիրը գրեթե սնանկացավ, անհամար մարդիկ կորսնցուցին առնվազն 250 միլիարդ դոլար։ Ապահովագրական խոշոր ընկերություններ, դրամատուներ ծանր կորուստներու մատնվեցան, խուճապ ստեղծելով երկրին մեկ ծայրեն մյուսը, 35—40 միլիոն ամերիկացիներ չքավորութեան մատնուեցան» («Նոր օր», 7 փետրվարի, 1964 թ.)։

Չնայած կառավարության ձեռնարկած բազմաթիվ միջոցառումներին, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո նույնպես ճգնաժամային բաղ-

մաթիվ երևույթներ եղան ԱՄՆ-ում: Դեռ նոր էր վերջացել պատերազմը, երբ ճգնաժամային առաջին բարդությունները իրենց զգալ տվին արդյունաբերության մեջ: Մի քանի ամիս հետո, 1946 թ. կեսերին, ԱՄՆ-ի տնտեսությունն ապրեց ճգնաժամային ամենամեծ ցնցումներից մեկը, որի հետևանքով երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծ չափով կրճատվեց և 1943 թ. համեմատությամբ, իջավ մոտ 30 տոկոսով: Փակվեցին արդյունաբերական շատ ձեռնարկություններ, փողոց նետվեցին հարյուր հազարավոր մարդիկ: Ճգնաժամերն ԱՄՆ-ում կրկնվեցին նաև հետագա տարիներին, մասնավորապես 1948—1949, 1953—1954, 1957—1958 թվականներին:

Այսպիսով, միայն հետպատերազմյան 15 տարիների ընթացքում (1946—1960 թթ.), ԱՄՆ-ը ապրել է գերարտադրության չորս ճգնաժամ: Ըստ որում, 1957—1958 թթ. տնտեսական ճգնաժամն իր ավերիչ ազդեցությունն ունեցավ ամբողջ կապիտալիստական աշխարհի վրա: Այսքանից հետո կարիք կա՞ արդյոք ուրիշ ապացույցներ փնտրել, ցույց տալու համար ամերիկյան կապիտալիզմի «բացառիկ կայունության», նրա զարգացման «յուրօրինակ» ուղու մասին բուրժուական գաղափարախոսների քարոզած տեսակետի ամբողջ սնանկությունը:

Պարզ է, որ բուրժուական պետության միջամտությամբ կապիտալիստական տնտեսությունը ճգնաժամերից հեռու պահելու բոլոր փորձերը դրական արդյունքներ տալ չեն կարող: Բուրժուական «վերդասակարգային» պետությունը միայն կարող է այս կամ այն չափով ազդել հասարակական վերարտադրության պրոցեսի վրա, բայց չի կարող որոշել նրա ուղղությունը: Բուրժուական պետությունն ի վիճակի չէ վերացնելու տնտեսական ճգնաժամերի հիմքը, լիկվիդացնելու կապիտալիստական շուկայի անարխիան ու տարերայնությունը, որքան էլ հետևողականորեն կիրառի «ներդրումների անընդհատ աճի» և «բյուջետային կարգավորման» քաղաքականություն:

Եթե բուրժուական պետությունն ի վիճակի չէ կանխելու կապիտալիստական տնտեսության ճգնաժամերը, հետևապես ի վիճակի չէ նաև վերացնելու գործազրկությունը: Գործազրկության վերացման հնարավորության մասին բուրժուական պատրանքներն իրական փաստերի լույսով ամեն անգամ հեշտությամբ ցրվում են, ինչպես թափանցիկ ծուխ:

«Անգործությունը՝ այդ մեծ չարիքը, որով կտառապին միլիոնավոր ամերիկացիներ այս երկրին մէջ, հին և քրոնիկ տնտեսական ախտ մըն է, զոր դրամատիրութիւնը չէ կրցած դարմանել: Ընդհակառակը ախտ մըն է, որ օր ըստ օրէ կխորանա, կսաստկանա,— գրում է «Նոր օր»-ը:— Հաշիվ եղած է, թե Ամերիկայի մեջ ամեն շաբաթ 40 հազար գործավորներ գործազուրկ կըլլան, 1956-էն ասդին երկաթի գործարաններում բանվորներուն թիվը 200 հազար, իսկ ինքնաշարժի գործարաններուն մեջ աշխատողներուն թիվը 168 հազար պակսած է» («Նոր օր», 7 փետրվարի, 1964 թ.): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գործազրկության չափերով ԱՄՆ-ը աշխարհում բռնեց առաջին տեղը:

Կեանքի պայմանները Ամերիկայի մեջ, —այսպես է վերնագրված այն հոդվածը, որ Կահիրեում լույս տեսնող ռամկավարական «Արեվ» օրաթերթը զետեղել է իր էջերում, այն թարգմանաբար արտատպելով ամերիկյան «Նյուսուիկ» ամսագրից: Հոդվածում կարդում ենք. «Անվիճելիորեն, գործազրկությունը գլխավոր դեր կը խաղայ Միացյալ Նահանգներու մեջ աղքատութեան գոյութեան: Վերջին տուեալներուն համաձայն 4,6 միլիոն ամերիկացիներ, որոնք կը ներկայացնեն աշխատող ուժին 5,6 առ հարյուրը, անգործ են» («Արեվ», 23 հուլիսի, 1964 թ.): —«Եվ երանի թե մարդկային կարողությունները իրենց արժանի վարձատրությունը կարենային ստանալ (կապիտալիստական երկրներում — Հ. Ս.), և երանի թե աշխատիլ ուզողին կարելի ըլլար միշտ գործ ապահովել»:— Իր հերթին ավելացնում է հնչակյան «Արարատ»-ը (20 մարտի, 1966 թ.):

Բայց կապիտալիստական իրականության պայմաններում գործազրկության վերջ տալը, «աշխատիլ ուզողին միշտ գործ ապահովելը» անհնար բան է: Գործազրկության և աշխատավոր զանգվածների աղքատության աճը համոզիչ հաստատում է մարքսիզմ-լենինիզմի ճշմարտացիությունը:

Հիրավի, վերջին տասնամյակներում զգալի է բուրժուական պետության տնտեսական դերը: Բայց ճիշտ է նաև, որ դրան զուգահեռ մեծացել է նրա կախվածությունը ամենազոր մոնոպոլիաներից: Հենց դա է պատճառը, որ բուրժուական «վերդասակարգային» պետությունը, առաջնորդվելով Քեյնսի դեղատոմսերով, բյուջետային հատկացումներ կատարելիս, առաջին հերթին, հաշվի է առնում ամենախոշոր մոնոպոլիաների շահերը:

ԱՄՆ-ի կորպորացիաներն ամեն տարի հոշոտում են պետական բյուջեն, միլիարդների հասնող պետական պատվերներ ստանալով: 1964 թ. ամերիկյան կառավարության բյուջետային ծախսերի մեծ մասը (69 տոկոսը) մտել է արդյունաբերական-ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչների գրպանը (պաշտպանության, օտարերկրյա օգնության, տիեզերքի հետազոտության համար արված հատկացումների և պետական պարտքի տոկոսների վճարման ձևով): Նույն տարում կառավարության ռազմական պատվերների 70 տոկոսը բաժին է ընկել երկրի 100 խոշոր ընկերություններին: Ըստ որում, դրանցից առավել խոշորագույն 10 մոնոպոլիաներ ստացել են այդ պատվերների 30 տոկոսը: Դա նշանակում է, որ, այսպես կոչված՝ բուրժուական «վերդասակարգային» պետության բյուջեի ծախսերի առյուծի բաժինը վեր է ածվում մոնոպոլիաների եկամտի և հիմնականում ծառայում երկրի տնտեսության ռազմականացման նպատակներին:

Ավելի անհեթեթ է այն պնդումը, թե բուրժուական «վերդասակարգային» պետությունը «համարյա լիովին բռնագրավում է մոնոպոլիաների շահույթը»: Այլապես ինչով բացատրել, որ մոնոպոլիաներն այդ շահույթի, այսպես կոչված, «բռնագրավման» պայմաններում իրենց չափազանց լավ են զգում: Եթե 1937 թվականին ամերիկյան կորպորացիաների շահույթները պետության կողմից հարկերի գանձումից հետո, կազմել են 4,7 միլիարդ դոլար, ապա հետպատերազմյան առաջին տասնամյակում տարեկան միջինը կազմել է 20 միլիարդ դոլար:

Լիբանանի պետական բյուջեն ըստ առանձին հատվածների վերլուծելու միջոցով սփյուռքահայ պարբերականներից մեկը ցույց է տալիս, թե ինչպես երկրի «բնակչութեան 4 առ հարյուրը կկողոպտե պետութեան գանձը»: Լիբանանի պետական բյուջեն հիմնականում գոյանում է տուրքերի միջոցով, որ առավելապես գանձվում է բնակչության աշխատավոր և սակավ եկամտի տեր խավերից: «Այս իրողութեան փաստ է այն, որ 1963-ին եկամտային տուրքերեն գոյացած 30 միլիոն լիբանանեան ոսկիին երկու երրորդը վճարած են աշխատավոր, պաշտոնեայ և մանր ու միջին խավերը, իսկ մեկ երրորդը միայն՝ դրամատերերը, առևտրական ու արդյունաբերական խոշոր ընկերություններն ու ձեռնարկները» («Յառաջ» (Բեյրութ), 10 հոկտեմբերի, 1965 թ.):

Դեռ ավելին, բուրժուական պետությունից իրենց լիովին ազատ զգալով,

մոնոպոլիստական առավել խոշոր միավորումներն ընդհանրապես հրաժարվում են նրան հարկ վճարելուց։ Նույն պարբերականի հաղորդման համաձայն «քարյուղի «Մեթրեքո» ընկերությունը և Շեքայի ցեմենթի ընկերությունը՝ յուրաքանչյուր վեցական միլիոն ոսկիի իրենց պարտքը տակավին չեն վճարած պետական գանձին։ Նմանապես 200 միլիոն ոսկի եկամտային տուրքի խոշոր գումար մը անվճար կը մնայ՝ մոնոբոլիստական խոշոր ընկերություններու մոտ» (նույն տեղը)։

Սփյուռքահայ մամուլի օրգաններում հաճախ է քննարկման նյութ դառնում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հարցը։ Եվ դա պատահական չէ։ Գաղթաշխարհի կոմունիստ և սոցիալիստ գործիչները պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը դիտում են որպես բուրժուական հասարակարգի անլուծելի հակասությունների հետագա խորացման հետևանք, իսկ դաշնակները, այդ հասարակարգի առողջացման ու կայունացման ակնառու ապացույց։

Իմպերիալիզմի բնույթը ոչնչով չի փոխվել այն բանից, որ կապիտալիզմն անցում է կատարել իր զարգացման պետական-մոնոպոլիստական աստիճանը,— գրում է «Լրաբեր»-ը,— Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմն ընդլայնված հիմքի վրա վերարտադրում է բուրժուական հասարակության անտագոնիստական բոլոր հակասությունները։ Այն տնտեսական ու քաղաքական հզոր ուժ է, մոնոպոլիաների և բուրժուական պետական ապարատի պարզ միավորում՝ մի միասնական մեխանիզմի մեջ։ Կապիտալիզմի այդ տարատեսակությունը ոչ միայն չի փոխում բուրժուական հասարակարգի դասակարգերի դրությունը հասարակական արտադրության մեջ, այլև, սրելով այդ հասարակարգի բոլոր հակասությունները, ավելի է խորացնում վիհը աշխատանքի ու կապիտալի, ազգի հսկայական մեծամասնության և մի խումբ մոնոպոլիստների միջև, որոնք տեր են արտադրամիջոցների վիթխարի զանգվածի։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակաշրջանում պրոլետարիատի դեմ կանգնում են ոչ թե առանձին ձեռնարկություններ ու մոնոպոլիաներ, որոնք աջակցություն են ստանում բուրժուական պետությունից, այլ կանգնում է մոնոպոլիաների և պետության միացյալ ուժը։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի առանձնահատկություններից մեկն այն է, որ ամենազոր մոնոպոլիաները, իրենց ձեռքում կենտրոնացնելով տնտեսական ու քաղաքական հրեշավոր ուժ, բուրժուական պետությունը վերածում են իրենց գործերը վարելու մարմնի։ Այլ խոսքով, մոնոպոլիաները փաստորեն պետության մեջ դառնում են պետություն մը, որ կը հակակշռե երկրի խոշոր թե մանր տնտեսական բոլոր գործառնությունները» («Հառաջ» (Բեյրութ), 10 հոկտեմբերի, 1965 թ.)։

«Տնտեսական իշխանավորները,— գրում է «Նոր օր»-ը,— հաճախ այնքան կհարստանան, կզորանան, որ նույնիսկ կառավարությունը կջանան իրենց կամքին հպատակեցնել և երբեմն ալ կհաջողին ալ։ Անոնք կարգիլեն կառավարությունն իրենց շահերուն աննպաստ օրենքներ հաստատելե և կամ գայն կհարկադրեն իրենց շահը ապահովելու ծառայող օրենքներ հաստատելու, ինչ որ կառավարությունը գերավարել կնշանակե» («Նոր օր», 7 փետրվարի, 1964 թ.)։

Հայտնի է, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում Արևմուտքի զարգացած երկրներում պետական-մոնոպոլիստական կապիտալի աճը հանգեցրել է այն բանին, որ կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի ավելի քան 20 տոկոսը տվող 100 գերհզոր մոնոպոլիստական միավորումները, փաստորեն, որոշում են այդ երկրների ներքին ու արտաքին ողջ քաղաքականությունը։



Չնայած «Ալիք»-ը «միանգամայն սխալ» է համարում այն տեսակետը, ըստ որի «ընդամենը մի քանի մեծ դրամատերեր իրենց կամքը ու քմահաճույքը պարտադրում են Միացյալ Նահանգներու կառավարության», այնուամենայնիվ, հենց այդ երկրի օրինակով կարելի է տեսնել, թե հզորագույն մոնոպոլիաներն ինչպես են լիովին իրենց ենթարկում պետական ապարատը։ ԱՄՆ-ում տեղի է ունեցել պետական ապարատի և մոնոպոլիաների այնպիսի սերտաճում, որ երբեմն շատ դժվար է որոշել դրանց միջև եղած սահմանագիծը։ Նավթային, պողպատի, ավտոմոբիլային, բանկային արքաները տենդորեն իրենց ձեռքն են գցում կառավարական գլխավոր պոստերը, իշխանության տեղական ու կենտրոնական օրգաններն են խցկում իրենց ներկայացուցիչներին։

1964 թ. ամերիկյան «Լայֆ» հանդեսում լույս տեսած ԱՄՆ-ի 36-րդ պրեզիդենտը վերնագրով հոդվածում Կեյտ Ուիլերը և Ուիլյամ Լեմբերտը ուշագրավ տվյալներ էին բերել ամերիկյան պրեզիդենտների ունեցվածքի մասին։ Այդ տվյալներից երևում է, որ նախկինում ԱՄՆ-ի պրեզիդենտ կարող էր ընտրվել այնպիսի գործիչ, որի անշարժ գույքի արժեքը չէր անցնում մի քանի տասնյակ հազար դոլարից։ Այժմ դա լիովին բացառված է,— գրում են հոդվածի հեղինակները։ Ամերիկյան 36-րդ պրեզիդենտ Ջոնսոնի ունեցվածքը հասնում է 14 միլիոն դոլարի։ Ջոնսոնների ընտանիքը Սպիտակ Տանը տեղ գրաված ամենահարուստ չորս ընտանիքներից մեկն է։ Մյուս երեք հարուստ ընտանիքներն էին Վաշինգտոնները, որոնց հողային տարածություններն այժմյան գներով ավելի քան 20 միլիոն դոլարի արժեք ունեին, Հուվերները և Քենեդիները։ Ըստ որում, Ջոն Քենեդիի անձնական ունեցվածքը գնահատվում էր 10 միլիոն դոլար, իսկ Քենեդիների ընտանիքի ընդհանուր հարստությունը հավասար է 400 միլիոն դոլարի։

Ամերիկյան տնտեսագետ Վիկտոր Պեռլոն գրում է, որ 1955 թվականին ԱՄՆ-ի պետական օրգանների 272 ամենակարևոր պոստեր զբաղեցնող պաշտոնյաներից 150 հոգին կապիտալիստներ էին, 68-ը՝ ադմինիստրատորներ, 30-ը՝ իրավաբաններ, 14-ը՝ զինվորականներ, 12-ը՝ պրոֆեսիոնալ քաղաքական գործիչներ։ Այլ խոսքով, Վաշինգտոնի կառավարական հիմնարկություններում ղեկավար պոստերի մեծ մասն զբաղեցնում են հենց իրենք՝ կապիտալիստները։

Այսպիսի պատկեր մենք տեսնում ենք նաև Արևմուտքի բարձր զարգացած մյուս երկրներում։ Օրինակ, արևմտագերմանական խոշոր մոնոպոլիաներն իրենց անմիջական ներկայացուցիչներն ունեն կառավարության մեջ, բունդեստագում, կառավարող կուսակցության ղեկավար օրգաններում։

Այսպիսով, միանգամայն պարզ է, որ բուրժուական «վերդասակարգային» պետության մասին խոսել, նշանակում է ուղղակի բռնել խաբեբայության ուղին։ Բուրժուական պետությունն ինչպես անցյալում, այնպես և այժմ լիովին ծառայում է մի գլխավոր նպատակի՝ պաշտպանել շահագործողների շահերը, հավերժացնել նրա քաղաքական տիրապետությունն աշխատավորների վրա։

Հետևաբար, հօգուտ կապիտալի հավիտենական թագավորության պարոնայք դաշնակցականների կատարած տեսական վարժությունների ոչ այլ ինչ են, եթե ոչ, բուրժուական կարգերին հավատարմորեն ծառայելու իրենց կուսակցության առօրյա պրակտիկայի ադեկված անդրադարձումը։

ԱՄԻՐԲԵԿՅԱՆ Վ. Մ.
Բանասիրական գիտությունների թեկնածու

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ ՇՈՒՐՋ*

*Ժամանակակից մարդու համար մամուլը կենսական անհրաժեշտություն է, աշխարհի հետ հաղորդակցվելու լավագույն միջոցներից մեկը։ Այն հասարակական կարծիքի ձևավորման և արտացոլման հորդ աղբյուր է, աշխատավոր մասսաների վրա կոմունիստական կուսակցության գաղափարական ներգործման հուժկու զենք։ Մամուլի դերը մեծ է նաև մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։*

*Մամուլի առջև ծառացած խնդիրների լուծմանը նպաստում են մամուլի պատմության գիտական ուսումնասիրությունը, նրա կուտակած փորձի ընդհանրացումը։ Դրան է կոչված մամուլագիտությունը՝ ժուռնալիստիկան։*

*Մամուլագիտությունն ուսումնասիրում է պարբերական մամուլի պատմության ու զարգացման օրինաչափությունները, կյանքի արտացոլման եղանակներն ու կերպերը, ընդհանրացնում լրագրության ընթացիկ փորձը, օգնում լրագրողներին՝ ավելի խոր և բազմակողմանի լուսաբանելու կյանքի երևույթները։ Այն միաժամանակ քննում է առանձին, կամ մի խումբ պարբերականների ընդհանուր, կամ որոշակի ժամանակահատվածի պատմությունը, լրագրական ժանրերի զարգացման առանձնահատկությունները, մամուլի դերը հասարակական մտքի զարգացման պատմության մեջ։*

*Զանազան բառարաններում հրապարակախոսությունը բնորոշվում է իբրև քաղաքական թեմաներով հոդվածագրություն։ Այդ բնորոշումն այժմ թերի է, միակողմանի։ Լրագրական բոլոր ժանրերն, ըստ որում և հրապարակախոսությունը ավելի են զարգացել, հարստացել և դուրս եկել բառարանային շրջանակներից։ Ինչ վերաբերում է հրապարակախոսությանն, ապա այն կարելի է բնորոշել իր բաղկացուցիչ մասերով՝ քաղաքական, պատմագիտական, էկոնոմիկական, գեղարվեստական, ռազմական և այլն։ Այսպիսով մամուլագիտությունը հետամուտ է հասարակական մտքի զարգացման օրինաչափություններին, այդ զարգացման մեջ լրագրության դերին, նրա առջև ծառացած հրատապ խնդիրներին։ Դրա մեջ է մամուլագիտության կենսական նշանակությունը։*

*Հաճախ վիճում են, թե գիտության ո՞ր ճյուղին է պատկանում մամուլագիտությունը։ Ոմանք այն կարծիքին են, թե այն զուտ բանասիրություն է, ոմանք այն մղում են պատմագիտության գիրկը։ Ճշմարիտն այն է, որ մամուլագիտությունը սերտ կապերի մեջ է ոչ միայն բանասիրության և պատմագիտության հետ, այլև օրգանապես առնչվում է տնտեսագիտությանը, փիլիսոփայությանը, իրավաբանությանը, արվեստին և այլն։ Այսպիսով մամուլն ընդգրկում է հասարակական կյանքի բյուրավոր կողմեր, և նրա ժանրերը պայմանավորված են ժամանակի հանրային կյանքի ու մտքի զարգացման խոյանքներով։*

*Այս կապակցությամբ չի կարելի ցավով չնշել, որ ժամանակակից մամուլագիտությունը կանգնած է մի լուրջ դժվարության առաջ, տակավին հրապարակի վրա չկան հայ լրագրության պատմության շատ կարևոր ժամանակահատվածներին նվիրված աշխատություններ, առանց դրանց մամուլագիտությունը չի կարող լուծել իր առջև ծառացած խնդիրները։ Այդ բանը այժմ լրացվում է. հատկապես վերջին տարիներին մեզ մոտ լույս են տեսել ուշագրավ մենագրություններ, ակնարկներ և այլն։ Բայց դա քիչ է։*

*Մեծ է մամուլագիտության դերը բոլշևիզմի գաղափարական զինանոցում, կուսակցության քաղաքական պայքարում։ Այն կուսակցության հետ ստեղծագործական վերելք է ապրել, օգնել նրան մարքս-լենինյան գաղափարներով դաստիարակելու աշխատավորական հոծ զանգվածները։*

*Նոր, գիտական մամուլագիտության հիմնադիրներ հանդիսացան Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը։ Երկարամյա գաղափարական-քաղաքական իրենց մղած պայքարում, նրանք մեզ թողին կոմունիստական ժուռնալիստիկայի վիթխարի ժառանգություն, որն իր հարստությամբ և բազմաժանրությամբ այսօր էլ ծառայում է միջազգային հեղափոխական շարժման առաջընթացին։* Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Դասակարգային կռիվը Ֆրանսիայում, Լուի Բոնապարտի բրյումերի տասնութը, Պարոն Ֆոխտը *և հարյուրավոր այլ հոդվածներ և երկեր մնում են նորագույն լրագրության հոյակապ նմուշներ։ Միայն* Հռենոսյան լրագիրը *բավական էր, որպեսզի Մարքսը հռչակվեր իբրև կոմունիստական ժուռնալիստիկայի անմահ հիմնադիր։ Նրանց զինակիցներ՝ Պ. Լաֆարգը, Ֆ. Մերինգը և շատ ուրիշներ նշանակալի չափով հարստացրին մարքսիստական ժուռնալիստիկայի միջազգային գանձարանը։*

*Մարքսիստական ժուռնալիստիկան զարգացման ավելի բարձր աստիճանի հասավ, երբ հասարակական կյանքի ասպարեզ եկավ Վ. Ի. Լենինը։ Լենինյան* Իսկրան, *Իլյիչի գրչին պատկանող բազմաթիվ երկեր, բրոշյուրներ և հոդվածներ եկան խորացնելու և հարստացնելու նոր, պրոլետարական ժուռնալիստիկան։ Միաժամանակ Լենինը կոփեց ու դաստիարակեց ժուռնալիստների մի փայլուն սերունդ, որն իր գրչով էլ նպաստեց լենինյան գործի հաղթանակին։*

*Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը բոլշևիկյան մամուլը բնորոշել է որպես կոլեկտիվ պրոպագանդիստ, կոլեկտիվ ագիտատոր և կոլեկտիվ կազմակերպիչ։*

*Տակավին 1905 թվականին,* Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն *հոդվածում Լենինը շարադրել է կուսակցական գրականության սկզբունքները։ Նա նշել է, որ «Բոլոր լրագրերը, ժուռնալները, հրատարակչությունները... պետք է անմիջապես ձեռք զարկեն վերակառուցողական աշխատանքի, ձեռք զարկեն այնպիսի դրություն ստեղծելու, որ նրանք այս կամ այն հիմունքներով ամբողջովին մտնեն այս կամ այն կուսակցական կազմակերպությունների մեջ» (Երկեր, հ. 10, էջ 45)։ Միաժամանակ*

* Տպագրվում է ճարցադրման կարգով։ *Խմբ.*

Լենինն ընդգծում էր, որ բոլշևիկներն ստեղծում են ազատ մամուլ, ազատ «ո՛չ միայն ոստիկանական իմաստով, այլև կապիտալից ազատ լինելու, կարիերիզմից զերծ լինելու իմաստով.— այդ բավական չէ. նաև բուրժուական անարխիստական ինդիվիդուալիզմից զերծ լինելու իմաստով» (Երկեր, հ. 10, էջ 42)։ Նա մեծ համոզչականությամբ ցույց էր տալիս, որ բացարձակ ազատության վերաբերյալ բուրժուական ինդիվիդուալիստների ճառերը լոկ կեղծավորություն են։ «Փողի իշխանության վրա հիմնված հասարակության մեջ, այն հասարակության մեջ, որտեղ աղքատության են մատնված աշխատավորության մասսաները և պորտաբուծություն են անում մի բուռ հարուստներ, չի կարող իրական և իսկական «ազատություն» լինել» (Երկեր, հ. 10, էջ 44)։

Մամուլի կուսակցականության և ազատության լենինյան գաղափարները տիրապետող և համաժողովրդական դարձան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո։ Կոմունիստական կուսակցությունը, կենսագործելով լենինյան պատգամները, բարենպաստ պայմաններ ստեղծեց նոր մամուլի զարգացման համար։ Մամուլագիտության լենինյան գաղափարները սովետական ժուռնալիստիկայի ստեղծագործական սկզբունքներն են, նրա անկյունաքարերը։ Աշխատավորների իշխանությունը հաստատած երկրում բոլշևիկյան մամուլն իր առջև նոր խնդիրներ դրեց։

Ժողովրդական տնտեսության վերականգնման և վերակառուցման, ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, Հայրենական պատերազմի և դրան հաջորդած խաղաղ շինարարության տարիներին սովետական մամուլը հանդիսացավ մասսաներին մոբիլիզացնելու հզոր զենք, բազմակողմանիորեն արտացոլեց նոր կյանք կառուցող մարդու ներաշխարհը, ապրելակերպը։ Սոցիալիստական շինարարության դրական փորձի օրինակների ընդհանրացում, կյանքի տարբեր բնագավառներում նկատվող թերությունների և սխալների քննադատություն, ակտիվ մասնակցություն երկրի էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի, գրականության, արվեստի գործերին՝ ահա սովետական մամուլի առջև ծառացած մեծ խնդիրները։

Այդ ընդհանուր հարցերից բացի, յուրաքանչյուր հանրապետական մամուլ ունի նաև իր ուրույն բազմազան խնդիրները։ Հայտնի է, որ Սովետական Հայաստանի մամուլը լայնորեն օգտագործում է կենտրոնական, միութենական հանրապետությունների թերթերի, ամսագրերի, հանդեսների ստեղծագործական պրակտիկան։ Սովետահայ մամուլը սիստեմատիկորեն լուսաբանում է մեր բազմազգ Միության ժողովուրդների կյանքը, տնտեսական, կուլտուրական նվաճումները։ Մամուլագիտության տեսադաշտից դուրս չեն մնում հանրապետական և միութենական շահերի զուգորդման հարցերը։ Այսպես, դժվար է պատկերացնել սովետահայ մամուլը սովետական կենտրոնական և տեղական պարբերականներից անջատ։ Հիշենք «Правда», «Известия» թերթերի, Սովետական Միության հեռագրական գործակալության (ՏԱՍՍ), նրա մամուլի բյուրոյի, պատերազմի տարիներին սովետական ինֆորմացիոն բյուրոյի, զինվորական թղթակիցների բազում նյութերը, որոնք այնքան առատորեն հրապարակվում էին Հայաստանի թերթերում, ամսագրերում, հանդեսներում։

Հայ մամուլի շառավիղները ձգվում են աշխարհով մեկ։ Ներկայումս սփյուռքում հրատարակվող մոտ 130 պարբերականներին թղթակցում են մեր պատմաբանները, բանասերները, փիլիսոփաները, տնտեսագետները և



ուրիշներ։ Արտասահմանում ապրող հայերի մշակութային կյանքի, նրանց սովետական հայրենիքի շուրջը համախմբելու շնորհակալ գործում սփյուռքի մամուլի գործունեության լուսաբանումը մամուլագիտության խնդիրներից է։

Սովետական մամուլի ուժը մասսաների վրա նրա խոր ներգործությունն է, գաղափարական նպատակասլացությունը, կուսակցականությունը, ժողովրդայնությունը, ինտերնացիոնալիզմը, կյանքի հետ սերտ կապը։ Մեր կուսակցության համագումարները, Կենտրոնական կոմիտեի պլենումները երկրի առաջ դրված քաղաքական-տնտեսական կարևորագույն խնդիրները քննարկելիս, միշտ հանրագումարի են բերել մամուլի կատարած աշխատանքը և նոր պայմաններին համապատասխան խնդիրներ առաջադրել։

Կենսագործելով լենինյան պատգամը (թերթի յուրաքանչյուր հաստիքային աշխատակցի դիմաց պետք է ունենալ բազմաթիվ արտահաստիքային աշխատակիցներ), մեր կուսակցությունը միշտ հոգացել է բանվորների, գյուղացիների, մտավորականների հետ մամուլի կապի ամրապնդման մասին։ Չի կարելի չհիշել բանգյուղթղթակցական շարժման մասին մեր կուսակցության կենտրոնական կոմիտեի 1925 թ. հունիսի 1-ի որոշման այն խոսքերը, թե բանգյուղթղթակցական շարժման՝ իբրև աշխատավորական զանգվածների նկատմամբ պրոլետարական կոմունիստական ազդեցության հաղորդչի նշանակությունը, հետագայում պայմանավորված կլինի բանգյուղթղթակիցների քաղաքական, կուլտուրական դաստիարակությամբ։

Հայտնի է, որ սովետական հասարակական կյանքի կարևոր սկզբունքներից մեկը մամուլի քննադատական ելույթներին անհապաղ արձագանքելն է, գործնական վերաբերմունք ցույց տալը։ Մամուլի ներգործության, նրա քննադատական ելույթներին ժամանակին և գործարար պատասխանելու վերահսկողությունը կատարում են կուսակցական կազմակերպությունները։ Այդ վերահսկողության անհրաժեշտությունը բազմիցս ընդգծվել է կուսակցական որոշումներում և օրենքի ուժ ստացել պրակտիկայում, ծրագրում։

Կապիտալի աշխարհում մամուլը ծառայում է իշխող դասակարգի շահերին։ Այդ անժխտելի փաստը ճգնում են բացասել բուրժուական գաղափարախոսները։ Նրանք շատ են աղմկում «ազատ մամուլի» մասին և իրենց համարում անկուսակցական, անկախ։ Իրականում այդ անկախությունը թվացող է, սին։ Բուրժուական մամուլը ապակողմնորոշում է աշխատավոր ժողովրդին, նրա ուշադրությունը շեղում կապիտալիզմի անբուժելի հիվանդությունից՝ չարորակ ուռուցքներից։

Մասնավոր սեփականատիրական աշխարհում հավատարմորեն ծառայելով իրենց խնամակալ միլիարդատերերին, թերթերն ու ամսագրերը, ռադիոն ու հեռուստատեսությունը մթագնում են ժողովրդական մասսաների գիտակցությունը։ Ամերիկայի Միացյալ Նահանգների և Եվրոպայի որոշ լրագրողներ առանց թաքցնելու խոստովանում են, որ մամուլի խնդիրն է դրամ վաստակել և աջակցել իրենց սնող կարգերին։ Բայց խոշոր կոնցեռնների մամուլի ժամանակակից թեորետիկները դիմում են ամեն միջոցի ապացուցելու, որ իբր մամուլի հոգևոր խնդիրն է՝ հանդես գալ որպես հասարակության շահերի պաշտպան, ժողովրդի պահանջների ձայնափող։ Իրականում կապիտալիստական աշխարհում «մեծ մամուլ» հասկացողությունը վաղուց արդեն դարձել է «մեծ բիզնեսի» հոմանիշ։ Այդ մամուլի թիկունքին կանգնած է ֆինանսական կապիտալը։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում երկու հսկայական կոնցեռններ պայքարում են հանուն տնտեսական, քաղաքական, ռազմական բացարձակ իշխանության։ Այդ Մորգանի և Ռոկֆելլերի դինաստիաներն են, որոնք բոլոր աշխարհամասերում ունեն թերթեր և լրագրական սինդիկատներ, ֆինանսավորում ու հոդվածներ են պատվիրում գրողներին, հրապարակախոսներին, լրագրողներին։ 1951 թ. Ցյուրիխում ստեղծված մամուլի միջազգային ինստիտուտն ամբողջովին ծառայում է ամերիկյան իմպերիալիստներին, պրոպագանդում տխրահռչակ «ամերիկյան ապրելակերպը», ծուռ հայելու մեջ արտացոլում Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների կյանքը, մթագնում ընթերցողների գիտակցությունը։ Այսպիսին է մամուլի ազատությունը կապիտալի աշխարհում։

Սովետական աշխարհի նոր մամուլը բուրժուական լրագրության հակառակ բևեռն է։ Այն չի թաքցնում իր կուսակցական պատկանելությունը, քաղաքական դավանանքը։ 1917 թ. նոյեմբերի 10-ին «Правда» թերթում մամուլի մասին հրապարակված լենինյան դեկրետում հակահեղափոխական մամուլի տարբեր երանգների դեմ պայքարելու միջոցառումներ էին նշված։ Հեղափոխության թշնամիները բոլոր կողմերից աղմուկ բարձրացրին, թե սոցիալիստական նոր իշխանությունը խախտեց իր ծրագրի հիմնական սկզբունքը, ոտնձգություն արեց մամուլի ազատության դեմ։ Բանվորագյուղացիական կառավարությունը դեկրետում բնակչությանն զգուշացնում էր, որ հակահեղափոխության լիբերալ ֆրազների հետևում փաստորեն թաքնված է ունևոր դասակարգերի նպատակը՝ մամուլի առյուծի բաժինը վերցնել իրենց ձեռքը, թունավորել մասսաների գիտակցությունը, խառնաշփոթություն մտցնել նրանց շրջանում։

Այս դեկրետից հետո, 1918 թ. հուլիսի 10-ին, սովետների Համառուսաստանյան V համագումարի ընդունած սահմանադրության 14-րդ կետում գրվեց. Աշխատավորների համար իրենց կարիքներն արտահայտելու իսկական ազատություն ապահովելու նպատակով Ռուսաստանի Ֆեդերատիվ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը ոչնչացնում է մամուլի կախվածությունը կապիտալից և բանվոր դասակարգի ու գյուղացիական չքավորության ձեռքն է հանձնում թերթերի, բրոշյուրների, գրքերի և մամուլի մյուս ամեն տեսակի գործերի հրատարակման տեխնիկական ու նյութական բոլոր միջոցները և ամբողջ երկրում ապահովում դրանց ազատ տարածումը։

Այսպես, սովետական կարգերի արշալույսին հիմնադրվեց մամուլի իսկական ազատությունը։ Կենսագործելով լենինյան պատգամները, կոմունիստական կուսակցությունը մեկը մյուսի հետևից ստեղծեց նոր պարբերականներ, աճեցրեց, դաստիարակեց լրագրողների մի հսկայական բանակ։ Մեր մամուլը սոցիալիստական շինարարության բոլոր ժամանակահատվածներում պատվով կատարեց կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի դերը։

Մամուլագիտությունն ուսումնասիրում է նաև համաշխարհային լրագրության առաջադիմական ավանդները, ստեղծագործական փորձը և կիրառում ընթացիկ լրագրական պրակտիկայում։ Սովետահայ մամուլագիտությունը մեծ նշանակություն է տալիս հայ լրագրական ժառանգությանը։ Սկսած հայ առաջին պարբերականից՝ Ազդարար-ից, որի առաջին համարը լույս է տեսել 1794 թ.,. մինչև մեր ամենաերիտասարդ պարբերականը՝ «Գրքերի աշխարհը», մեր մամուլն ավանդներով հարուստ արգասավոր ուղի է անցել։ Բնական է, որ



առանց այդ ավանդների խոր, բազմակողմանի ուսումնասիրության անհնար է մամուլը բարձրացնել ժամանակակից ընթերցողների պահանջների մակարդակին։

Մամուլագիտությունը չի նպատակադրում բացահայտել այս կամ այն դարաշրջանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների բոլոր կողմերը, մանրամասները. այն ընդհանուր հիմքի վրա առանձնապես հանգամանորեն լուսաբանում է պարբերական մամուլի գործունեությունը, նրա առանձնահատկությունները, փորձը։

Մամուլագիտությունը բաղկացած է լրագրության պատմություն, լրագրության տեսություն, գործնական ու հեռանկարային վերլուծություն մասերից, որոնք, իրենց հերթին, ունեն ենթաբաժիններ։ Լրագրության տեսությունն ընդգրկում է մամուլի գաղափարական, սոցիալ-քաղաքական, հրապարակախոսական գործունեության վերլուծությունը, մամուլի դերը հասարակական մտքի զարգացման մեջ և այլն։ Գործնական ու հեռանկարային վերլուծությունը նպատակ ունի բացահայտելու լրագրության փորձը, ցույց տալու ժանրերի, լեզվի, ոճի, նկարազարդման, ձևավորման, իրականության արտացոլման եղանակները։

Դժվար է գերագնահատել մամուլի աղբյուրագիտական նշանակությունը։ Որպես տպագիր վավերագրերի հարուստ շտեմարան, պարբերաբար մամուլը միշտ օգտակար է եղել հասարակական բոլոր գիտությունների համար։ Թեկուզ վերցնենք հայ իրականությունը։ Որքա՞ն կտուժեր, թերի կմնար, ասենք, մեր պատմագիտությունը, եթե չլիներ հայոց պարբերական մամուլը։

Մամուլագիտության բնորոշումը միակողմանի կլինի, եթե ընդհանուր գծերով չլուսաբանվի լրագրական ժանրերի, նյութի տեսակների, ինչպես նաև լեզվի, ոճի, ձևավորման սկզբունքները։ Սրանք այն տարրերն են, որոնցով ստեղծվում են թերթը, ամսագիրը, հաղորդումը։

Պարբերական մամուլի ստեղծման օրից ձևավորվել ու զարգացել են կյանքի բազմակողմանի արտացոլման լրագրային նորանոր ժանրեր։ Լրագրության ժանրերը տարբերվում են իրենց որոշակի դերով, ընդհանրացման ուժով, լեզվա-ոճական արտահայտչական միջոցների բնույթով, որոնք մեկուսացված չեն իրարից, չունեն մեկընդմիշտ սահմանված, քարացած, անշարժ եզրեր։ Ելնելով կոնկրետ պայմաններից, ներգործության ձևի և չափի անհրաժեշտությունից, լրագրական նյութը հաճախ խախտում է այս կամ այն ժանրի սահմանները։ Ավելին. տպագրված որևէ նյութի մեջ կարելի է նկատել բազմաժանրություն, այսինքն՝ լրագրական նյութի զանազան տեսակների առկայություն։ Կարելի՞ է այդ խառնաժանրը դիտել որպես բացասական երևույթ։ Ամենևին։ Լրագրության առանձնահատկություններից մեկը նրա ճկունությունն է, հրատապ հարցերի լուսաբանման միջոցին կոնկրետ ձև կամ ձևերի խումբ ընտրելը։

Ուրեմն, լրագրային ժանրերի սահմանազատումը մասամբ պայմանական է, ավելի ճիշտ, չի բացառում բազմազանությունը։ Ահա թե ինչու ժանրերը դիտվում են ո՛չ միայն իրենց զարգացման, այլև փոխադարձ կապի մեջ։ Ամեն մի ժամանակահատվածի համար բնորոշ է ժանրային որոշակի առանձնահատկություն։ «Ազդարարը» կրում էր ո՛չ միայն ժամանակի կնիքը, այլև ժանրային տեսակետից ուներ իր ինքնատիպ ոճը, գրելաձևը, նյութի մատուցման եղանակները։

Ձևի և բովանդակության տեսակետից հետաքրքրական էվոլյուցիա է ապրել թերթի լրատու բաժինը։

Ժամանակակից լրատուն ինֆորմացիայի ճկուն ձև է, որը մատուցվում է բազմակողմանի խորագրերով (լրատու, երկու տողով, թվերի լեզվով, թվեր և փաստեր, կարճ լուրեր արտադրական ձեռնարկություններից, լուրեր կոլտնտեսություններից, լուրեր եղբայրական հանրապետություններից, լուրեր արտասահմանից և այլն)։

«Լրագրական լեզուն» ունի որոշ առանձնահատկություններ։ Մամուլագիտությունը հետազոտում է լեզվի ընդհանուր օրենքների յուրահատուկ դրսևորումը լրագրական ժանրերում, ցույց է տալիս այն նորը, որ ներդրել են թերթերն ու ամսագրերը լեզվական մշակույթի հարստացման գործում։ Այն բացահայտում է նաև լրագրական լեզվի ստվերոտ կողմերը, առաջ քաշում լեզվի բարելավման կենսական հարցերը։

Հայտնի է, թե Լենինին ինչպիսի մտահոգություն էր պատճառում լրագրական լեզվի հարցը։ «Ռուսաց լեզուն մաքրելու մասին» գրության մեջ նա ցավով նկատում է, որ լրագրական լեզուն նույնպես սկսել է փչանալ, թերթերում հանդես եկող գրողներն առանց անհրաժեշտության օգտագործում են օտար բառեր։ Արդյոք ժամանակը չէ՞ պատերազմ հայտարարել օտար բառերի անհարկի գործածության դեմ։

Հիրավի, ժամանակակից լրագրական լեզուն դեռ չի հասել կատարելության։ «Գրված է չոր, լրագրական լեզվով» արտահայտությունը դեռ մնում է գործածության մեջ։ Սակայն անժխտելի է, որ մեզ մոտ աճել են լրագրողների, թղթակիցների հիանալի ուժեր, որոնք իրենց գիտելիքներով, լեզվական կուլտուրայով կանգնած են ստեղծագործական բարձր մակարդակի վրա։ Դրա շնորհիվ քիչ չեն գունեղ, պատկերավոր, հստակ լեզվով գրված հոդվածները, թղթակցությունները, որոնք զարդարում են պարբերականների էջերը։

Հիմնադրելով սովետական մամուլը, Լենինն ստեղծեց խմբագրական աշխատանքի դասական դպրոց։ Նա զգայուն էր յուրաքանչյուր հեղինակի նկատմամբ, ուշադիր, համբերատար ուղղում էր ձեռագրերը, խմբագրում և հետևում նկարազարդմանը, տպագրությանը, տարածմանը։ Լենինը միաժամանակ անզիջում և անողոք էր նրանց նկատմամբ, ովքեր պատշաճ ուշադրություն չէին դարձնում խմբագրական և հրատարակչական գործին։ Հիշենք նրա 1919 թ. հոկտեմբերի 24-ի նամակը Վ. Վորովսկուն։ Երրորդ ինտերնացիոնալը 6—7 մարտի 1919 բրոշյուրի առթիվ Լենինը զայրացած նշում է. «Ես խիստ նկատողություն եմ հայտարարում նման հրատարակության համար և պահանջում, որպեսզի պետական հրատարակչության կոլեգիայի բոլոր անդամները կարդան իմ ներկա նամակը և մշակեն երաշխիքի լուրջ միջոցներ, որպեսզի այդպիսի խայտառակություն չկրկնվի»։

Ամփոփենք։ Սովետական մամուլագիտության գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է։ Լենինը ո՛չ միայն դրեց նոր մամուլի անկյունաքարը, այլև դարձավ բոլշևիկյան լրագրության առաջին պատմագիրը, մամուլագիտության հիմնադիրը։ Լենինը տպագիր օրգանի քաղաքական գնահատականի չափանիշը համարում էր մեծ Հոկտեմբերի նվաճումների պահպանման և նոր կյանքի ստեղծման պայքարում նրա մատուցած ծառայությունը։ Լենինի մշակած մամուլագիտության սկզբունքները կոմունիստական հրապարակախոսության ուղեցույցն են։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՆՈՐՈԳ ԿՅԱՆՔԻ ՈՒՂԻՈՎ

Ամասիան այսօր այն չէ, ինչպիսին էր քսան տարի առաջ։ Այն հիմնովին փոխել է իր տնտեսական և կուլտուրական դեմքը, դարձել հանրապետության առաջավոր շրջաններից մեկը։ Շրջկենտրոնում և գյուղերում ավելի ու ավելի են ընդարձակվում տնտեսական ու կուլտուրական շինարարության աշխատանքները։ Ամասիացիները համառ աշխատանքով աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերում կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում։

Շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում, անցյալի համեմատ, զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսության վարման ընդհանուր կուլտուրան, դաշտերի բերքատվությունը, բարելավվել է անասունների ցեղային կազմը։ 1967 թվականին շրջանն ստացավ ավելի շատ բերք, անասնաբուծական մթերքներ, պատվով կատարեց պարտավորությունները պետության հանդեպ։

Վերջին տարիներին հատկապես մեծ աշխատանք է կատարվել ոռոգելի հողատարածությունների ընդարձակման բնագավառում։ 1965 թ. շահագործման է հանձնվել Վարդաբլուրի ջրհան կայանը։ Այդ օբյեկտի գործարկմամբ ջրովի հողատարածություններն ավելացան 2.300 հեկտարով և լայն հեռանկարներ բացվեցին ավելի եկամտաբեր կուլտուրաների մշակման համար։ Արդեն երրորդ տարին է, ինչ մի շարք տնտեսություններ ձեռնամուխ են եղել շաքարի ճակնդեղի մշակությանը, որի ցանքատարածությունը տարեցտարի ընդարձակվում է։ Այսպես, 1965 թ. շրջանում արտադրվել և պետությանն է վաճառվել 14.882, 1966 թ.՝ 19.542 և 1967 թ. 34.242 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Լուրջ քայլեր են արվում ծխախոտի մշակության ուղղությամբ, որը միանգամայն նոր երևույթ է շրջանի տնտեսական կյանքում։ 1965 թ. փորձնական կարգով անցնելով ծխախոտացանության, ստացանք և պետությանը վաճառեցինք 16, իսկ 1967 թ.՝ 416 ցենտներ ծխախոտի հումք։ Ընթացիկ տարում շրջանի տնտեսությունները պետությանը կվաճառեն մոտ 1.000 ցենտներ ծխախոտի հումք։

Նախատեսված է մինչև հնգամյակի վերջը շաքարի ճակնդեղի արտադրությունը հասցնել 50.000 և ծխախոտի հումքինը՝ 2.200 ցենտների։

Այս երկու կուլտուրաների մշակության արմատավորումը մեծապես նպաստեց Օխչօղլիի, Վարդաբլուրի, Մաղարաջուղի, Ագիգբեկովի, Մեղրաշա-

տի և Ջրաձորի կոլտնտեսությունների դրամական եկամուտների բարձրացմանը։ Ուստի, շրջկոմը խրախուսում և պաշտպանում է հիշյալ և մյուս կոլտնտեսությունների կուսկազմակերպությունների և վարչությունների միջոցառումները՝ ծխախոտի մշակության ավելացման ուղղությամբ։

Անցած երեք տարում շրջանում հացահատիկի համախառն արտադրությունըն ավելացել է 128,5, իսկ ճակնդեղինը՝ 230 տոկոսով։

Ներկայումս կոլտնտեսությունների և սովխոզների դրամական եկամուտների գրեթե 75 տոկոսն ստացվում է անասնաբուծությունից։ Շրջկոմը և կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն են հատկացնում գյուղատնտեսական արտադրության այս կարևոր ճյուղին։

Վերջին տարիներում շրջանում զարկ տվինք խոտացանության կուլտուրայի արմատավորմանն ու ծավալմանը։

Վերջին երեք տարում շրջանում աճել են անասունների գլխաքանակը և անասնաբուծական մթերքների արտադրությունը (մսինը՝ 32,3, կաթինը՝ 7,8, բրդինը՝ 16,9 և ձվինը՝ 7 տոկոսով)։

Երրորդ տարին է, ինչ շրջանը սիստեմատիկաբար կատարում է պետական բոլոր առաջադրանքները։ 1967 թվականին անասնապահության բնագավառում ձեռք բերած ցուցանիշների համար շրջանը արժանացավ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի երրորդ կարգի մրցանակի և դրամական պարգևի։

Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված հաջողությունների գլխավոր նախապայմանը տնտեսությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդումն է, նրանց տեխնիկական բարձր զինվածությունը։ Այժմ մեր 15 կոլտնտեսությունում և 5 սովխոզում գործում են 145 տրակտոր (տարբեր մարկայի), 211 ավտոմեքենա, 32 հացահատիկային կոմբայն և բազմաթիվ այլ մեքենաներ։

Կյանքը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր ամուր է կարգապահությունը, ղեկավար կադրերը համակված են պատասխանատվության զգացումով, գործիմացությամբ են կատարում իրենց պարտականությունները, հաջողությունները ապահովված են։ Գյոլլիի գյուղատնտեսական արտելը մի ժամանակ շրջանի ետ մնացող տնտեսություններից էր։

Սակայն կիրառված կազմակերպական և հասարակական միջոցառումների, ինչպես և կոլտնտեսության ղեկավարության փոփոխության շնորհիվ, վերջին տարիներում նշված կոլտնտեսությունը դարձել է առաջավոր։ Նախագահ Մուստաֆա Վալիևն իր բանիմացությամբ և աշխատունակությամբ իրոք նպաստեց կոլտնտեսության վերելքին։

Գրեթե նույնը կարելի էր ասել Գյուլլիջայի սովխոզի մասին, որտեղ դրությունը բարելավվեց երիտասարդ կոմունիստ Կուլի Մուստաֆաևին այդ տնտեսության դիրեկտոր նշանակելուց հետո միայն։

Իրենց պարտականությունները լավ են կատարում կոմունիստներ՝ Ջրաձորի կաթնապրանքային ֆերմայի վարիչ Արշալույս Աբրահամյանը, Ամասիայի կաթնաանասնապահական սովխոզի գլխավոր մեխանիկ Ժորժիկ Հարությունյանը, Գյուլլիբուլաղի կոլտնտեսության մեխանիզատոր Մուսեիբ Մահեռլամովը և ուրիշներ։ Մ. Մահեռլամովի կոմպլեքսային բրիգադան մի քանի տարի շարունակ մշակում է 90 հեկտար եգիպտացորենի ցանք և ամեն տարի լավ արդյունքների հասնում։

Անցյալ տարի կուսշրջկոմը լսեց կոմունիստ Մ. Մահեռլամովի կոմպլեքսային բրիգադայի աշխատանքի փորձի մասին, և այնուհետև դրա օրինակով շրջանի 7 տնտեսությունում ստեղծվեցին արտադրական կոմպլեքսային բրիգադաներ։ Կոմպլեքսային բրիգադայի գլխավոր առանձնահատկությունն այն է, որ այստեղ գրեթե բոլոր աշխատանքները մեքենայացված են։

Սովետական իշխանության տարիներին Ամասիայում կատարվել է իսկական կուլտուրական հեղափոխություն։ Երբեմնի հետամնաց շրջանի 26 գյուղերում այժմ գործում են 6 միջնակարգ, 16 ութամյա և 4 տարրական դպրոցներ, որոնցում սովորում են 4.919 աշակերտ։ Դա նշանակում է, որ շրջանի յուրաքանչյուր չորրորդ բնակիչն ընդգրկված է ընդհանուր հանրակրթական ուսուցման սիստեմում։ Մատաղ սերնդի ուսուցմամբ զբաղված են 314 ուսուցիչ, որոնց ճնշող մեծամասնությունն ունի բարձրագույն ու թերի բարձրագույն կրթություն։

Շրջանում, որտեղ առաջներում գրեթե ողջ բնակչությունը պատկերացում չի ունեցել թատրոնի և կինոյի մասին, այժմ գործում են 1 կուլտուրայի տուն, 24 ակումբ, 24 գյուղական և 11 դպրոցական գրադարան՝ 150.402 գրքով, 1 կինոթատրոն, 2 շրջիկ և 7 ստացիոնար կինոկետեր, կան 650 հեռուստացույց, ավելի քան 1.550 ռադիոընդունիչ և ռադիոբարձրախոս։ Շրջանում բնակչությունը բաժանորդագրված է 161.665 օրինակ զանազան թերթերի և ամսագրերի. դա նշանակում է, որ մեզ մոտ 1.000 մարդուն ընկնում են 811 թերթ և ամսագիր։

Ներկայումս շրջկենտրոնում գործում են երաժշտական դպրոց, պատկերասրահ-թանգարան, իսկ շատ գյուղական ակումբներին կից՝ թատերական և երաժշտական ինքնագործ խմբեր։

Անհամեմատ վիթխարի գործ է կատարված առողջապահության բնագավառում։ Վերացված են համաճարակները, որոնք մեծ չարիք էին բնակչության համար. նվազել է մահացությունը, մանավանդ երեխաներինը։ Մեկ շրջանային և երկու տեղամասային հիվանդանոցներում ու տասնչորս բուժկետերում հայրենանվեր աշխատանք են կատարում 11 բժիշկ և 60 միջին բուժաշխատողներ։

Կուլտուրայի և առողջապահության ասպարեզում ձեռք բերած ամենաաչքի ընկնող նվաճումը՝ տեղական կադրերի պատրաստումն ու աճեցումն է։ Շրջանում, ուր մի քանի տասնյակ տարի առաջ դժվար էր փոքր ի շատե գրաճանաչ մարդ գտնել, այժմ աշխատում են տեղական բնակչության ծոցից դուրս եկած մոտ 270 ուսուցիչ, 60 բժիշկ և բուժակ։

Շրջկոմը և կուսակցական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն են հատկացնում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, շինարարության, բնակավայրերի և ճանապարհների բարեկարգման հարցերին։

Իլյիչի լամպերը վաղուց լուսավորում են աշխատավորների բնակարանները։ Կենցաղի մեջ մուտք է գործում նաև գազը։ 1.311 ընտանիք (բոլոր ընտանիքների 35 տոկոսը) արդեն օգտվում են հեղուկ գազից. Նախատեսվում է շրջանը բնական գազ բերել 1970 թվականին, որը հնարավորություն կտա գազիֆիկացնելու շրջկենտրոնն ու մի շարք գյուղեր։

Վերջին տարիներին շրջանում հատկապես լայն ծավալ են ընդունել շինարարական աշխատանքները։ Ավելի ու ավելի է գեղեցկանում Ամասիա շրջկենտրոնը, որտեղ կառուցվել են տասնյակ բազմահարկ բնակելի տներ և հասարակական շենքեր։ Հասարակության միջոցներով այստեղ (1967 թ.) կանգնեցվել է Հայրենական պատերազմում զոհված ռազմիկների հիշատակը հավերժացնող մոնումենտալ հուշարձանը, ասֆալտապատվել են շատ փողոցներ, ստեղծվել նոր գեղեցիկ պուրակներ և ծառուղիներ։ Միայն վերջին երեք տարում շր-

ջանում կառուցվել են 5 նոր դպրոց (1.399 աշակերտի համար), 3 ակումբ (480 տեղանոց), 2 բաղնիք, 6 խանութ, հացի փուռ, ճաշարան և հասարակական սննդի մի շարք այլ նոր օբյեկտներ։

Տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր ճակատներում ձեռք բերված նվաճումները մեծ են ու ակնառու։ Սակայն ավելի նշանակալից ու դժվարին են այն պրոբլեմները, որոնք ծառացած են շրջանի կուսակցական կազմակերպությունների և բոլոր աշխատավորների առաջ։ Նախ, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության և հանրային անասունների մթերատվության հետագա բարձրացումը եղել և մնում է կոմունիստների ու բոլոր աշխատավորների մշտական խնդիրը։ Շատ կարևոր է նաև Ախուրյան գետի աջ ափին նախատեսված վիթխարի ջրհան կայանի շինարարությունը, որի իրականացումը պահանջում է ուժերի ու միջոցների մաքսիմալ լարում։ Կատարվելիք աշխատանքների ծավալի մասին ընդհանուր պատկերացում կազմելու համար, բավական է ասել, որ այստեղ, նախագծի համաձայն, պետք է անցկացվի 3 կմ երկարությամբ թունել։ Այս օբյեկտի գործարկմամբ շրջանի ներքին ջրովի ոռոգելի հողերը կհասնեն 4.300 հեկտարի։

Երրորդ, շատ կարևոր հոգսը՝ Լենինական—Ամասիա գազամուղի շինարարությունն է, որը, պլանի համաձայն, պետք է ավարտվի 1970 թ.։ Նոր գազամուղը արմատական հեղաշրջում առաջ կբերի շրջանի բնակչության կենցաղում։ Պակաս կարևոր չէ նաև Արփա լճի ափը օրինակելի հանգստավայր դարձնելու խնդիրը, որի լուծմանն արդեն ձեռնամուխ ենք եղել։ Այդ մտահղացման կենսագործմամբ շրջանում կստեղծվի աչքի ընկնող տեսարժան վայր, որը միաժամանակ հանգստավայր կլինի Լենինական քաղաքի և Հարևան Ղուկասյանի շրջանի աշխատավորների համար։

Չորրորդ, առաջիկայում մեզ մոտ ավելի կընդլայնվեն շինարարական աշխատանքները, պետության և կոլտնտեսությունների միջոցներով կկառուցվեն ավելի շատ բնակելի, հասարակական և տնտեսական շենքեր։ Կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութական բարեկեցության բարձրացմանը զուգընթաց գյուղերում նոր թափ կստանա նաև անհատական բնակարանային շինարարությունը։ Ելնելով դրանից, մենք հարց ենք հարուցել հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության առաջ՝ օգնել շրջտեղարդկոմբինատին՝ կազմակերպելու տեղական քարհանքերի արդյունաբերական մշակումը, տեղական քարի և այլ շինանյութերի արտադրության գործը։

Օգտվելով առիթից, որ «Լենինյան ուղիով»-ի խմբագրությունը հնարավորություն է ընձեռել մեզ հանդես գալու ամսագրի էջերում, պատմելու հեռավոր լեռնային շրջանի կոմունիստների և բոլոր աշխատավորների կյանքի ու ստեղծագործական առօրյայի մասին, ես կցանկանայի, որպեսզի հանրապետության համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարները ուշադրությամբ լսեին մեր ձայնը, խորամուխ լինեին մեզ հուզող հարցերում և հնարավոր օգնություն ցույց տային շրջանի առաջ ծառացած նոր, հրատապ խնդիրների ժամանակին և հաջող լուծմանը։

Մտնելով Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի պատվին ծավալված մրցության մեջ, Ամասիայի աշխատավորները ժամկետից շուտ կկատարեն իրենց բոլոր պարտավորությունները և կնվաճեն նոր բնագծեր։

ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Ս.

ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար

# ՔԱՂԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ՀԱՆՔՈՒՄ

Մեր յուրաքանչյուր տուփահանք մի ուրույն աշխարհ է իր համերաշխ, աշխատասեր կոլեկտիվով, աղմկահույզ, մարդկային պայծառ երազներով ու ձգտումներով։

Այստեղ է կոփվում բանվորի բազուկը, թրծվում հոգին, այստեղ է ձևավորվում նրա կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ և, վերջապես, պայքարի թեժ քուրայում ծնվում է իսկական հերոսությունը։

Հարկավոր է թափանցել, ճանաչել այդ աշխարհը, մտնել նրա գաղտնարանները, հայտնաբերել նորն ու առաջավորը, բարի խոսքով թևավորել աշխատանքի հերոսներին, դժվարին պահին նեցուկ լինել նորեկներին։

Մեր օրերում բանվորը շատ է աճել, հարստացել հոգեպես, կենսափորձով։ Մեծացել է նրա հետաքրքրասիրությունների շրջանակը. նա նորանոր պահանջներ ունի։ Նրան հուզում, մտահոգում են բազմապիսի հարցեր, որոնք վերաբերում են և՛ հարազատ կոլեկտիվին, ձեռնարկությանը և՛ շրջանին, հանրապետությանը, և՛ երկրի ներքին ու արտաքին կյանքին։ Ահա թե ինչու բոլոր հանքերի լեռնագործներն այնքան սիրով, ջերմությամբ են ընդունում քաղաքական ինֆորմատորին, նրան համարելով իրենց լավագույն խորհրդատուն, իրենց հույզերի ու մտքերի արտահայտիչը։

... Սովորական օրերից մեկն է։ Գնում ենք № 1 հանքը։ Կեսօրին տրվում է աշխատանքի մեկ ժամվա ընդմիջում։ Դա լիովի բավարարում է բանվորին՝ ճաշելու, հանգստանալու ու դեռ ընկերոջ հետ ասել-խոսելու համար։ Ձեռնարկության դիրեկտոր, քաղինֆորմատոր Վ. Ստեփանյանը որսում է այդ պահը և սկսում իր մտերիմ զրույցը տուփագործների հետ։ Մարդիկ այդ զրույցից ձանձրույթ չեն զգում, դիրեկտորին ակամա չեն լսում, ընդհակառակը, նրանք իրենց հարցասիրությամբ մի տեսակ աշխուժացնում են «լսարանը», միջամտում, տոն տալիս խոսակցությանը։

Ասես մի թարմացնող հով է անցնում հավաքվածների վրայով, երբ դիրեկտորը հիշատակում է միայն մի թիվ, Արթիկտուֆի կոլեկտիվը տարեկան երկրին տալիս է այնքան շինաքար, որով հնարավոր է կառուցել 150 հազար բնակչություն ունեցող մի քաղաք։

Դա շոյում է տուփագործների ինքնասիրությունը, նրանց մեջ բորբոքում օրինական հպարտություն։ Չէ՛ որ նրանք մասնակցում են հայրենիքի բարգավաճմանը, քաղաքաշինությանը։ Չէ՛ որ նոր բնակարան ստացող յուրաքան-

հյուր ընտանիք շնորհակալությամբ, բարի խոսքերով կհիշի տուֆագործին, այն մարդուն, որը շունչ ու ոգի է տալիս գունագեղ քարին:

— Ով կառուցում է,— շարունակում է ինֆորմատորը,— նա չի կարող քանդել, իսկ եթե քանդում էլ է, ապա միայն հինն է հիմնահատակ անում, նորի տեղն ու ճանապարհը հարթում: Այդպես է մեր շինարար, կառուցող ու հավերժող ժողովուրդը, որի համար այնքան թանկ է խաղաղությունը: Եվ, որպեսզի չխռովվի մեր օջախի անդորրը, որպեսզի մեր երկնակամարը միշտ պայծառ մնա, հարկավոր է օր-օրին հանույթն ավելացնել, քարը քարի վրա դնել, շինարարի պահանջը լիովին բավարարել: Այս տարի մեր կոլեկտիվը շուքով ու հանդիսավորությամբ կնշի ձեռնարկության գոյության 40-ամյակը: Լեռնագործները իրենց ձեռնարկության պատմությունը հյուսել են ու դեռ կհյուսեն փառավոր գործերով:

Ինֆորմատորը չի ավարտում իր խոսքը, մատնացույց է անում այդ «հյուսվածքի» մի թարմ կտորը: Օրը դեռ նոր է կիսվել, ահա քարհատ բանվոր Գ. Համբարձումյանը արդեն կատարել է երկու նորմա:

Ընկերներն ակնածանքով են նայում Գ. Համբարձումյանին, սրտանց ուրախանում նրա գործերով: Եվ ինչքան լավ է, որ Գուրգենը միայնակ չէ իր պայքարում: Նրա հետ ուս-ուսի քայլում են լեռնաշխարհի փառաբանված զավակները՝ Գ. Զոփիկյանը, հանրապետության Գերագույն Սովետի դեպուտատ Ս. Բիչախչյանը, անվանի մեխանիզատոր, ՀԿԿ Կենտկոմի անդամ Վ. Վարդանյանը, մեքենավար Մ. Կարապետյանը, ներհատող մեքենայի մեքենավար Ջ. Գասպարյանը և շատ ուրիշներ:

Ինչպես չհիշատակել,— ոգևորված ասում է ինֆորմատորը,— Գ. Համբարձումյանի անունը, մի մարդու, որը մեկ օրում տվել է 14 խորանարդ մետր շինաքար՝ գերազանցելով անգամ տուֆահատ հզոր ագրեգատի արտադրողականությունը:

Տեսեք ինչպիսի վիթխարի ուժ, եռանդ է թաքնված մի սովորական մարդու մեջ: Ահա սա է հերոսը, սա է այն տուֆագործը, որից պետք է սովորել և որին պետք է ընդօրինակել: Միայն սեփական կարողության նկատմամբ հավատը, համոզմունքը Գ. Համբարձումյանին հասցրին իսկական հերոսության:

Ընդմիջումն ավարտվում է: Կոլեկտիվը թարմ ուժերով վերսկսում է աշխատանքը, հանքը վերստին լցվում է շնդալից աղմուկը, նորից ծայր է առնում թեժ պայքարը:

Տուֆագործը սեփական ձեռքերով գրում է ձեռնարկության նոր էջը, գրում է հույսով, հավատով և այն բերկրալի գիտակցությամբ, որ գալիք սերունդները երախտագիտությամբ կհիշեն այսօրվա հրաշալի լեռնագործներին: Մարդիկ քայլ առ քայլ նվաճում են հնգամյակի երրորդ տարվա բնագծերը: Նվաճում են վստահ ու համարձակ: Եվ լեռները նահանջում են նրանց զորեղ կամքի առաջ: Ինֆորմատորը նայում է, մեղմ ժպտում և գոհ հեռանում:

... Այդ նույն ժամին մի այլ տեղամասում ձեռնարկության կուսակցական կոմիտեի անդամ Հ. Գարեգինյանը բանվորներին ինֆորմացիա է տալիս ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի արդյունքների մասին:

— Պլենումը,— ասում է նա,— կուսակցության, ամբողջ ժողովրդի անունից սրտանց շնորհակալություն հայտնեց ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, քաղբյուրոյին՝ նրանց իմաստուն, հեռատես քաղաքականության համար, այն ամենի համար, ինչ արել և անում են նրանք ժամանակակից բարդ իրադրության պայմաններում:



Ունկնդրելով քաղինֆորմատորներին, տուֆագործներին թվում էր, թե Կենտկոմի պլենումին ներկա էին ո՛չ միայն մեր կուսակցության լավագույն ներկայացուցիչները, այլև ամբողջ սովետական ժողովուրդը, որն իր բախտն ու ճակատագիրը առհավետ կապել է կոմունիստների մեծագործ կուսակցության հետ: Կուսակցության և ժողովրդի միասնությունը սովետական մարդկանց երջանկությունն է, նրա հույսն ու ապավենը:

— Մեր կուսակցությունը,— շարունակում է քաղինֆորմատորը,— համբերատարությամբ, հոգատարությամբ, համառ ու հետևողական ջանքեր է գործադրում միջազգային բանվորական և կոմունիստական շարժման միասնության, առաջադիմական ուժերի համախմբվածության համար: Եվ դա հասկանալի է. որքան միաբան ու միասնական գործեն աշխարհի առաջադիմական ուժերը, այնքան ավելի տևական ու կայուն կլինի խաղաղությունը: Դա այն ուժն է, որից սարսափում են իմպերիալիստները:

Ինֆորմատորը խոսում է խոր համոզվածությամբ, անկեղծությամբ և դրա համար նրա խոսքը պարզ է, հստակ և մատչելի ունկնդիրներին: Նա հանգամանորեն անդրադառնում է միջազգային կյանքում վերջին ժամանակներս կատարված իրադարձություններին, մեկնաբանում դրանք, փաստարկում, լավատեսությամբ հետևություններ անում: Բանվորը լսում է քաղինֆորմատորին, հավատում, իր անկեղծ մտահոգությունն ու կարծիքը հայտնում: Նա ևս լի է պայծառ լավատեսությամբ, այն գիտակցությամբ, որ կոմունիստական շարժումը գնալով դառնում է զորեղ, անխորտակ մի ուժ: Դրանից նրա հոգին համակվում է բերկրանքով, նա ուզում է ավելի լավ աշխատել, եղածի վրա նոր բան ավելացնել, ամեն ինչ խղճով, սրտով անել:

Մեռնող կապիտալիզմը ճգնում է իր գոյությունը պահպանել և գաղափարական զենքով: Ինֆորմատորը խոսում է այն մասին, որ հարկավոր է բարձրացնել բանվորների զգոնությունը և միշտ սուր պահել գաղափարական զենքը:

— Ինձ,— ասաց հայրենադարձ բանվոր, քարհատ Ց. Խաչատրյանը,— ծանոթ է իմպերիալիզմի թունոտ զենքը, որն ստեղծված է միայն մարդու մեջ ամենալավագույն զգացմունքները խեղդելու, նրա ազատաբաղձ ձգտումները բռնադատելու, մարդուն հոգեպես ու ֆիզիկապես հաշմելու, ստրկացնելու համար: Երբ տարագրությունից վերադարձա իմ իսկական հայրենիքը՝ Սովետական Հայաստան, միայն այստեղ զգացի, թե որքան վսեմ ու բարձր է հնչում մարդ կոչումը, թե ինչ են նշանակում իսկական ազատությունն ու երջանկությունը: Ես այստեղ դարձա իմ բախտի տերը, տուն ու տեղ դրեցի, կյանքի քաղցրությունը ճաշակեցի և սիրով որդեգրվեցի փառապանծ կոմունիստական կուսակցությանը:

Կոմունիստական կոչմանն արժանացած № 8 տուֆահանքում ցանկալի հյուր է ձեռնարկության դիրեկտորի տեղակալ, քաղինֆորմատոր Գ. Եղիազարյանը: Նա աճել է այստեղ, լեռնագործների կողքին և փականագործ բանվորից հասել է դիրեկտորի տեղակալի պաշտոնին: Նա լավ գիտե բանվորներին, հազար թելերով կապված է նրանց հետ: Տուֆագործը հանձին Գ. Եղիազարյանի տեսնում է ոչ միայն արտադրության խելացի հրամանատարին, այլև սրտամոտ և կարեկից ընկերոջը, որի հետ հեշտ է կիսել ուրախությունն ու դառնությունը, բանավիճել: Քաղինֆորմատոր Գ. Եղիազարյանը, ինչպես ասում են, կես խոսքից կարողանում է հասկանալ բանվորին, ճանաչել, թափանցել նրա հոգին:

Հաճելի է Գ. Եղիազարյանի պես ղեկավարին ունկնդրելը, անձամբ շփվելը: Նա սեփական փորձով տեսել է, գիտե, թե տուֆի արտադրության մեջ ինչպիսի հեղաշրջում առաջացրեց տեխնիկան: Ընդամենը ութը տարի առաջ,— նշեց նա,— հանքերում գործում էին միայն ներհատող մեքենաները: Հետո արտադրության մեջ մուտք գործեցին տուփահատ ագրեգատները, որոնք զգալիորեն հեշտացրին բանվորի աշխատանքը: Ահա, օրինակ, ձեր հանքը, ուր անխափան բանում են քսաներկու ագրեգատներ. դրանք հմուտ մեխանիզատորների ձեռքում հզոր ուժ են, որի առաջ նահանջում են ապառաժ ժայռերը, միայն հարկավոր է արդյունավետ օգտագործել այդ ուժը:

Բանվորներից մեկն անկեղծ մտահոգություն հայտնեց այն առթիվ, թե ինչու մյուս հանքերում գերակշռում է ձեռքի ծանր ու դժվարին աշխատանքը, չի լրացվում տեխնիկական սարքավորումների, բուլդոզերների, սկրեպերների պակասը: Ինֆորմատորը համբերատար պարզաբանեց, որ ամեն ինչ հնարավոր չէ միանգամից փոխել: Բայց բոլոր միջոցները ձեռնարկվում են, այս դժվարությունը ևս հաղթահարելու: Այո՛,— նշեց նա,— տեխնիկայի դարում քարը չպետք է ձեռքով հատել, մեր պետությունը հոգում է այդ մասին, բայց հարկավոր է և եղած սարքավորումները լավ խնամել ու ճիշտ օգտագործել:

Արթիկտուֆի կուսակցական կոմիտեն ամեն կերպ օգնում է քաղինֆորմատորներին՝ նրանց բեղմնավոր աշխատանքում, ուղղություն տալիս նրանց գործունեությանը: Ութ քաղինֆորմատորներից յուրաքանչյուրն ունի որոշակի հանձնարարություն ու թեմա:

Յուրաքանչյուր քաղինֆորմատոր, որպես կանոն, ամսական 3—4 անգամ հանդես է գալիս բանվորների առջև, պարզաբանում նրանց հուզող բազմապիսի հարցեր:

Կուսակցական կոմիտեն քաղինֆորմատորների համար պարբերաբար անցկացնում է սեմինար պարապմունքներ, կոնսուլտացիաներ, նրանց իրազեկ դարձնում կարևոր նորություններին, ժամանակի հրատապ խնդիրներին: Բոլոր քաղինֆորմատորներն ունեն բարձրագույն կրթություն, հարուստ կենսափորձ, անհրաժեշտ պատրաստականություն և կարողանում են մարդկանց ճիշտ կողմնորոշել երկրի ներքին և միջազգային դրության հարցերում: Իրենց գիտելիքներով, օգտակար խորհուրդներով, իրենց պատվաբեր աշխատանքով նրանք արդեն արժանի հեղինակություն են վայելում բանվորների միջավայրում: Տուֆաշխարհում սիրում ու գնահատում են քաղինֆորմատորի մեծ ու պատասխանատու աշխատանքը:

ԳԻՆՈՍՅԱՆ Ս. Ե.
Արթիկտուֆի կուսկոմիտեի քարտուղար

# ԱՐՀՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՏԵՂԱՄԱՍԸ

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը բարձր է գնահատում արհմիությունների դերը և գործունեությունը, նրանց ծառայությունները նոր կյանքի կառուցման գործում:

Սովետական արհմիութենական կազմակերպությունների ներկա ժամանակաշրջանի աշխատանքի բովանդակությունը և ուղղությունը նախանշված են կուսակցության XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի Հոկտեմբերյան (1964) և հաջորդ պլենումների որոշումներում:

Հնգամյակի և, հատկապես, հոբելյանական տարվա առաջադրանքների կատարման ասպարեզում կազմակերպական բավարար աշխատանք է կատարել, օրինակ, Հայաստանի առևտրի աշխատողների արհմիությունը, որն իր շարքերում ունի 43616 անդամ:

Վերջին 2—3 տարում առևտրի աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեն զգալի աշխատանք է կատարել արհմիութենական կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, արհմիութենական կազմակերպությունների ղեկավարների որակական կազմի բարելավման ուղղությամբ: Այժմ 126 միացյալ արհտեղկոմի նախագահներից 81-ը ունեն բարձրագույն մասնագիտական կրթություն, դրանց թվում 24 ապրանքագետ, 18 տնտեսագետ, 13 ինժեներ և այլն:

Արհմիութենական կազմակերպությունները կարևոր դեր են խաղում առևտրի ցանցում սոցիալիստական մրցության ծավալման գործում: Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարում ընդգրկված են 12.674 մարդ: Նրանք պայքարում են սովետական կուլտուրական առևտրի կանոնների խստիվ պահպանման, գնորդներին հավուր պատշաճի սպասարկելու համար:

Որոշակի աշխատանք է կատարվում առևտրի աշխատողների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ: Արհմիութենական կազմակերպությունները միայն 1968 թ. ընթացքում առևտրի աշխատողների համար տարբեր թեմաների շուրջ կազմակերպել են 1.313 դասախոսություն, զգալիորեն բարելավել են ակումբների և գրադարանների աշխատանքը (հատկապես Երևանում և Լենինականում): Հանրապետության առևտրի աշխատողների արհմիութենական կազմակերպությունների իրավասության տակ գործում են 29 ակումբ և գրադարան, որոնք իրավամբ դարձել են քաղաքական-մասսայական և կուլտուր-լուսավորական աշխատանքի իսկական կենտրոնները: Երևանի ունի-

վերմագի, № 2 սննդառի, Հացառի և հանրապետության մյուս քաղաքների առանձին առևտրական ձեռնարկությունների արհտեղկոմները մշտական հոգատարություն են ցուցաբերում վաճառասեղանի աշխատողների աշխատանքային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ, մեծ թվով մարդիկ են ներգրավվել արհմիութենական աշխատանքի մեջ, հետևում են նրանց գործունեությանը, մշտապես զբաղվում նրանց ուսուցման հարցերով։

Աշխատողների բուժման և կուլտուրական հանգստի կազմակերպման հարցերը գտնվում են արհմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ 1966—1967 թթ. առևտրի 3 հազար աշխատող արհմիութենական ուղեգրերով բուժվել ու հանգստացել են հանրապետության և երկրի առողջարաններում։ Բացի դրանից, այդ նույն ժամանակամիջոցում առևտրի աշխատողների 6 հազար երեխա կազդուրվել են պիոներական ճամբարներում։

Արհմիութենական կազմակերպությունները գործուն մասնակցություն են ունենում առևտրական ցանցի ընդլայնմանը։ Վերջին տարիներին հանրապետությունում ստեղծվել են առևտրական բազմաթիվ նոր օբյեկտներ, վերակառուցվել և վերասարքավորվել են հները։ Մի շարք խանութներում, ճաշարաններում և ռեստորաններում արհմիութենական կազմակերպությունների նախաձեռնությամբ սոցիալիստական լայն մրցություն է ծավալված աշխատավորության սպասարկման նոր, առաջավոր մեթոդների արմատավորման նպատակով։ Շնորհիվ դրա հանրապետությունում 1967 թ. ապրանքաշրջանառության պլանը կատարվել է 101,7 տոկոսով, վնասով աշխատող ձեռնարկությունների թիվը կրճատվել է 11 միավորով, զգալիորեն նվազել են չըպլանավորված կորուստները և այլն։

Մեծ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած առևտրի աշխատողների և նրանց արհմիութենական կազմակերպությունների առջև այժմ։ Կուսակցությունը և կառավարությունը պահանջում են ըստ ամենայնի բարելավել առևտրական կազմակերպությունների գործունեությունը, ամենուրեք լավ կազմակերպել գնորդների սպասարկման գործը, հետևել սովետական կուլտուրական առևտրի բոլոր կանոնների կատարմանը։ Արհմիութենական կազմակերպությունների անմիջական խնդիրն է՝ մոբիլիզացնել առևտրի ցանցի բոլոր աշխատողներին՝ հաջողությամբ կատարելու այդ խնդիրները։

Մինչդեռ հանրապետության առանձին շրջանների առևտրական ձեռնարկությունների արհմիութենական կազմակերպությունների գործունեությունը չի համապատասխանում կյանքի կողմից առաջադրված նոր պահանջներին։ Այսպես, Սևանի շրջկոոպմիության, քաղառևտրի, Հրազդանի շրջկոոպմիության և մի քանի այլ առևտրական ձեռնարկություններում և հիմնարկություններում արհկոմները գոյություն ունեն միայն թղթի վրա, փաստորեն չեն գործում, ամիսներով նիստեր չեն հրավիրում, չունեն աշխատանքի պլան։

Առևտրի աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեն, ինչպես ցույց են տալիս փաստերը, մոտիկից չի վերահսկել այդ արհմիութենական կազմակերպությունների գործունեությանը, չի զբաղվել դրանց ղեկավարների պատասխանատվության բարձրացման հարցով։ Եթե նա զբաղվեր այդ հարցով, անշուշտ կնկատեր, որ արհտեղկոմների նախագահների մեջ կան մարդիկ, որոնք չունեն աշխատանքի փորձ, պրակտիկ օգնության կարիք են զգում։ Կան նաև այնպիսիները, որոնք անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում աշխատանքում։



Մի շարք արհտեղկոմների աշխատանքում բացակայում են նպատակասլացությունն ու կոնկրետությունը։ Օրինակ, Հրազդանի, Երևանի, № 2 շուկաների, Եղեգնաձորի շրջկոոպի արհմիութենական կազմակերպությունները լավ չեն կատարում իրենց պարտականությունները, չեն օգտվում սովետական օրենսդրությամբ իրենց տրված իրավունքներից ինչպես տնտեսական բնույթի, այնպես էլ աշխատանքի ու կենցաղային հարցերը լուծելիս։ Կան նաև արհտեղկոմներ, որոնք վատ են ղեկավարում սոցիալիստական մրցությունը, բավարարվում են միայն այդ առթիվ որոշումներ ընդունելով, չեն զբաղվում առաջավոր փորձի ընդհանրացման և մասսայականացման, ետ մնացողներին կոնկրետ օգնություն կազմակերպելու, առաջավորներին խրախուսելու հարցերով։ Որոշ արհտեղկոմներ ճիշտ չեն պատկերացնում կոմունիստական աշխատանքի համար մղվող պայքարի հարցերը և դրանք շփոթում են իրենց պարտականությունների հետ։ Կան և արհմիութենական կազմակերպություններ, որոնք անբավարար են զբաղվում աշխատանքի վարձատրման, մարդկանց նյութական և բարոյական շահագրգռվածության բարձրացման հարցերով, հաճախ անուշադրության են մատնում մարդկանց աշխատանքի պայմանների բարելավման և տեխնիկայի անվտանգության հարցերը, անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում տնտեսական ղեկավարների նկատմամբ, որի պատճառով հաճախակի խախտվում են կոլեկտիվ պայմանագրերով նախատեսված պայմանները։

Կամոյի, Ամասիայի շրջկոոպների և Ջերմուկի քաղառի ու մի շարք այլ հիմնարկների արհկոմները քիչ բան են անում աշխատավորության շրջանում կուլտուր-լուսավորական և դաստիարակչական աշխատանքի կազմակերպման ուղղությամբ, ուշադրություն չեն դարձնում աշխատանքի ճիշտ կազմակերպման և նյութական արժեքների պահպանման համար աշխատողների պատասխանատվության բարձրացման հարցերի վրա, որի հետևանքով տեղի են ունենում հափշտակումներ և այլ կորուստներ։

Առանձին առևտրական կազմակերպություններ խախտում են աշխատանքի սահմանված կարգը, աշխատանքային ժամերը, մարդկանց աշխատեցնում կիրակի, տոն օրերին, բայց ընդունված կարգով չեն վարձատրում։ Նման խախտումներ են թույլ տալիս, օրինակ, Երևանի, Լենինականի, Սևանի և մի շարք այլ առևտրական կազմակերպությունների ղեկավարները, բայց նրանք պատասխանատվության չեն ենթարկվում։

Երևանի, Լենինականի և մի շարք շրջանների առևտրական կազմակերպություններում անհրաժեշտ և հետևողական աշխատանք չի տարվում ճաշարանների և խանութների վարիչների պատասխանատվության բարձրացման ուղղությամբ։ Մինչդեռ նրանցից ոմանք չեն համապատասխանում իրենց ըզբաղեցրած պաշտոնին, իսկ մի մասն էլ անպատասխանատու վերաբերմունք է դրսևորում հանձնարարված գործի նկատմամբ, ժամերով բացակայում աշխատանքից, պատշաճ կարգ ու կանոն չի ապահովում իրեն վստահված օբյեկտում, չի հետևում նրա սանիտարական վիճակին և այլն։

Առևտրի ցանցի աշխատողների մեջ կանայք դեռևս փոքր տոկոս են կազմում (պետական առևտրի ցանցում 45 և Հայկոոպի սիստեմում 42 տոկոս)։ Ինչպես արհմիութենական, այնպես էլ տնտեսական շատ ղեկավարներ հոգ չեն տանում առևտրի աշխատողների շարքերը բանիմաց մասնագետներով համալրելու մասին։ Պետական առևտրի աշխատողներից մոտ 7497 հոգի չունեն

նույնիսկ թերի միջնակարգ կրթություն և ոչ մի տեղ չեն սովորում։ Ավելի վատ է դրությունը Հայկոոպի սիստեմում, որտեղ 270 խանութի և 85 ճաշարանի վարիչներ չունեն միջնակարգ կրթություն։ Առևտրի աշխատողների մեջ բարձրագույն մասնագիտական կրթություն ունեցողները կազմում են ընդամենը 10 տոկոս։

Դրան պետք է ավելացնել նաև այն փաստը, որ առևտրի սիստեմում գոյություն ունի կադրերի անհարկի հոսունություն։ Միայն հանրապետության առևտրի սիստեմում 1967 թ. ընթացքում աշխատանքի է ընդունվել 5079 և աշխատանքից ազատվել 6273 մարդ։

Արհմիութենական կազմակերպություններն անբավարար են պայքարում առևտրի կանոնները խախտողների և այլ բացասական երևույթների դեմ։ Ցավոք, մի քանի արհմիութենական կազմակերպություններ հաճախ հովանավորել են առևտրի կանոնները խախտողներին։ Կոլեկտիվների ժողովներում, պատի թերթի էջերում պետք է նմաններին ենթարկել հասարակական պարսավանքի, ամենուրեք ստեղծել այնպիսի մթնոլորտ, որպեսզի նրանք հնարավորություն չունենան չարաշահումներ կատարելու։

Արհմիութենական կազմակերպությունները շատ բան կարող են անել հատկապես հասարակական սննդի բարելավման ուղղությամբ։ Գաղտնիք չէ, որ մեզ մոտ շատ ճաշարաններում և բուֆետներում վատ է կազմակերպված գործը, չկան կամ քիչ են բազմատեսակ և բարձրորակ ճաշերը, հաճախ են խախտվում գները։

Ինչպես առևտրական, այնպես և արհմիութենական կազմակերպությունների ղեկավարները պետք է բանվորական ճաշարաններն ամրապնդեն որակյալ մասնագիտական կադրերով, անհրաժեշտ պայմաններ ստեղծեն բարձրորակ, բազմազան ճաշեր մատուցելու համար։

Արհմիութենական կազմակերպությունները, նրանց ղեկավարները պետք է հոգ տանեն՝ բարձրացնելու առևտրի աշխատողների գիտակցականությունն ու պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, պայքարելու անազնիվ արարքների դեմ, աշխատողներից պահանջել վայելուչ վերաբերմունք գնորդների նկատմամբ։

ՍԱՖԱՐՅԱՆ Խ. Գ.
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

**ԲԱՂՐԱՄՅԱՆ Գ. Ա.**

ՀՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր

## ԻՐԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ԼԵՆԻՆԻ ՊԱՏԳԱՄԸ

*Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերափոխի երկրամասը, կվերածնի այն, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը սոցիալիզմին։*

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

Հազիվ թե անհրաժեշտություն կա հանգամանալի խոսելու հողատարածությունների ոռոգման կարևորության մասին մեր հանրապետության հողակլիմայական պայմաններում։ Ընթացիկ տարվա ամռան շոգերն ապացուցեցին, որ եթե չլիներ ոռոգումը, ապա Հայաստանի շրջաններում գյուղատնտեսական կուլտուրաների բերք չէր լինի կամ շատ ցածր կլիներ։ Իրոք, եթե Արարատյան հարթավայրում և ցածրադիր այլ շրջաններում առանց հողատարածությունների ոռոգման խոսք անգամ չի կարող լինել գյուղատնտեսության քիչ թե շատ ինտենսիվ վարման մասին, ապա ընթացիկ տարվա պայմաններում նույն վիճակում էին նաև նախալեռնային և լեռնային այն շրջանները, ուր գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգման անհրաժեշտությունը միշտ չէ որ զգացվում է։

Չպետք է մոռանալ, որ երկրի աշխատավորությանը սննդամթերքով և արդյունաբերությունը՝ հումքով ապահովելու համար բավական չէ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ստանալ այս կամ այն բարենպաստ տարում։ Այդ մթերքների սպասարկումը պետք է ապահովվի անընդմեջ յուրաքանչյուր տարի ո՛չ թե պաշարների կամ գնման, այլ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու կայուն բերքի սիստեմատիկ ստացման միջոցով (անկախ եղանակի խիստ փոփոխությունից)։ Իսկ այդ կարող է ապահովվել միայն հողատարածությունների ոռոգման դեպքում։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի (1966 թ.)՝ հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացման համար հողերի մելիորացումը լայնորեն զարգացնելու մասին ընդարձակ որոշմամբ, մեծ միջոցառումներ նախատեսվեցին նաև Հայաստանում։

Հանրապետության կուսկազմակերպությունների և աշխատավորության գործադրած ջանքերով տարեցտարի կատարվում ու գերակատարվում են ջրատնտեսական աշխատանքների պլանները։ Եթե 1959—1965 թթ., յոթնամյակի ընթացքում ջրատնտեսական շինարարության մեջ ներդրվել էր 66 միլիոն ռուբլի, ոռոգելի էր դարձել 50 հազար հեկտարից ավելի հողատարածություն և ջրարբիացվել 142 հազար հեկտար արոտավայր, ապա ընթացիկ հնգամյակի միայն առաջին երկու տարում ծախսվել է 45,6 միլիոն ռուբլի, ոռոգելի է դարձել 13 հազար հեկտար հողատարածություն, ջրարբիացվել մոտ 50 հազար հեկտար արոտավայր ու հարթեցվել 9 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն։ Ընթացիկ տարում ջրատնտեսական աշխատանքների վրա կծախսվի 30 միլիոն ռուբլուց ավելի, որը հնարավորություն կտա ոռոգելու ևս 9 հազար հեկտար, ջրարբիացնելու 25 հազար հեկտար արոտավայրեր և հարթեցնելու 4 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն։

1967 թ. նոյեմբերի 1-ի դրությամբ (գույքագրման տվյալներով) հանրապետության ոռոգման ցանց ունեցող հողատարածությունները կազմում են 276 հազար հեկտար։ Մինչև 1970 թ. դրանք կհասնեն 315 հազարի։

Վերջին տասնամյակում կառուցվել ու շահագործման են հանձնվել Արզնի—Շամիրամի և Թալինի առաջին հերթի ու Կոտայքի ջրանցքները, որոնց շնորհիվ երբեմնի ամայի ու քարքարոտ 30 հազար հեկտար հողատարածությունները, սովխոզների ու կոլտնտեսությունների աշխատավորների ուժերով, այժմ ծածկվել են խաղողի ու մրգի հիանալի այգիներով։ Նոյեմբերյանի, Գետափ—Աղավնաձորի, Այրում—Ճոճկանի, Կապսի, Գյուլլիբուլաղի, Հոկտեմբերյանի, Լալա—Ուզունթալայի, Սևջրի, Արմաշի, Սպիտակի, Ժդանովի, Վահագնի և տասնյակ այլ ջրհան կայաններ հնարավորություն են տվել հազարավոր հեկտար նոր հողատարածություններ ոռոգելու լեռնալանջերում ու բարձրադիր տափարակներում, որտեղից սովխոզներն ու կոլտնտեսությունները, անկախ կլիմայական պայմաններից, ստանում են խաղողի, մրգի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի և բանջարա-բոստանային կուլտուրաների բարձր ու կայուն բերք։

Հանրապետությունում խոշոր աշխատանքներ են կատարվել նաև ջրամբարներ կառուցելու ուղղությամբ։ Արդեն կառուցվել են մեծ ու փոքր ավելի քան 30 ջրամբար։ Արփիի, Ապարանի, Մանթաշի, Վարդաքարի, Սառնաշենի և այլ ջրամբարներում տարեկան կուտակվում է ուշ աշնան, ձմռան և վաղ գարնան անօգուտ հոսող 200 միլիոն խոր. մետրից ավելի ջուր, որն օգտագործվում է ամառը՝ ոռոգման համար։

Ընթացիկ տարում կավարտվեն ջրատնտեսական այն հիմնական աշխատանքները, որոնք կապված են Սևանա լճի մակարդակը հնարավոր բարձր նիշի վրա պահելու հետ։ Ինչպես հայտնի է, Սևանա լճից տարեկան պետք է բաց թողնվեր մոտ 500 միլիոն խոր. մետր ջուր, որից 380 միլիոնը ոռոգման և 120 միլիոնը Սևանի հիդրոէներգետիկ կասկադի ձմռան աշխատանքի համար։ Սակայն այս դեպքում ևս մակարդակը կշարունակեր իջնել, նախկինում ընդունված սխեմայով նախատեսվածից անհամեմատ պակաս չափով։ Որպեսզի վերջնականապես դադարեցվեր լճի մակարդակի իջեցումը, անհրաժեշտ էր գտնել ջրի նոր աղբյուրներ՝ Սևանի ջրերի փոխարեն։ Այդպիսիք են՝ Արփա և Մեծամոր գետերի այն ջրերը, որպիսիք լրիվ չեն օգտագործվում տարվա ընթացքում։ Կառուցվող Արփա—Սևան 50 կիլոմետրանոց թունելը հնարավորություն կտա լիճը լցնել տարեկան 250 միլիոն խոր. մետր



ջուր։ Սակայն միայն այս միջոցառումով չէր լուծվի արդեն գյուղատնտեսական կուլտուրաների տակ գտնվող մոտ 75 հազար հեկտար հողատարածությունների ջրապահովման հարցը։ Այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ էր կառուցել Ապարանի ջրամբարը, Արևշատի և Մխչյանի ջրհան կայանները։

Ապարանի ջրամբարի լրիվ տարողությունը 90 միլիոն խ. մետր է. օգտակարը՝ 81 միլիոն, որի կեսը կօգտագործվի նոր հողատարածությունների ոռոգման համար, իսկ մյուսը կտրվի Արզնի—Շամիրամի և Ներքին-Հրազդանի ջրանցքներին, Սևանի ջրերի փոխարեն։ Արևշատի ջրհան կայանը, որի խողովակաշարի երկարությունը մոտ 10 կիլոմետր է, մեկ տարվա ոռոգման սեզոնի ընթացքում Մեծամոր գետի ջրերից 50 միլիոն խոր. մետր ջուր կարող է բարձրացնել Ներքին-Հրազդանի ջրանցքը և այդքանով խնայել Սևանի ջրերը։

Մխչյանի ջրհան կայանն ամենահզորն է մեր հանրապետությունում։ Կայանի երկու աստիճաններում տեղադրված են 15 պոմպ, որոնք մեկ վայրկյանում 16,6 խոր. մետր ջուր կարող են բարձրացնել և ոռոգել Արտաշատի և Արարատի շրջանների մոտ 21 հազար հեկտար հողատարածությունները՝ փոխարինելով այդ նպատակի համար Սևանից բաց թողնվող ջրերին։ Դրանք Մեծամոր և Հրազդան գետերի, ինչպես նաև չորացող ջրանցքների անօգտագործելի ջրերն են։ Մխչյանի ջրհան կայանի շինարարությունը լրիվ կավարտվի ընթացիկ տարում և տարեկան 125 միլիոն խոր. մետրով կթեթևացնի Սևանի հոգսը։

Այսպիսով, Ապարանի ջրամբարը, Արևշատի և Մխչյանի ջրհան կայանները հնարավորություն են տալիս ոռոգման նպատակներով Սևանից բաց թողնվող ջուրը տարեկան պակասեցնել 215 միլիոն խոր. մետրով։

Այժմ հանրապետությունում կառուցվող ջրատնտեսական խոշոր օբյեկտներից են Արզնի-Շամիրամի և Թալինի ջրանցքների երկրորդ հերթերը՝ Աշտարակի և Թալինի շրջաններում, Ախուրյանի աջափնյա և Քասախի ձախափնյա ջրանցքները՝ Ղուկասյանի, Ամասիայի և Աշտարակի, Որոտանի ջրանցքը՝ Գորիսի, Կառնուտի և Սառնաղբյուրի ջրամբարները՝ Ախուրյանի և Անիի շրջաններում, Մարմարիկի ջրամբարը՝ Հրազդանի, Խնձորուտի և Սևքարի ջրհան կայանները՝ Շամշադինի և Իջևանի, Երինջատափի և Աղասեկի ջրհան կայանները՝ Ապարանի և Ազիզբեկովի շրջաններում և այլ օբյեկտներ, որոնց ավարտումը հնարավորություն կընձեռի մինչև հնգամյակի վերջը հանրապետության ոռոգելի հողատարածություններն ավելացնել մոտ 35 հազար հեկտարով։

Խոշոր օբյեկտների հետ զուգընթաց կառուցվում են նաև ջրատնտեսական մանր օբյեկտներ— ջրհան կայաններ, ջրանցքներ ու ջրամբարներ, որոնցից յուրաքանչյուրը կոռոգի 100—200 հեկտար հողատարածություն։ Պետք է նշել, որ այս օբյեկտների կառուցումը չափազանց մեծ օգնություն է տնտեսություններին, որովհետև հողերն իրացվում են արագ, առանց մեծ ծախսերի և կարճ ժամանակամիջոցում։

Մեծ աշխատանքներ են կատարվում հանրապետության համարյա բոլոր շրջաններում՝ արոտավայրերի ջրարբիացման ուղղությամբ։ Այդ պլանավորված աշխատանքները մեզ մոտ սկսվել են ոչ վաղուց— 1956 թվականից և, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, տալիս են դրական արդյունք անասնապահության զարգացման և, հատկապես, կաթնատվության բարձրացման գործում։ Ստույգ պարզված է, որ արոտավայրերի ջրարբիացման դեպ-

քում, այսինքն՝ արոտներում անասունները խմելու ջրով ապահովելիս, կաթնատվությունը բարձրանում է 15—20 տոկոսով։ Այժմ Հայաստանում ջրարբիացված է 204 հազար հեկտար արոտավայր։ Մինչև հնգամյակի վերջը կջրարբիացվի ևս 85 հազար հեկտար։ Ջրարբիացված են Արագած լեռան սարարոտներում ու Գեղամա, Բազումի, Կեչուտի, Վարդենիսի, Հայոց ձորի, Զանգեզուրի և այլ լեռնաշղթաների լանջերի համարյա բոլոր արոտները։ Ջրատնտեսական խոշոր աշխատանքներ են նախատեսվում նաև հաջորդ հնգամյակների ընթացքում, ինչպես հողատարածությունների ոռոգման, այնպես և արոտավայրերի ջրարբիացման գծով։

Նախնական հեռանկարային պլանով նախատեսվում է 1971—75 թթ. հանրապետության ոռոգելի հողատարածություններն ընդարձակել 80 հազար հեկտարով, 1976—1980 թթ. 90 հազարով, իսկ մինչև 2000 թ. հասցնել 650 հազ. հեկտարի։ Առաջիկա տարիներին նախատեսվում է կառուցել Ախուրյանի ջրամբարը (Անիի շրջանում), 525 միլիոն խոր. մետր ծավալով, որը հնարավորություն կընձեռի ջրով ապահովել Հոկտեմբերյանի և Թալինի առաջին հերթի ջրանցքներով առոգվող հողատարածությունները և լրացուցիչ ոռոգել 22 հազար հեկտար նոր հողեր Անիի և Թալինի շրջաններում։ Արտաշատի, Արարատի, Իջևանի, Նոյեմբերյանի և Սպիտակի շրջանների ոռոգվող հողերը ջրով լրիվ ապահովելու և մոտ 18 հազար հեկտար նոր հողեր ոռոգելու համար կկառուցվեն Ազատի, Վեդու, Ջողազի և Գետիկի ջրամբարները, մոտ 160 միլիոն խոր. մետր ընդհանուր ծավալով։ Սեպասարի մոտ 100 միլիոն խոր. մետր ծավալով ջրամբարը կոռոգի Ախուրյանի, Անիի և Թալինի շրջանների 15 հազար հեկտար հողատարածություն։ Մեծ տարածություններ կոռոգվեն նաև Գորիսի, Սիսիանի, Ապարանի և Արթիկի շրջաններում։

Ջրատնտեսական համեմատաբար մանր օբյեկտներ կկառուցվեն հանրապետության մնացած շրջաններում, որի շնորհիվ կոռոգվեն ո՛չ միայն վարելահողերը, այլև լանջերի անօգտագործելի հողատարածությունները։ Վերակառուցվում են նաև գործող մայր ջրանցքներն ու ոռոգման ցանցը։ Բայց պետք է նշել, որ այս բնագավառում դեռևս գոյություն ունեն խոշոր թերություններ։ Նախկինում կառուցված շատ ջրանցքներ բետոնով երեսպատված չեն, անմխիթար վիճակում է ոռոգման ցանցը (հատկապես ներտնտեսայինը), որի հետևանքով ջրի մեծ կորուստներ են լինում։

Չնայած ամեն տարի աշխատանքներ են ծավալվում մայր և միջտնտեսային ջրանցքները վերանորոգելու և երեսպատելու համար, սակայն հատկացված գումարները շատ քիչ են և չեն բավարարում։ Մեր կարծիքով, ինչպես միութենական, այնպես էլ հանրապետական պետպլանները ճիշտ չեն մոտենում այս հարցին։ Չի կարելի զբաղվել միայն նոր ոռոգելի հողատարածությունների ավելացմամբ։ Դա, իհարկե, շատ անհրաժեշտ է հետագա զարգացման համար, սակայն, առաջին հերթին, պետք է պահպանել և ճիշտ օգտագործել գոյություն ունեցող ոռոգման ցանցը, որովհետև բերքատվությունը պայմանավորված է այդ ցանցի նորմալ աշխատանքով։ Անհրաժեշտ է, թեկուզ ոռոգելի նոր հողերի աճի պակասեցման հաշվին, բավարար գումար հատկացնել գործող մայր ջրանցքները և միջտնտեսային ջրբաժանները վերանորոգելու, երեսպատելու և անհրաժեշտ քանակով արհեստական կառուցվածքներով հագեցնելու համար։

Առանձնապես վատ է ջրօգտագործող տնտեսություններին պատկանող ոռոգման ներքին ցանցի վիճակը։ Այդ ցանցի ընդամենը մի քանի տոկոսն է երես-



պատված բետոնով, իսկ մնացածն անցնում է հողային հունով, որի հետևանքով ո՛չ միայն ծծվում ու կորչում է թանկարժեք ջուրը, այլև գերխոնավանում ու ճահճանում են ցածրադիր հողատարածությունները, որոնց չորացման համար մեծ գումարներ են ծախսվում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է լուրջ վերաբերվեն այս հարցին և իրենց արտադրական պլաններում ոռոգման ներքին ցանցը կարգավորելու համար անհրաժեշտ միջոցներ նախատեսեն։

Ոռոգման ջրբաժան ջրանցքների և, հատկապես, ներքին ցանցի կառուցման ու վերակառուցման աշխատանքներն ուժեղացնելու նպատակով Աբովյանի երկաթ-բետոնի գործարանում արտադրվում են տարբեր չափերի կիսախողովակներ։ Գործարանի տարեկան հզորությունը 20 հազար խորանարդ մետր է։ Կիրառվում են միջոցառումներ՝ գործարանի հզորությունը ևս 10 հազար խոր. մետրով ավելացնելու նպատակով։ 1969 թ. կավարտվի Թալինի շրջանի Արագած ավանի մոտ կառուցվող տարեկան 50 հազար խոր. մետր հզորությամբ գործարանը։ Այս երկու գործարանները լրիվ կապահովեն ո՛չ միայն նորակառույց ջրատնտեսության օբյեկտների, այլև կոլտնտեսությունների ու սովխոզների պահանջները։

Հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացման համար մեծ ռեզերվ են 30 հազար հեկտար աղակալած հողատարածությունները, որոնք հիմնականում գտնվում են Արարատյան հարթավայրում։ Այդ հողերի առանձնահատկությունն այն է, որ պարունակում են սոդա, որը սովորական ջրային լվացումներով հողից չի անջատվում։ Վերջին տարիներս հողագիտության ու ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի մշակած մեթոդով այդ հողերը ծծմբաթթվի լուծույթով աղազերծվում և պիտանի են դառնում։ Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Արտաշատի և Արարատի շրջաններում այդ աշխատանքները բավականին ծավալվել են. արդեն հողօգտագործող տնտեսություններին է հանձնվել մի քանի հարյուր հեկտար աղազերծված հողատարածություն, որի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 15—16 ցենտներ հացահատիկ և 30—40 ցենտներ առվույտ։

Աղակալած հողատարածությունների լվացումն ու ոռոգումը հիմնականում կատարվում են ստորերկրյա ջրերով, որոնցով, ինչպես հայտնի է, Արարատյան հարթավայրը բավական հարուստ է։ Ստորերկրյա ջրերի օգտագործման համար կառուցվում են խոր հորեր, որոնք սարքավորվում են էլեկտրական հատուկ խորքային պոմպերով։ Նախատեսվում է առաջիկայում ծավալել այդ աշխատանքը։

Նշված հարցերը հիմնականում վերաբերում էին ջրատնտեսական օբյեկտների կառուցմանը, որը սակայն ինքնանպատակ չէ։ Գյուղատնտեսության զարգացման համար դա միայն գործերի սկիզբն է, իսկ գլխավորը՝ ջրօգտագործումն է, որը և որոշում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բախտը։ Գյուղական արտադրական վարչություններում և ջրօգտագործող շատ տնտեսություններում չկան հատուկ աշխատողներ և գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգումը կատարվում է միայն ցերեկվա մի քանի ժամերին, առանց հսկողության. համարյա չեն օգտագործվում ջրման առաջավոր մեթոդները, որի պատճառով ջուրը ռացիոնալ չի օգտագործվում և հաճախ մեծ գերածախս է լինում։

Անհրաժեշտ է, ոռոգելի հողատարածություններ ունեցող վարչություններն ու տնտեսությունները ունենան բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթությամբ մելիորատորներ, ջրվորների հատուկ բրիգադներ և նրանց

վարձատրության համար մշակվեն հատուկ պայմաններ, առանձնապես գիշերային ջրման համար։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի 1966 թ. մայիսյան պլենումի որոշումները ջրատնտեսական շինարարության ուղղությամբ անշեղորեն կատարելու համար անհրաժեշտ գումարներ, շինանյութեր և մեխանիզմներ են հատկացվում։ Պետք է ճիշտ պլանավորել և կազմակերպել աշխատանքները, օբյեկտները կառուցել ժամանակին ու որակով, հատուկ ուշադրություն նվիրել ոռոգման, չորացման և ջրարբիացման ցանցերի ժամանակին շահագործմանը, խնայողաբար և արդյունավետ օգտագործել թանկարժեք ջուրը՝ կյանքի ամենազոր աղբյուրը։

Մոտ կես դար առաջ Վ. Ի. Լենինը Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի լեռնականների հանրապետությունների կոմունիստ ընկերներին գրած իր նամակում ընդգծում էր. Ջանալ անհապաղ բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ...

Սովետական կառավարությունը կենսագործելով Լենինի պատգամը, հսկայական միջոցներ է հատկացրել ու հատկացնում էլեկտրիֆիկացման ու ոռոգման գործին, որի շնորհիվ հիմնովին վերափոխվել է մեր գյուղի տեսքը, կոլտնտեսային գյուղացու կյանքը։ Անապատներն ու ղռերը վերածվել են ծաղկափթիթ այգիների, բերքառատ դաշտերի։ Անհետացել են խարխուլ, գետնափոր տներով գյուղերը. դրանց փոխարեն կառուցվել են մեկ, երկհարկանի քարաշեն տներով գյուղեր, որոնք աչքի են ընկնում իրենց դպրոցներով, կուլտուրայի պալատներով, ակումբներով, հիվանդանոցներով։ Անցյալի աղքատության ու անկուլտուրականությանը փոխարինել է ունևոր, կուլտուրական, երջանիկ կյանքը։

Մեր երկրի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում սոցիալիստական մրցություն է ծավալվել Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակն արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։ Սովետական Հայաստանի ջրային տնտեսության բնագավառի աշխատողները, բարձր պահած սոցիալիստական մրցության դրոշը, իրենց բոլոր ջանքերը կգործադրեն այդ նշանակալից տարեթիվն արժանավայել դիմավորելու համար։

# ՌԵՖՈՐՄԸ ՃԱՆԱՊԱՐՀ Է ՀԱՐԹՈՒՄ

**ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ Ն. Հ.**

Լենինականի գուլպայի ֆաբրիկայի դիրեկտոր

Ավելի քան մեկուկես տարի է, ինչ Լենինականի գուլպայի ֆաբրիկան աշխատում է պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմով։

Այժմ, երբ հանրագումարի են բերված առաջին արդյունքները, կարելի է անվարան ասել, որ տնտեսավարման նոր պայմաններում արդյունքները գոհացուցիչ են։ Անցյալ տարի, օրինակ, աշխատանքի և արտադրության կազմակերպումը բարելավելու, ոչ արտադրածախսերը կրճատելու, նյութական և աշխատանքային ռեսուրսները տնտեսելու շնորհիվ, ֆաբրիկայի կոլեկտիվը պլանից դուրս թողարկեց մոտ մեկուկես միլիոն ռուբլու արտադրանք. նկատելիորեն աճեց արտադրանքի իրացման ծավալը, տնտեսվեց մոտ 143 հազար ռուբլի։

Հնգամյակի երկրորդ տարին, իրավամբ, ֆաբրիկայի համար նոր տեխնիկայով վերազինվելու շրջան հանդիսացավ։ Արտադրության շահերը պահանջում էին բոլոր միջոցները գործադրել՝ սպառողներին տալու նոր և բարձրորակ գուլպա-նասկեղեն։ Հարկ եղավ արտադրությունից հանել ֆիզիկապես ու բարոյապես մաշված ավելի քան 350 մեքենա-սարքավորում։

Մեքենայական պարկի փոխարինման և նոր արտադրատեսակների թողարկման նախաձեռնությունը վերցրին գործող արտադրամասի կոմունիստները։ Միայն մեկ տարվա ընթացքում արտադրությունից հանվեցին ավելի քան 200 մեքենա, որոնց ընդհանուր կարողությունը կազմում էր մոտ 8 միլիոն զույգ գուլպա-նասկի։ Կարճ ժամանակամիջոցում անպետք մեքենա-սարքավորումները փոխարինվեցին նորերով, որոնք հնարավորություն ընձեռեցին արտադրելու երեխայի բամբակյա և էլաստիկ (ձգվող) նասկիներ, կիսագուլպաներ, կանացի ձգվող նախշավոր գուլպաներ և տղամարդու նասկիներ։ Աշխատանքի նոր պայմաններում հիմնական ցուցանիշն իրացված արտադրանքի ծավալն է, որի աճը, առաջին հերթին, պայմանավորված է արտադրանքի որակական ցուցանիշների բարձրացմամբ։ Իրավացի են առևտրական կազմակերպությունները, երբ գուլպայագործներից պահանջում են գեղեցիկ ու որակով գուլպա-նասկեղեն։ Իսկ արտադրանքի որակը պայմանավորված է աշխատանքի հստակ ռիթմով և որակյալ հումքով։

Ռեֆորմի հետ միասին անընդհատ ամրապնդվում է ֆաբրիկայի տնտեսական բազան։ Ավարտվում են գործող արտադրամասը տնտհաշվարկի անցնելու

նախապատրաստական աշխատանքները։ Պլանավորված է յուրաքանչյուր տեղամասի արտադրանքը, հաշվարկված պլանի կատարողականը՝ յուրաքանչյուր բրիգադայի համար։ Մեծ բարեփոխումներ են կատարվել նաև կոտոն արտադրամասի մեքենայական պարկում։ Արտադրությունից հանված հին մեքենա-սարքավորումների փոխարեն այստեղ ներդրվեցին 5.001 մարկայի հինգ կոտոն և Ի—4—ԴԱ մարկայի 50 մեքենա։ ՌԻԿՖ մարկայի 2 մեքենաներ տեղակայվեցին նաև ներկման արտադրամասում։ ՍՄԿԿ անդամներ Ս. Մամաջանյանի, Ս. Էլբակյանի (գործող արտադրամասից), գլխավոր մեխբաժնից՝ Հ. Խանբեկյանի, Օ. Ֆրանգուլյանի, Ս. Զաքարյանի և ուրիշների ջանքերով ո՛չ միայն ժամանակին ավարտվեցին նոր մեքենա-սարքավորումների տեղակայման աշխատանքները, այլև պայմաններ ստեղծվեցին արագ յուրացնելու նոր տեխնիկան։ Սակայն նոր տեխնիկայի ներդրումը դեռևս ավարտված չէ, դժվարությամբ է հաղթահարվում օդափոխության սարքավորումների տեղադրման գործը։ Դա մասամբ բացատրվում է այն բանով, որ վերադաս պլանավորող մարմինները ժամանակին պլաններ չէին իջեցրել, և հայտնի չէր, թե ով պետք է զբաղվեր այդ գործով։

Աշխատանքի և մեքենա-սարքավորումների արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջադիմության, բանվորների աշխատանքի թեթևացման համար արժանահիշատակ գործ են կատարել ֆաբրիկայի մոտ 250 ռացիոնալիզատորներ ու նորարարներ։ Ֆաբրիկայի գյուտարարների կոլեկտիվը ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների նորարարների շրջանում ծավալված մրցության մեջ միշտ հաղթել է և արժանացել մրցանակների։ Ձեռնարկությունում ճանաչված ռացիոնալիզատորներ են Վ. Դավթյանը, Ա. Շիլաջյանը, Հ. Խանբեկյանը, Ֆ. Սահակյանը, իսկ գլխավոր մեխանիկ Ա. Հարությունյանը վերջերս արժանացավ Հայկական ՍՍՀ վաստակավոր ռացիոնալիզատորի կոչման։ Երկար ժամանակ կոտոն արտադրամասի Ի—4—ԴԱ մեքենաների կարգավորման ժամանակ օղակները թափվում էին, որն առաջ էր բերում գերնորմատիվ կտրվածքներ, դժվարացնում գործողի աշխատանքը։ Այդ բանն անհանգստացնում էր գործամասի մարդկանց։ Անվանի ռացիոնալիզատորներ, կոմունիստներ Ա. Գրիգորյանի, Ս. Մամաջանյանի և Ս. Մխիթարյանի առաջարկությունը ո՛չ միայն կիրառվեց մեր ֆաբրիկայում, այլև ներդրվեց հանրապետության սահմաններից դուրս գտնվող նույնատիպ ձեռնարկություններում։

Ռեֆորմի կիրառման համար անհրաժեշտ էին գործիմաց, հմուտ կադրեր։ Արտադրության տեխնոլոգիական պրոցեսները կարգավորելու նպատակով տեղում ստեղծվեց դիսպետչերական ծառայության ապարատ։ Զգալի գործ է կատարվել բանվորական կադրերի պատրաստման ու վերապատրաստման ուղղությամբ։ Միայն հնգամյակի երկրորդ տարում անհատական ու բրիգադային ուսուցման միջոցով պլանով նախատեսված 260-ի փոխարեն պատրաստվեցին ավելի քան 580 հոգի։ Մոտ 400 գուլպայագործներ ձեռք բերեցին երկրորդ մասնագիտությունը։ Արտադրության մեջ ներդրվեցին առաջավորների փորձն ու մեթոդները, որը մեծ չափով նպաստեց պլանային առաջադրանքների կատարմանը։ Գուլպայագործներ Հասմիկ Մելքոնյանի, Շուշիկ Տեր-Մկրտչյանի, կոտոնագործ Վալյա Կարապետյանի, ենթավարպետ Կառլեն Խնկոյանի, փաթաթող բանվորուհի Կալիպսե Խաքանյանի և ավագ ենթավարպետ Միհրան Քեշիշյանի աշխատանքի առաջավոր մեթոդներն ու նրանց հարուստ փորձը տարածվել է մեր հանրապետությունում։



Ֆաբրիկայում օրըստօրե ծավալվում է սոցիալիստական մրցությունը։ Ֆաբկոմը, գործամասային, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների ամեն ամիս ու եռամսյակ ամփոփում են ստանձնած պարտավորությունները, նյութական ու բարոյական խրախուսանքի արժանացնում հաղթողներին։ Այժմ ֆաբրիկան ունի գերազանց որակի 181 բրիգադա, ուր ընդգրկված են 1474 բանվոր, միմյանց հետ մրցում են 2804 գուլպայագործ, իսկ անհատական կարգով՝ 1662-ը։ Չորս բրիգադա արժանացել են կոմունիստականի վեհ կոչման, 115-ը պայքարում են այդ կոչման համար։ Անցած տարի ձեռնարկությունը նվաճեց ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Գերագույն սովետի, Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի հոբելյանական հուշադրոշը։

Ֆաբրիկայի ինժեներա-տեխնիկական անձնակազմի և տեխնիկական վերահսկողության բաժնի գլխավոր հոգսը վերջին մեկ ու կես տարում, թողարկվող արտադրանքի որակի բարելավումն է։ Ֆաբրիկայում թողարկվող 34 ապրանքների զգալի մասը չի ապահովում առաջին տեսակը։ Մինչև այժմ դասավորող գործամաս մուտք եղած արտադրանքի գրեթե 1,5 տոկոսը խոտան է, որն անդրադառնում է աշխատանքի շահութաբերության վրա։ Տեղամասի պետերը, վարպետ-ենթավարպետները դեռևս հարկ եղած պատասխանատվություն չեն կրում արտադրանքի որակի համար։ Արտադրանքի վրա զգալի չափով անդրադառնում է նաև անորակ հումքը։ Բամբակյա թելը, օրինակ, հիմնականում մատակարարում է Լենինականի Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկան։ Այն հնարավոր չէ օգտագործել առանց վերափաթաթման։ Ընդհանուր հաշվով տարեկան խոտանվում է մոտ 33 տոննա թել։

Ռեֆորմին անցնելուց հետո հսկայական ջանքեր գործադրվեցին հումքի և օժանդակ նյութերի մատակարարումը կանոնավորելու համար։ Միայն գործող արտադրամասը, հատկապես ասեղն ու ասեղատարրերը ժամանակին չապահովելու պատճառով տարեկան տալիս էր 170 հազար մեքենա-ժամ պարապուրդ— դա հավասար է նրան, որ գործամասի առաջին ու երկրորդ հերթը երկու շաբաթ չգործեն։ Նոր, ժամանակակից մեքենա-սարքավորումների տեղադրման շնորհիվ վերջին մեկուկես տարում ավելի քան 10 նոր արտադրատեսակ առաքվեց սպառողներին։

Արտադրությունը լավ հիմքերի վրա դնելու, հումքը և օժանդակ նյութերը խնայողաբար օգտագործելու, ռիթմիկ աշխատանքն ապահովելու հետ մեկտեղ, հստակ կազմակերպվեց հաշվառման ու հաշվետվության գործը։ Եվ կոլեկտիվի ջանքերը զուր չանցան։ Այդ ուղղությամբ, հատկապես, լավ օրինակ տվեցին կոտոնագործները։ Այս տեղամասում, որպես կանոն, հումքը կենտրոնական պահեստից առաքվում է լիմիտային քարտերի միջոցով և բաց թողնվում արտադրություն նույնպես հատուկ քարտերով, ուր հաշվեգրվում են գործող բանվորի թողարկած արտադրանքի մնացուկները։ Յուրաքանչյուր մեքենայի թելի օրական նորման հերթափոխային վարպետը հաշվի է առնում առանձին մատյանում, իսկ պատրաստի արտադրանքի հաշվառումը կատարվում է անձնագրերի և հերթային մատյանների միջոցով։ Աշխատանքի վերջում արդյունքները համեմատվում են պահեստի մատյանի հետ և հանձնվում հաշվապահություն։ Այսպիսով, բոլոր արտադրապրոցեսները խիստ հսկողության են ենթարկվում, որը մոբիլիզացնում է ո՛չ միայն կոլեկտիվի ուժերը, այլև բարձրացնում նյութական արտադրության ոլորտում զբաղված բանվորների պատասխանատվությունը։ Երբ կոտոն տեղամասում ամփոփվում էին նոր մեթոդի արդյունքները, պարզ դարձավ, որ միայն մեկ տարվա ընթացքում խնայվել է ավելի քան եր-

կու տոննա կապրոնի հումք և 3.500 ռուբլու օժանդակ նյութեր։ Ձեռք բերվածը կոտոնագործների համար սահման չէ։ Նրանք նոր ուղիներ են որոնում հաշվառման ու հաշվետվության դրվածքն ավելի բարելավելու համար։ Ներգրավվելով Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին ծավալված մրցության մեջ, նրանք նոր պարտավորություններ են ստանձնել և եռանդուն պայքար են մղում ավելի շատ կապրոնե և ձգվող հումք խնայելու, ասեղնապլատինային մասեր տնտեսելու, կորուստների ճանապարհը փակելու համար։

Հնգամյակի երրորդ տարվա հենց առաջին օրվանից գուլպայագործների կոլեկտիվը նոր ուժով ձեռնամուխ եղավ արտադրանքի որակի բարձրացմանը, հումքի և էլեկտրաէներգիայի խնայողությանը, հետևողականորեն իրականացնելով աշխատատար պրոցեսների կատարելագործման համար մշակված կոմպլեքսային միջոցառումները։

Ընթացիկ տնտեսական տարվա առաջին ամսվա պլանների հաջող կատարումը լավ երաշխիքներ տվեց։ Թողարկվեց 11 հազար զույգ գերպլանային արտադրանք, իսկ փետրվար ամսին այն հասավ 15 հազար ռուբլու։

Պլանավորման նոր սիստեմի արմատավորման շնորհիվ վերջին մեկուկես տարում անհամեմատ ամրապնդվեց ֆաբրիկայի տնտեսական բազան, ավելացան օգուտները, իջեցվեց ինքնարժեքը։ 1967 թ. ֆաբրիկան պլանից ավելի բնակչությանը տվեց 143 հազար զույգ գուլպա-նասկի՝ առաքման պլանը գերակատարելով 392 հազար ռուբլով։

Միայն ինքնարժեքից տնտեսվեց 143 հազար ռուբլի, իսկ գերպլանային օգուտները կազմեցին 107 հազար ռուբլի։ Ֆաբրիկան շահույթներից առանձնացված միջոցների հաշվին կարողացավ ստեղծել տնտեսական խթանման ֆոնդեր, արտադրության զարգացման համար՝ 51 հազար, նյութական խրախուսման՝ 218 և կուլտուր-կենցաղային ու բնակարանային շինարարության համար՝ 56 հազար ռուբլի։

Տնտեսական ռեֆորմը պայմաններ ստեղծեց առավել նպատակահարմար օգտագործելու արտադրության ընթացքում չօգտագործված ռեզերվները, խորացնելու և ամրապնդելու այդ նպատակով ձեռք բերված նվաճումները։ Այսօր հաջողությամբ շարունակվում է ձեռնարկության տեխնիկական վերազինումը։ Հաշվի են առնվել հնացած բոլոր մեքենա-սարքավորումները, որոնք աստիճանաբար իրենց տեղը զիջում են նորագույն մեքենաներին։

Ընթացիկ տարում ֆաբրիկայի արտադրանքի նմուշները Մոսկվայի տոնավաճառում արժանացան մասնագետների բարձր գնահատականին։ Միութենական հանրապետությունների ավելի քան 70 առևտրական կազմակերպություններ 43 միլիոն 900 հազար ռուբլու պայմանագրեր կնքեցին։ Հանրագումարի բերելով տոնավաճառի արդյունքները և հաշվի առնելով առևտրական կազմակերպությունների պահանջարկը, կոլեկտիվը համապատասխան արտադրանքի թողարկման պլան մշակեց, նշեց այն գլխավոր հարցերը, որոնք առաջիկայում պետք է գտնվեն ֆաբրիկայի տնտեսական, տեխնիկական ղեկավարության և կուսակցական կազմակերպության ուշադրության ոլորտում։ Ընդլայնվեց մանկական և կապրոնե նուրբ գուլպաների ասորտիմենտը։

Պետական առաջադրանքների կատարմանը զուգընթաց կոլեկտիվն առանձին ուշադրություն է նվիրում նոր տեխնիկայի ներդրման նախատեսված պլանի կատարմանը։ 1968 թ. կես տարվա ընթացքում տեղակայվել են 230 նոր մեքենա-սարքավորում։

Դեռևս շատ են բողոքներն ու ռեկլամացիաները։ Այժմ ֆաբրիկայում ջա-



նում են յուրաքանչյուր արտադրամասում ու բրիգադայում բարձրացնել պահանջկոտությունը, որ ամեն մեկը մտածի ո՛չ միայն արտադրական պլանի կատարման, այլև առաջին հերթին, որակի մասին։

Ընթացիկ տարվա անցած ամիսներին, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, զգալիորեն բարելավվեցին արտադրանքի և՛ քանակական, և՛ որակական ցուցանիշները։ Արտադրանքի իրացման ծավալն աճեց 0,8 տոկոսով, կամ 68 հազար 800 ռուբլով։ Ավելացավ գուլպա-նասկեղենի (մոտ 1,6 տոկոսով) ապրանքային արտադրության (5,7) և առաջին տեսակի (0,2) արտադրանքի ծավալը։

Պլանավորման նոր պայմաններում ֆաբրիկայի ինժեներա-տեխնիկական աշխատողներն անհրաժեշտ ուսումնասիրություններ են կատարում գերնորմատիվային մնացորդների կրճատման, մատակարարման գործի հետագա բարելավման համար։

Անելիքները, սակայն, առջևում են։ Տնտեսական ռեֆորմի իրականացման համար կատարվածը մեծ գործի սկիզբն է միայն։ Ֆաբրիկայում դեռևս չի կիրառվում ներարտադրամասային տնտհաշվարկը, որը պլանավորման նոր սիստեմի կենսական պահանջներից է։ Այդ ուղղությամբ են այժմ աշխատում ձեռնարկության գլխավոր տնտեսագետի և պլանային բաժինների մասնագետները։ Նրանք հանգամանորեն ուսումնասիրում են կոտոն, գործող և դասավորող արտադրամասերի տնտեսական գործունեությունը։ Այդ նպատակով ֆաբրիկայի մի խումբ աշխատողներ վերջերս եղան Ռիգայի «Ավրորա», Տուշինոյի և Լենինգրադի գուլպայի ֆաբրիկաներում, ուսումնասիրեցին առաջավոր այդ ձեռնարկություններում ներարտադրամասային տնտհաշվարկի կիրառման հետ կապված պրոբլեմները։

Մինչև 1968 թ. վերջը ֆաբրիկան աշխատելու է տնտեսական հաշվարկի սկզբունքով։ Գուլպայագործները ձգտում են ընթացիկ տարում Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50 ամյակի առթիվ՝ պլանից ավելի թողարկել 450 հազար ռուբլու արտադրանք, մեկ տոկոսով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Նոր պայմաններում կոլեկտիվի հաջողություններն անկնրախ են։ Մնում է ամրապնդել դրանք, որքան հնարավոր է շատ պտուղներ քաղել ռեֆորմի ընձեռած հնարավորություններից։

## ՄԱՍՍԱՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

### ՍԱՌԱՖՅԱՆ ԱԶԱՏՈՒՀԻ

Գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության հանրապետական խորհրդի նախագահ

*Մեր երկրի գիտնականների ու կոնստրուկտորների ջանքերով ստեղծվում են բարձր արտադրողականություն ունեցող ագրեգատներ, ավտոմատ գծեր ու մեքենաներ, ավտոմատիկայի, հեռուստամեխանիկայի ու էլեկտրոնիկայի միջոցներ, ճշգրիտ սարքեր։ Այդ գործում որոշակի դեր են խաղում նաև մեր բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնք իրենց մտահղացումներով, գյուտերով ու ռացիոնալիզատորական առաջարկություններով նպաստում են արտադրամիջոցների կատարելագործմանը։*

*Մասսաների ստեղծագործությունը, գյուտարարությունն ու ռացիոնալիզացիան միշտ եղել են կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Սովետական կարգերի ստեղծման առաջին տարիներին Լենինն զբաղեցրել է գյուտարարության հարցը։ Նկատի ունենալով երիտասարդ սովետական երկրի՝ տեխնիկան գյուտարարության միջոցով զարգացնելու հեռանկարները, 1919 թ. հունիսի 30-ին նա ստորագրել է գյուտարարության մասին առաջին դեկրետը։ Դրանից հետո կուսակցությունը բազմիցս անդրադարձել է դրան և գիտության, առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացման հարցերը կապել մասսաների ստեղծագործության հետ։*

*Տասը տարի առաջ, ՍՄԿԿ Կենտկոմը խնդիր դրեց՝ գյուտարար և ռացիոնալիզատոր բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական նախաձեռնությունն ուղղել ժողովրդական տնտեսության մեջ ռեզերվներ հայտնաբերելու, տեխնիկան, արտադրության տեխնոլոգիան ու աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու նպատակին։*

*Գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերության կազմակերպությունները, առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով, պայքարել են դրանց կենսագործման համար։ Եվ կարելի է ասել, որ այդ նպատակով զգալի աշխատանք է կատարվել։ Միայն վերջին չորս տարում (1963—1967 թթ.) ժողովրդական տնտեսության մեջ ավելի քան մեկ միլիոն գյուտերից և ռացիոնալիզատորական առաջարկություններից տնտեսվել է 8 միլիարդ ռուբլուց ավելի։*

*Ռացիոնալիզատորական շարժումը ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Սովետական Հայաստանում գնալով լայն ծավալ է ստանում։ Հայաստանի առաջավոր ձեռնարկություններից մեկի, Լենինի անվան էլկտրամեքենաշինական գործարանի նորարարները հանդես եկան նոր, հայրենասիրական նախաձեռնությամբ։ Նրանք կոչ արին՝ հնգամյակի և մեծ Հոկտեմբերի հիսնամյակին նվիրված ռացիոնալիզատորական ֆոնդեր ստեղծել և պարտավորվեցին գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից տնտեսել 3 միլիոն ռուբլի։*



*Էլեկտրամեքենաշինարարների կոչին արձագանքեցին շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Նրանք խոստացան հնգամյակի ընթացքում տնտեսել 65, իսկ մեծ Հոկտեմբերի հիսնամյակի պատվին՝ 20 մլն. ռ.։ Ստանձնած պարտավորությունների կատարման համար հանրապետությունում լայն ծավալ ստացավ սոցմրցումը, որում ընդգրկվեցին ձեռնարկությունների 80 տոկոսից ավելին և մոտ 450 ստեղծագործական բրիգադ։ Ըստ որում, 3000-ից ավելի նորարարներ վերցրին անհատական պարտավորություններ։*

*Հանրապետության նորարարները պարտավորվեցին ներդնել 40 գյուտ, խնայել 5 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 8.000 տոննա սև ու գունավոր մետաղ. այդ պարտավորությունները նրանք պատվով կատարեցին (տնտեսվել է ավելի քան 10 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 15.000 տոննա սև և գունավոր մետաղ, արմատավորվել են 87 գյուտ, իսկ վերցրած 26 միլիոն ռուբլու փոխարեն տնտեսվել է մոտ 30 միլիոն ռուբլի), միայն 1968 թ. առաջին կիսամյակում, արտադրության մեջ 7.000 առաջարկությունների արմատավորման շնորհիվ տնտեսվել է 8.514 հազար ռուբլի։*

*Այս տեսակետից ուշագրավ է Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, ուր մելամինի տեխնոլոգիայի կատարելագործմամբ տնտեսվել է 108 տոննա դիցիանդիամիդ, 10 տոննա կալցիում քլոր և 41 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Քանաքեռի ալյումինի գործարանում փայլաթիթեղի գլանման արտադրամասում սողիչների արտադրության նոր տեխնոլոգիայի կիրառմամբ տարեկան տնտեսվեց կես տոննա բրոնզ։ Կիրովականի քիմիական մանրաթելերի գործարանում միայն երկու առաջարկությունների արմատավորումից տնտեսվեց 7,5 տոննա ացետիլ-ցելյուլոզ, 18 տոննա ացետոն, 3 հազար քառակուսի մետր չիթ, 679 կիլոգրամ ներկ և 5 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։*

*Հայաստանում զգալիորեն աճել է նորարարների թիվը, ավելացել են ներդրված առաջարկությունները, մեծացել դրանցից ստացվող տնտեսական արդյունքը։ Այսպես, 1966—1967 թթ. 27.674 առաջարկությունից տնտեսվել է 34 մլն. 120 հազար ռուբլի։ Արտադրությունում ներդրված գյուտերն ու ռացիոնալիզատորական առաջարկությունները նպաստել են ժողովրդական տնտեսության զարգացմանը։ Ներկա էտապում ժողովրդական տնտեսության համար խոշոր նշանակություն ունի քիմիական արդյունաբերության զարգացումը։ Երկու տարվա ընթացքում այդ բնագավառում ներդրվել են մոտ 4 հազար առաջարկություն, որոնցից ստացված տնտեսական օգուտը 8 միլիոն 440 հազար ռուբլի է։ Արժեքավոր առաջարկություններ են արել Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի նորարարներ Վ. Ազարյանը, Կ. Խուդոյանը և ուրիշներ։ Նրանց առաջարկած սառցային քացախաթթվի անջատման նոր եղանակը գործարանին տարեկան կտա 50 հազար ռուբլու օգուտ, կխնայվի հումքը, կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։ Կիրովի անվան քիմիական կոմբինատի նորարարներ Էմմա Մկրտչյանը, Գ. Սարգսյանը առաջարկել են գրաֆիտային էլեկտրոդների ներծծման համար օգտագործվող կտավհատի յուղը փոխարինել կանաչ յուղով, որի շնորհիվ ձեռնարկությունը տարեկան կստանա մոտ 54 հազար ռուբլու օգուտ։*

*Արագ տեմպերով է զարգանում Հայաստանի մեքենաշինությունը։ Այս գործում իրենց ավանդն ունեն նորարարները։ Երևանի ամրակների գործարանի մի խումբ գյուտարարներ ստեղծել են ավտոմատացված նոր տիպի ամրակ, որի օգտագործմամբ երկրի ժողովրդական տնտեսությունը տարեկան կտնտեսի 2 միլիոն ռուբլուց ավելի։ Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունի Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ինժեներներ Կ. Տեր-Հակոբյանի, Ն. Կարապետյանի և ուրիշների ստեղծած նոր հաստոցը, որի սերիական արտադրությունն սկսված է։ Այդ հաստոցները կօգտագործվեն առանցքակալային, ավտոմոբիլային, հաստոցաշինական, տեքստիլ մեքենաշինության, գյուղատնտեսական մեքենաշինության և արդյունաբերության այլ ձեռնարկություններում։ Մետաղահատ հաստոցների փորձնական*

գիտահետազոտական ինստիտուտի անդրկովկասյան ֆիլիալի ինժեներ Ս. Կանդայանի, Կ. Մնջոյանի և ուրիշների առաջարկած մրրկապատճենահան նոր հաստոցն արդեն պատենտավորված է Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում: Նման օրինակները շատ են:

Զգալի հաջողությունների են հասել թեթև արդյունաբերության ձեռնարկությունների նորարարները (աշխատողների 80 տոկոսից ավելին կանայք են): Նրանք 1966—1967 թթ. ներդրել են 560 առաջարկություն, որից ստացվել է 5 միլիոն 300 հազար ռուբլու օգուտ: Թեթև արդյունաբերության ձեռնարկություններում ներդրվել է ընդունված առաջարկությունների 92 տոկոսը: Միայն 1967 թ. արմատավորված են ժողովրդատնտեսական նշանակություն ունեցող 35 գյուտ: Օրինակ, կոշիկի «Մասիս» ֆիրմայում կոշիկները պատրաստում են նոր սոսնձով. այս գյուտի ներդրմամբ տնտեսվել է 150 հազար ռուբլի (հեղինակներն են՝ Գ. Երոյանը, Գ. Հարությունյանը, Յու. Թումանյանը և ուրիշներ):

Շինարարության և շինանյութերի արդյունաբերության բնագավառի մոտ 1.000 նորարարներ երկու տարում արմատավորել են 2.325 առաջարկություն, որոնցից ստացված արդյունքը հասնում է 4 միլիոն 36 հազար ռուբլու: 1966 թ., նախորդ տարվա համեմատությամբ, շինարարության մինիստրության ռացիոնալիզատորների թիվն ավելացել է 88 տոկոսով, ստացված առաջարկություններինը՝ 33, ներդրվածներինը՝ 28, իսկ ստացված արդյունքը՝ 20 տոկոսով: Շինանյութերի մինիստրության ձեռնարկություններում նույնպես բարձրացել են ռացիոնալիզացիայի ցուցանիշները:

Այստեղ պատշաճ ուշադրություն է նվիրվում արժեքավոր առաջարկությունների արմատավորմանը: Օրինակ, Ն. Նշանյանի առաջարկով ստեղծված ցանցային կոնտեյները գործի դնելով շինարարության մեջ, անցյալ տարի միայն Արթիկտուֆից տեղափոխվեց մոտ 12 հազար խորանարդ մետր քար և տնտեսվեց 24 հազար ռուբլի: Եթե այս գյուտն օգտագործվի հանրապետության բոլոր քարհանքերում, ապա ժողովրդական տնտեսությունը տարեկան կստանա 600 հազար ռուբլու օգուտ:

Որոշ աշխատանք է կատարվել նաև գյուղատնտեսության բնագավառում: Մեր հանրապետությունում կենսական կարևոր նշանակություն ունի աղուտ հողերի յուրացումը: Հողագործության ինստիտուտի գիտաշխատողներ Վերգինե Աղաբաբյանի, Արմենուհի Ռաֆայելյանի և Կ. Հովհաննիսյանի առաջարկով աստիճանական թթվեցման միջոցով հողերն աղազերծվում են: Արդեն աղազերծվել ու օգտագործվում է 2.000 հեկտար հողատարածություն: Իսկ Ջրառատի սովխոզի գլխավոր մեխանիկ Ս. Մաթևոսյանի առաջարկի իրագործմամբ, ինքնագնաց խոտհնձող կոմբայնն աշխատում է նաև լեռնային շրջաններում՝ թեք լանջերի վրա: Շուտով Ռուստավի գյուղատնտեսական մեքենաների գործարանում կսկսեն այդ կոմբայնի սերիական արտադրությունը:

Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման ուղղությամբ ձեռք բերված հաջողություններն անժխտելի են. սակայն կան նաև թերություններ: Այսպես, մի շարք ձեռնարկություններում նկատվում են առաջարկությունների քննարկման, ներդրման և վճարման ձգձգման դեպքեր, իսկ ստացված առաջարկությունների միայն մեկ երրորդն է հաշվարկվում: Որոշ տնտեսվարներ երբեմն մոռանում են, որ ձեռնարկությունների շահույթի կարևոր գործոններից մեկը ռացիոնալիզացիան է, իսկ այդ գործի զարգացման միջոցներից մեկը՝ նորարարների ինչպես նյութական, այնպես և բարոյական շահագրգռվածության ապահովումը: Մինչդեռ առանձին ձեռնարկություններում այս հարցը աչքաթող է արվում:

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում հաջողությամբ գործում են հասարակական կոնստրուկտորական և տեխնոլոգիական 124, տեխնիկական ինֆորմացիայի 48, հասարակական պատենտային 17 բյուրոներ, ռացիոնալիզատորական առաջարկների ներդրման 66 հասարակական արտադրամասեր և բրիգադներ, տնտեսական անալիզի 215 բյուրոներ ու խմբակներ, 492 ստեղծագործական կոմպլեքս բրիգա-



դաներ, արտադրանքի որակի և աշխատանքի գիտական կազմակերպման համալսարաններ: Հասարակական հիմունքներով գործող այդ կազմակերպություններում ընդգրկված են մոտ 7.200 ինժեներներ, տեխնիկներ, առաջավոր բանվորներ և գիտաշխատողներ: Նրանց համատեղ ջանքերով միայն անցյալ տարի մշակվել և արմատավորվել են 689 առաջարկություն, որից ստացված տնտեսական օգուտը հասնում է մոտ մեկ միլիոն 265 հազար ռուբլու:

Արտադրության երիտասարդ աշխատողներին ռացիոնալիզացիայի գործում ներգրավելու նպատակով հանրապետական խորհուրդն ու ՀԼԿԵՄ Կենտկոմը բազմաթիվ միջոցառումներ են իրականացրել: Սիստեմատիկաբար կազմակերպվել են թեմատիկ կոնկուրսներ և ստուգատեսներ, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների, կոմերիտական ակտիվի համար դասախոսություններ են կարդացվել ռացիոնալիզատորական շարժման ծավալման և նորարարների իրավունքների պաշտպանության մասին. գործնական օգնություն է ցույց տրվել նորարարներին:

Հանրապետական խորհուրդը տեխնիկայի տան հետ միասին կազմակերպել է մշտական գործող կոնսուլտացիոն խումբ, որի ղեկավարն է հանրապետության վաստակավոր գյուտարար Հ. Մալխասյանը: Շաբաթվա բոլոր օրերին հերթապահում են կոնսուլտանտները. նրանք մշակում և ձևակերպում են առաջարկվող գյուտերի հայտերը:

Արդյունաբերության կառավարման՝ ճյուղային սկզբունքով վերակառուցումը, արտադրության զարգացման գործում տնտեսական լծակների դերի բարձրացումը բարենպաստ պայմաններ են ստեղծում գիտության և տեխնիկայի նվաճումների, գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման համար: Այս պայմաններում շատ կարևոր է նորարարական աշխատանքի արդյունավետության բարձրացումը, այսինքն՝ ներդրված մեկ առաջարկից տնտեսվող գումարի ավելացումը: Եթե 1965 թ. ամեն մի առաջարկության ներդրմամբ տնտեսվում էր 1.335 ռուբլի, ապա 1967 թ. այն հասավ 2.544-ի. սա, անկասկած, մեծ գումար է և ձեռնարկությունների համար շահույթի աղբյուր: Սակայն այս գումարը մեծացնելու համար անհրաժեշտ է լուծել արտադրության մեքենայացման պրոբլեմները՝ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ճիշտ ուղղություն տալ նորարարների ստեղծագործությանը: Այդ գործը բարձր հիմքերի վրա դնելու նախապայմաններից մեկը գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքների թեմատիկ պլանավորումն է, որի նկատմամբ ձեռնարկությունների տնտեսական և տեխնիկական, ինչպես և գերատեսչությունների ղեկավարները, որոշ դեպքերում, ձևական վերաբերմունք են ցուցաբերում: Դրա հետևանքով, նույնիսկ առաջավոր ձեռնարկություններում, նշված թեմաներից մշակվում է մեկ երրորդից ոչ ավելին, իսկ թեմատիկ պլանի օգտագործումից ստացվող տնտեսումը կազմում է առաջարկների ներդրումից ստացվող ընդհանուր արդյունքի չնչին մասը: Պետք է ասել, որ արդյունաբերական շատ ձեռնարկություններում դեռևս անբավարար է տեխնիկական ինֆորմացիան, որի հետևանքով գործարանում արմատավորված առաջարկությունը չի դառնում բոլորի սեփականությունը:

Ռացիոնալիզացիան կազմակերպելու հիմնական ցուցանիշներից մեկը մասսայականությունն է: Որքան շատ առաջավոր բանվորներ և ինժեներատեխնիկական աշխատողներ մասնակցեն ստեղծագործական աշխատանքներին, այնքան շատ առաջարկություններ կներդրվեն արտադրությունում: Իսկ մեզ մոտ արդյունաբերական ձեռնարկություններում 15 աշխատողից միայն մեկն է ռացիոնալիզատոր, շինարարությունում՝ 100-ից մեկը, գյուղատնտեսությունում՝ 5.400-ից մեկը: Քիչ են նաև ընդունվող և ներդրվող առաջարկները: Միութենական միջին տվյալներով, արտադրության աշխատողների հազար հոգուն ընկնում է 175 ներդրված առաջարկություն, իսկ մեր հանրապետությունում՝ ընդամենը 75:

Արտադրության նորարարների դերն ու նշանակությունն ավելի են բարձրանում այժմ, երբ արդյունաբերական ձեռնարկություններն անցել ու անցնում են տնտեսավարման նոր սիստեմին: Անհրաժեշտ է լավ օգտագործել

ռացիոնալիզատորական միտքը արտադրության կատարելագործման ասպարեզում։ Սակայն մի շարք ձեռնարկություններում պատշաճ չեն օգտագործվում այդ հնարավորությունները։ 1966 թ. հանրապետության նոր տեխնիկայի ներդրման պլանով նախատեսված 196 միջոցառումից միայն 22-ն էր գյուտ, իսկ 1967-ին՝ 18-ը։

Այստեղ տեղին է նշել, որ պետպլանի գիտության ու տեխնիկայի բաժինը ևս այս կարևոր հարցն աչքաթող է արել։ Վիճակը բարվոք չէ նաև գիտահետազոտական ինստիտուտներում։ Կիրովականի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտում վերջին 3 տարում մշակված 23 թեմաներից և ոչ մեկը գյուտ չէ։ Իսկ Կիրովականի հատուկ կոնստրուկտորական բյուրոյում 3 տարում ավարտված 28 թեմաներից ձևակերպվել են 15 հայտ (ենթադրվող գյուտի համար), որոնցից 14-ը մերժվել են։

Ուշադրություն չի նվիրվում նաև գյուտերի հայտերի ձևակերպմանը։ Փաստերը վկայում են, որ մեզ մոտ կան շատ արժեքավոր, բարձր տեխնիկայով մշակվող, նույնիսկ համաշխարհային հետաքրքրություն ներկայացնող թեմաներ, սակայն դրանք չեն ձևակերպվում որպես գյուտ կամ երբեմն էլ ձևակերպվում են անբավարար տեխնիկական մակարդակով, որի հետևանքով մերժվում ու կորցնում են առաջնության իրավունքը։

Հանրապետությունում անբավարար է նաև պատենտային-լիցենզիոն գործի ընթացքը. 110 գիտահետազոտական և նախագծա-կոնստրուկտորական կազմակերպություններից պատենտային ծառայություն է ստեղծված 18-ում, իսկ 65 ձեռնարկություններից, որոնք իրենց արտադրանքն արտահանում են 70 արտասահմանյան երկրներ, միայն 8-ում։

Կուսակցության ծրագրում նշված է, որ գյուտարարության և ռացիոնալիզացիայի մասսայականացման գործում առաջնակարգ կարևորություն ունի նորարարների նյութական և բարոյական խթանումը։ Այդ գործում բարոյական նշանակություն ունեն Գերագույն սովետի նախագահության հրամանագրերը, հանրապետության «վաստակավոր գյուտարար» և «ռացիոնալիզատոր» կոչումներ շնորհելու մասին։ Այս կոչմանն են արժանացել հանրապետության 6 գյուտարար և 172 ռացիոնալիզատոր։

Չնայած ձեռնարկած այս միջոցներին, դեռևս անբավարար է նորարարների նյութական խրախուսման գործը։ Ներդրված առաջարկությունների հաշվարկը, միջին թվով, կազմում է 48 տոկոս, իսկ մնացած 52 տոկոսի հեղինակները վարձատրվում են 10—15 ռուբլուց ոչ ավելի։

Միայն 1967 թ. հանրապետության ժողովրդական տնտեսությունն առաջարկությունների արմատավորումից ստացել է 17 միլիոն 217 հազար ռուբլի, իսկ այդ նպատակով կատարված բոլոր ծախսերը կազմում են ընդամենը 840 հազար ռուբլի կամ ստացվող արդյունքի միայն 6 տոկոսը։

Շատ տեղերում, նույնիսկ տարիներով, չեն վճարում առանձին նորարարների հասանելիքը։ Օրինակ, 1966 թ. հունվարի 1-ից Երևանի էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի գործարանը ներդրել է Ա. Դավիդովի բարձր լարման ՈՒՎՆ—80 տիպի սարքի ցուցանիշների վերաբերյալ առաջարկությունը, որը տարեկան տալիս է 10 հազար ռուբլու խնայողություն, այնինչ հեղինակը մինչև օրս չի վարձատրվել։

Վերջերս տեղի ունեցած գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության երրորդ համագումարը նշեց, որ գյուտարարների և ռացիոնալիզատորների խնդիրն է՝ նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ստեղծումն ու արմատավորումը արդյունաբերության մեջ, արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, պայքարն աշխատանքի արտադրողականության բարձրացման, նյութական, աշխատանքային և դրամական միջոցների խնայման, արտադրանքի որակի բարձրացման համար։

Հետևելով լենինգրադցիների և մոսկվացիների օրինակին, մեր հանրապետության նորարարները Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի կապակցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կկատարեն։

---

# ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՈՐԻՍԻ, ՍԻՍԻԱՆԻ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՄ

**ԱՍԱՏՐՅԱՆ Ա. Ս.**

Շահութաբերությունը կոլտնտեսությունների արտադրական գործունեության գլխավոր ցուցանիշն է։ Եթե նրանք գործում են շահութաբեր, նշանակում է ապահովում են սահմանված արտադրանքի ծավալը, պահպանում պլանային ինքնարժեքը, բարձրացնում բուսաբուծության և անասնաբուծության մթերքների որակը։ Շահութաբերության բարձրացումը կարևոր նշանակություն ունի կոլտնտեսային արտադրության անընդհատ զարգացման, սոցիալիստական կուտակումների ավելացման, տարեցտարի ընդլայնվող վերարտադրության համար։

Կոլտնտեսություններում արտադրաֆոնդերի գոյացման աղբյուրը հանրային տնտեսության կուտակումներն են։ Ոչ մի կոլտնտեսություն չի կարող իր արտադրաֆոնդերն ավելացնել առանց կուտակման ֆոնդերի ավելացման։ Իսկ դրանց ավելացումը սերտորեն պայմանավորված է կոլտնտեսային արտադրության շահութաբերությամբ։ Հետևաբար, յուրաքանչյուր կոլտնտեսության շահույթը կարևոր գործոն է՝ արտադրության մշտական ընդլայնման, ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Այդ իմաստով էլ յուրաքանչյուր կոլտնտեսության շահույթի աճով շահագրգռված է ինչպես կոլտնտեսությունը, այնպես էլ ողջ հասարակությունը։ Կոլտնտեսությունների շահութաբերությունը, բացի արտադրանքի ինքնարժեքի մակարդակից, մեծ չափով պայմանավորված է տնտեսության ապրանքային արտադրանքի մեծությամբ։ Որքան շատ է ապրանքային արտադրանքը, հատկապես վաճառքը պետությանը, այնքան շատ են տնտեսության դրամական միջոցները։

Ապրանքային արտադրանքի մեծությունը պայմանավորված է համախառն արտադրանքի մեծությամբ, իսկ յուրաքանչյուր կոլտնտեսության շահութաբերությունը՝ գնման և հանձնման գների մակարդակով ու ինքնարժեքի նկատմամբ դրա հարաբերակցությամբ։ Նույն ապրանքային արտադրանքի պայմաններում, որքան այդ հարաբերակցությունը ճիշտ լինի, այնքան նպաստավոր կլինի թե՛ տնտեսության և թե սպառող հասարակության ու ձեռնարկությունների համար։

Ինքնարժեքը սոցիալիստական ձեռնարկությունների արտադրական գործունեության կարևոր, ընդհանրացնող ցուցանիշ է։ Այն հնարավորություն է ընձեռում որոշելու շահութաբերությունը ինչպես ամբողջ տնտեսության մասշտաբով, այնպես էլ առանձին ճյուղերի, կուլտուրաների ու մթերքների համար։ Ինքնարժեքի ճիշտ հաշվարկումն օգնում է արտադրության մասնագիտացմանը, դրա ճյուղերի ռացիոնալ կառուցվածքի սահմանմանը և առավել շահութաբեր ձևերի ընդունմանը։

Գորիսի ու Սիսիանի շրջանների կոլտնտեսություններում մեր կատարած ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հացահատիկի արտադրությունը

1965—1966 թթ. շահութաբեր էր: Այդ հիմնականում բերքատվության բարձ-
րացման ու պետական գնման գների ավելացման արդյունք է: Բազմաթիվ կոլ-
տնտեսություններում, ուր հասկավոր կուլտուրաների մշակման գործում
բարձր է մեքենայացման մակարդակը և ցածր արտադրած մթերքի ինքնարժե-
քը, լավ եկամուտ ու շահույթ են ստանում: 1967 թ. Սիսիանի շրջանի Բռնակոթ
գյուղի կոլտնտեսությունն ստացավ 180, իսկ Գորիսի շրջանի Խնձորեսկինը՝ 192
հազար ռուբլի շահույթ:

Սիսիանի և Գորիսի շրջանների գյուղատնտեսական արտադրության առա-
ջատար ճյուղն անասնաբուծությունն է: Ուստի, ցածր ինքնարժեքով անասնա-
բուծական մթերքների արտադրությունը նպաստում է գյուղատնտեսության
արտադրության շահութաբերության բարձրացմանը: Մեր ուսումնասիրություն-
ները ցույց են տալիս, որ այն կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք
հարկ եղած ուշադրություն են նվիրում կերի կայուն բազա ստեղծելու, աշխա-
տատար պրոցեսները մեքենայացնելու, ինչպես նաև անասունների բտումը լավ
կազմակերպելու հարցերին, անասնաբուծությունից մեծ եկամուտ են ստա-
նում: Այսպես, 1967 թ. Սիսիանի շրջանի Սպանդարյանի կոլտնտեսությունը
կաթնարտադրությունից ստացել է 92 հազար ռուբլի եկամուտ, իսկ նույն հո-
ղակլիմայական պայմաններում գտնվող հարևան Անգեղակոթի կոլտնտեսու-
թյան վնասը կազմել է 56,3 հազար ռուբլի: Նույն թվականին Գորիսի շրջանի
Քարաշենի կոլտնտեսությունը տավարի մսի արտադրությունից շահույթ է ստա-
ցել 37,7 հազար ռուբլի, իսկ հարևան Կոռնիձորի կոլտնտեսության վնասը
կազմել է 48,9 հազար ռուբլի: Քարաշենի կոլտնտեսությունում մսի արտա-
դրության բարձր շահութաբերությունն արգասիք է նաև այն բանի, որ այստեղ
մեծ ուշադրություն է նվիրվում տավարի բտմանը: Այս տնտեսությունը յուրա-
քանչյուր ցենտներ մսից մոտ 20 ռուբլով ավելի եկամուտ է ստանում, քան
Կոռնիձորինը:

Կերի կայուն բազա ստեղծելու, ամառային արոտը լավ կազմակերպելու
և արդյունավետ անցկացնելու շնորհիվ Գորիսի և Սիսիանի շրջաններում
1966 թ., 1963 թ. համեմատությամբ, նկատելիորեն բարձրացել է տավարի մսի
շահութաբերությունը: Իհարկե, դրան որոշ չափով նպաստել է նաև մսի գնման
գների բարձրացումը:

Կոլտնտեսությունները զգալի շահույթ են ստանում ոչխարաբուծական
մթերքների արտադրությունից: Բրդի տակ դրված ոչխարի մսի յուրաքանչյուր
ցենտների հաշվով զուտ եկամուտը Սիսիանի շրջանի կոլտնտեսություններում
1962 թ. կազմել է 24, 1963-ին՝ 25, 1965-ին՝ 52 ռուբլի: Գորիսի շրջանի կոլ-
տնտեսություններում, համապատասխանաբար՝ 22, 34 և 59 ռուբլի:

Գյուղատնտեսական արտադրության ավելացման հետ մեկտեղ չափա-
զանց կարևոր նշանակություն ունի նաև դրանց որակի բարձրացումը: Հայտնի
է, որ որքան բարձր են արտադրանքի որակը, սպառողական հատկությունները,
այնքան այն ավելի լավ ու արագ է իրացվում, ենթարկվում արդյունաբերական
վերամշակման: Դրան հակառակ, ցածրորակ արտադրանքն իրացվում կամ
վերամշակվում է չափազանց դանդաղ ու վատ, նյութական զգալի վնասներ
հասցնում գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկություններին ու
առևտրական կազմակերպություններին: Սակայն սրանով միայն չի սպառ-
վում գյուղատնտեսական մթերքների ու հումքի որակի նշանակությունը: Մը-
թերքների ու հումքի որակի բարձրացումը հավասարազոր է դրանց քանակի
զգալի ավելացմանը: Բավական է նշել, որ եթե ուսումնասիրվող շրջանների
կոլտնտեսություններում կաթի յուղայնությունը բարձրացվի 0,1 տոկոսով, ա-
պա դրա շնորհիվ (ըստ հաշվարկային քաշի) կստացվի 2,500 ցենտներ կաթ
կամ կոլտնտեսությունների դրամական եկամուտները կավելանան 46 հազար
ռուբլով: Ավելի մեծ նշանակություն ունեն մյուս մթերքների ու հումքի որակի
բարձրացումը: Այս շրջանների կոլտնտեսությունները հսկայական լրացուցիչ
միջոցներ կարող են ստանալ բրդի ու բոժոժի թելի, ծխախոտի հումքի որակի,
անասունների գիրության բարձրացմամբ:

Արտադրանքի որակի բարձրացման համար պահանջվում են կազմակեր-
պական աշխատանք և աշխատանքային ու նյութական որոշ լրացուցիչ ծախ-



սումներ, որոնք պետք է մեծ հավելումով փոխհատուցվեն, այլապես տնտեսա-
պես նպատակահարմար չի լինի լրացուցիչ ծախսումներ կատարել և ջանքեր
գործադրել արտադրանքի որակի բարձրացման համար:

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որ
ինչպես արտադրության մեջ անմիջապես աշխատողները, այնպես էլ ղեկա-
վարներն ու մասնագետները մինչև վերջ շահագրգռված լինեն արտադրանքի
որակի բարձրացմամբ: Իսկ դրան հնարավոր է հասնել աշխատանքի վարձա-
տրությունն արտադրանքի որակի հետ անմիջական կախման մեջ դնելով:

Պետությունը կոլտնտեսությունների նյութական շահագրգռվածությունն
ապահովելու համար գյուղատնտեսական մթերքների ու հումքի գնման ու
հանձնման գները սահմանել է ըստ դրանց որակական հատկությունների, ապ-
րանքային տեսակների: Որքան բարձր լինի իրացվող արտադրանքի որակը,
այնքան բարձր կլինի դրա մեկ միավորի իրացման փաստացի գինը:

Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Սիսիանի և Գորիսի
շրջանների կոլտնտեսություններում լավ չեն օգտագործվում եկամուտների
ավելացման բոլոր հնարավորությունները: Բավական է նշել, որ 1965 թ.
պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունի մսի՝ 14,4, ոչխարի մսի՝
34,1 տոկոսը Սիսիանի շրջանի կոլտնտեսություններում և համապատաս-
խանաբար՝ 32,7, 18,1 տոկոսը Գորիսի շրջանի կոլտնտեսություններում,
միջակից ցածր են: Կամ՝ նույն թվականին պետությանը վաճառված ծխախոտի
հումքի մեկ ցենտների իրացման միջին փաստացի գինը Սիսիանի շրջանի
կոլտնտեսություններում կազմել է 191, Գորիսում՝ 136 ռուբլի, որն այդ ար-
տադրանքի միջակ որակի համար սահմանված գնի, համապատասխանաբար,
73 և 52 տոկոսն է:

Ինչպես տեսնում ենք, գյուղատնտեսական ցածրորակ արտադրանքի
հետևանքով կոլտնտեսություններն զգալի գումար են կորցնում:

Ուսումնասիրվող շրջանների առանձին կոլտնտեսություններում, որտեղ
ո՛չ միայն արտադրանքի քանակի, այլև որակի բարձրացման համար ստեղծվել
են նյութական շահագրգռվածության անհրաժեշտ պայմաններ. ստացված ար-
դյունքներն զգալի չափով բարձր են: Այսպես, 1967 թ. Գորիսի շրջանի Խնա-
ծախի կոլտնտեսությունում նախատեսվել է պետությանը վաճառված բարձր
գիրությամբ մեկ գլուխ ոչխարի համար լրացուցիչ վարձատրել մեկ կգ միս
(կենդանի քաշով): Եվ, պատահական չէ, որ 1967 թ. այդ կոլտնտեսությունում
պետությանը հանձնված ոչխարի մսի 55 տոկոսը բարձր գիրություն ուներ,
իսկ հարևան Բայանդուր գյուղի կոլտնտեսությունում, որտեղ լրացուցիչ վար-
ձատրության նման միջոցառում չի կիրառվել, բարձր գիրությամբ է հանձ-
նըվել ոչխարի մսի միայն 22 տոկոսը:

Կոլտնտեսությունների եկամուտների և շահութաբերության բարձրացման
կարևոր աղբյուր է նաև գյուղատնտեսական մի շարք մթերքների ու հումքի
վաղ իրացումը: Հայտնի է, որ գյուղատնտեսական մթերքների ու հումքի ար-
տադրությունն ունի խիստ սեզոնային բնույթ, որի հետևանքով տարվա որոշ
ամիսներին մեծ չափով դժվարանում է բնակչության առանձին սննդամթերք-
ների և արդյունաբերության՝ հումքի համաչափ մատակարարումը: Այս ա-
ռումով, առանձնապես կարևոր նշանակություն ունի որոշ մթերքների ու հում-
քի արտադրության վաղ սկսելը, դրա տևողության զգալի կրճատումը: Դրա
շնորհիվ ո՛չ միայն ավելի վաղ և ավելի լավ կբավարարվեն բնակչության
սննդամթերքի և արդյունաբերության՝ հումքի պահանջմունքները, այլև կվերա-
նան, կկրճատվեն դրանց պահպանման ընթացքում առաջացած մեծ կորուստ-
ներն ու կատարվող ծախսերը:

Ելնելով դրանից, պետությունը որոշ մթերքների ու հումքի գնման և
հանձնման գները սահմանել է ըստ իրացման ժամկետների: Պարզ է, որ նման
գների պայմաններում տնտեսապես խիստ ձեռնտու կլիներ ամենավաղ
ժամկետներում ապահովել արտադրանքի արտադրությունն ու իրացումը: Դա
տնտեսությանը կտա զգալի լրացուցիչ միջոցներ, որը կնպաստի արտադրու-
թյան շահութաբերության բարձրացմանը:

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ԲԱՔՎԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

(Նոր վավերագրեր)

*Միջին Ասիայի աշխատավորները, այդ թվում և հայերը, ցնծությամբ ընդունեցին Բաքվում սովետական իշխանության հաստատման լուրը։ Վերջինները, բնականաբար, իրենց հայրենիքի՝ Հայաստանի միակ փրկությունը ակնկալում էին սովետական կարգերի հաստատումից։*

*Բաքվի սովետական իշխանության ամենածանր օրերին, Միջին Ասիայի հայաշատ քաղաքներում գումարվում էին հայ աշխատավորների միտինգներ, որոնց մասնակիցները միահամուռ պատրաստակամություն էին հայտնում՝ օգնելու Բաքվի սովետական իշխանության ամրապնդմանը։ Հատկանշականն այն է, որ երբ թուրքական հրոսակներն արշավում էին Բաքվի վրա, Միջին Ասիայի հայաշատ կենտրոններում սկսվում է լայն շարժում՝ կամավորական ջոկատներ կազմելու և Բաքու ուղարկելու համար[1]։ Այդպիսի ջոկատներ են կազմավորվել Տաշքենդում, Կոկանդում, Անդիժանում, Սամարղանդում, Աշխաբադում և հայաշատ այլ քաղաքներում։ Բաքու մեկնելու համար ամբողջ Թուրքեստանի մասշտաբով հայտարարվում է 19—45 տարեկան հայ երիտասարդների ցուցակագրում[2]։ Տաշքենդում, Սամարղանդում, Ջիմքենդում և այլուր դրամ է հավաքվում Բաքվին օգնելու նպատակով[3]։*

*1918 թ. ապրիլի 29-ին Թուրքեստանյան երկրամասի արտակարգ կոմիսար Պ. Ա. Կոբոզևի ստորագրած մանդատում ասված է. «Թույլատրվում է Թուրքեստանյան երկրամասի հայկական բոլոր ջոկատներին անարգել անցնել Կովկաս՝ հայ պրոլետարիատի և Բաքվում սովետական իշխանության պաշտպանության համար»[4]։ Այնուհետև ասված է, որ առաջարկվում է բոլոր հիմնարկություններին ու կազմակերպություններին անմիջապես օգնել մոբիլիզացված հայերին։ Կոբոզևը սովետական բոլոր կազմակերպություններից պահանջում էր Բաքու անցնելու համար հայկական ջոկատներին «ցույց տալ լրիվ աջակցություն»[5]։*

*Հայկական կամավորական ջոկատների կազմավորման և նրանց Բաքու ուղարկելու գործին մշտապես հետևում էր Ստ. Շահումյանը, որը 1918 թ. հուլիսի 1-ին Թուրքեստանի ժողկոմսովետի նախագահ Կոլեսովին հեռագրում է՝ աջակցություն խնդրելով։ Ահա այդ հեռագրի լրիվ տեքստը, որը հրապարակվում է առաջին անգամ.*

¹ ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 1, л.л. 76, 83, 84.

² *Նույն տեղը, թ. 85։*

³ *Նույն տեղը։*

⁴ ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 61, л. 136.

⁵ ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 61, л. 136.



«Խնդրում եմ թույլատրել հայկական դրուժինաների մեկնումը։ Ելիզավետապոլի ուղղությամբ մեծ մարտեր են ընթանում։ Դրությունը համարյա օրհասական է։ Օգնությունը՝ արտակարգ անհրաժեշտ։ Յուրաքանչյուր օր նշանակություն ունի։ Խնդրում եմ Ձեր աջակցությունը։

Կովկասի գործերի արտակարգ կոմիսար՝ Շահումյան»[1]։

*Այս հեռագրից երկու օր անց, 1918 թ. հուլիսի 3-ին, Թուրքեստանի ժողկոմսովետի նախագահ Կոլեսովը հեռագրում է Շահումյանին, հայտնելով, որ* «հայերի ջոկատներն ուղարկում ենք Ասխաբադի դեպուտատների սովետի անդամների ուղեկցությամբ»[2]։

*Նույն օրը Կոլեսովը հեռագրում է նաև Ասխաբադի դեպուտատների սովետ. Նա հայտնում է.*

«Հայկական ջոկատների Կովկաս մեկնումը թույլատրվում է։ Դրուժինաները... Բաքու են մեկնում Ասխաբադի դեպուտատների սովետի անդամի ուղեկցությամբ և այնտեղ պետք է հանձնվեն ժողկոմսովետի նախագահ Շահումյանի իրավասությանը»[3]։

*Ի դեպ, անհրաժեշտ է նշել, որ Բաքու մեկնող հայկական ջոկատները զինված չէին[4]։ Նրանց զինման գործը հոգալու էր Բաքվի սովետը։*

*1918 թ. հունիսի 22-ին Բաքվից Տաշքենդ է ուղարկվում Ենոք Բագրատունին ռազմամթերք ստանալու համար «Տաշքենդի կառավարական օրգանների հետ բանակցելու»[5]։ Այդ կապակցությամբ Թուրքեստանի ժողկոմսովետի նախագահ Կոլեսովը 1918 թ. հուլիսի 1-ին Բաքու՝ ժողկոմսովետին և ռազմա-ծովային կոմիսարիատին ուղարկում է մի այլ հեռագիր, հայտնելով, որ* «Թուրքեստանի ժողկոմսովետը բավարար քանակությամբ չի կարող Բաքու ուղարկել»[6] *Բագրատունու միջոցով պահանջված կարևոր ռազմամթերքը։*

*1918 թ. հունիսի 4-ին Ստ. Շահումյանն անհկուն հեղափոխական Վ. Խուտուլաշվիլու միջոցով նամակ է ուղարկում Տաշքենդ, Թուրքեստանի ժողկոմխորհ։ Այդ նամակում, որը հրապարակվում է առաջին անգամ. Ստ. Շահումյանը գրում է.*

«Թուրքեստանի ժողովրդական կոմիսարների խորհրդին

Թանկագին ընկերնե՛ր

Բաքվի վիճակը օրհասական է դառնում։ Մոտակա օրերին արդեն սպասվում են լուրջ մարտեր Ելիզավետապոլի ուղղությամբ։ Անդրկովկասի սիրտը՝ Թիֆլիս թափանցած թուրքերը պատրաստվում են արշավել Բաքվի վրա։ Թաթարական և վրացական զորքերն արդեն գրավել են Քուռը։ Նրանց առաջապահ ջոկատները գտնվում են Ուջարայում և Քյուրդամիրում։ Այսպիսի պայմաններում բարեկամների օգնությունը մեզ անհրաժեշտ է։ Հրետանին մեզ մոտ շատ քիչ է։ Մեզ հայտնել են, որ Ձեզ մոտ, Տաշքենդում կա յոթ մարտկոց։ Նրանցից մեկը խնդրում ենք Ձեզնից։ Ընկ. Խուտուլաշվիլին բերում է Ձեզ թերթեր, որոնցից Դուք մանրամասն կծանոթանաք մեր վիճակին։ Խնդրում ենք չմերժել և օգնել մեզ։ Աստրախանի միջոցով Մոսկվայից ստացել եմ ռադիո— խնդրում են տեղեկություններ հաղորդել Թուրքեստանի մասին։ Դժգոհում են, որ դուք չեք պատասխանում նրանց հարցումներին։ Մենք հաղորդեցինք, ինչ մեզ հայտնի էր։ Գուցե առաջիկայում Դուք ռադիոյով մեզ տեղեկություններ կհաղորդեք, որ մենք էլ իմանանք, թե ինչ է կատարվում Ձեզ մոտ և հաղորդենք Մոսկվա։

Թախանձագին խնդրում եմ Խուտուլաշվիլուն չպահել, եւ ուղարկեք նրան անմիջապես, բավարարելով մեր խնդրանքը։

Ընկերական ողջույններով՝ Ստ. Շահումյան»[7]։

¹ ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 66, л. 35.

² *Նույն տեղը, թ. 42։*

³ *Նույն տեղը, թ. 44։*

⁴ *Նույն տեղը։*

⁵ ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 2, л. 76.

⁶ ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 66, л. 54.

⁷ ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 61, л. 336.

*Նամակի առաջին էջի ձախ կողմում Ստ. Շահումյանն ավելացրել է հետևյալը.* «Ընկերներից մեկին ուղարկել ենք օդանավերի համար: Նրանց սպասում ենք անհամբեր»[1]:

*1918 թ. հունիսի 23-ին Ստ. Շահումյանի՝ Վ. Ի. Լենինին գրած նամակից իմանում ենք, որ այդ օդանավերը (թվով 13), արդեն բերվել են Ս. Տեր-Գաբրիելյանի միջոցով:*

*Թուրքեստանի ժողկոմսովետի 1918 թ. վերաբերյալ փաստաթղթերում կատարված պրպտումներն արդյունք չտվին. հնարավոր չեղավ գտնել որևէ վկայություն՝ Ստ. Շահումյանի խնդրած մեկ մարտկոցն ուղարկվել է, թե՞ ոչ: Բայց հավանական է, որ մարտկոցն ուղարկված չլինի, քանի որ Վ. Ի. Լենինին գրած վերոհիշյալ նամակում Ստ. Շահումյանն այդ մասին ոչինչ չի նշում: Հաջողվեց միայն հայտաբերել մի ուշագրավ փաստաթղթի պատճենը, որը Բաքվի Հայկական Ազգային խորհուրդն ուղարկել էր Տաշքենդ «Դաշնակցություն» կուսակցության Թուրքեստանյան կենտկոմին: Ահա այն.*

«Արձանագրություն հայկական ազգային զորամասերի ապակազմման մասին

*Բաքվի դեպուտատների սովետի 1918 թվականի ապրիլի 26-ի (13) ընդունած որոշման իրականացման հարցով Բաքու քաղաքի ու նրա շրջանների Հեղափոխական Պաշտպանության Կոմիտեի և Հայկական Ազգային Խորհրդի ներկայացուցիչների համատեղ նիստի:*

*Որոշվեց.*

1. Երկրորդ Հայկական Ազգային հետևակ գունդը ապակազմվում է, նրա մի մասը մտնում է Համազասպի գումարտակի, մյուսը՝ նոր կազմվող սովետական կարմիր գումարտակների կազմում:


СОВѢТЪ НАРОДНЫХЪ КОМИССАРОВЪ
ЧРЕЗВЫЧАЙНЫЙ КОМИССАРЪ ПО ДѢЛАМЪ КАВКАЗА

СОВѢТЪ Нар. Ком.
2 ИЮН 1918
Вход. №

В Туркестанский Совет Нар. Комиссаров.

Уважаемые товарищи

Положение Баку ...

С. Ш.

*Թուրքեստանի ժողովրդական կոմիսարների խորհրդին հղած Ստեփան Շահումյանի նամակի բնագիրը*

[1] ЦГА Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 61, л. 336.



2. Համազասպի գումարտակները վերակազմվում են, ամբողջովին ենթարկվում սովետական իշխանությանը և մտնում Կարմիր բանակի մեջ, Կարմիր բանակի 16-րդ և 17-րդ գումարտակներ անվանումով:

3. 16-րդ և 17-րդ գումարտակների հրամանատար նշանակվում է Համազասպը: 16-րդ գումարտակի հրամանատար նշանակվում է Սերգոն *(ազգանունը չի նշված— Վ. Պ.)*:

17-րդ գումարտակի հրամանատար նշանակվում է Չիլինգարյանցը: Մնացած հրամանատարական կազմի նշանակումը, Կարմիր բանակի ընդհանուր հիմունքներով, պատկանում է գումարտակների հրամանատարներին:

4. Համազասպի գումարտակները նախատեսվում են մոտ ապագայում արևմտյան ուղղությամբ ռազմական գործողությունների համար:

Երրորդ և չորրորդ կետերը հրապարակման ենթակա չեն:

Ստորագրել են՝

Հեղափոխական պաշտպանության Կոմիտեի ներկայացուցիչներ՝ Շահումյան, Կորգանով:

Հայկական Ազգային Խորհրդի ներկայացուցիչներ՝ Գյուլխանդանյան, Ն. Տեր-Ղազարյան, Ի. Տեր-Օհանյան»[1]:

*Անդրադառնալով այս իրողությանը, Ա. Ի. Միկոյանն իր Բաքվի կոմունայի օրերի մասին խորագրով հուշերում գրում է. «Կարմիր բանակի զորամասերն իրենց կազմով մինչև 1918 թ. մայիսը՝ ինտերնացիոնալ բնույթ ունեին: Միայն, երբ Բաքվին սպառնաց գերմանա-թուրքական արշավի վտանգը, Հայկական Ազգային խորհուրդն առաջարկեց Կարմիր բանակի կազմին տրամադրել հայկական իր զորամասերը: Այդ զորամասերից մի քանի վաշտ ընդգրկվեցին մեր բանակում: Դա հարկադրված մի կոմպրոմիս էր, ներթաքուն վտանգներով հանդերձ: Այդ զորամասերի զինվորները ճնշող մեծա-*


С товарищеским приветом С. Шаумян

[1] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 2, л. 145.

դաշնակների քաղաքական տակտիկան և իրենց ներկայացնում իբրև սովետական իշխանության դաշնակիցներ ու պաշտպաններ[1]։

Ավելին, նրանք «անգլիացիների առաջանալը դեպի Բաքու»[2] համարում էին փրկության միակ միջոցը[3]։

«Դաշնակցություն» կուսակցության Թուրքեստանյան կենտկոմի ղեկավարները (Մելիք-Փարսադանյանը և ուրիշներ), իրենց հրապարակային ելույթներում երկերեսանիորեն կուրծք էին ծեծում, ճգնելով ցույց տալ, որ իրենք կողմնակից են սովետական իշխանությանը, բայց գործնականում ճիշտ հակառակն էին կատարում։

Միջին Ասիայում «Դաշնակցություն» կուսակցության դեմքը պարզ երևաց, հատկապես այն բանից հետո, երբ հայտնի դարձավ Բաքվի 26 կոմիսարների չարանենգ սպանության լուրը։ Նրանք ամեն կերպ ջանում էին հայ աշխատավորությունից թաքցնել Բաքվի կոմունայի պաշտպանության գործում ցուցաբերած իրենց գաղափարակիցների դավաճանական վարքագիծը։

1918 թ. հուլիսի 16-ին Ասխաբադում էսեռները և սպիտակգվարդիական հակահեղափոխականները Ֆունտիկովի գլխավորությամբ ապստամբեցին Ասխաբադի բոլշևիկյան սովետի դեմ։ Այդ ապստամբության ժամանակ Ասխաբադի դաշնակցության «հայկական դրուժինան» սկզբում չեզոքություն հայտարարեց, հետո անցավ խռովարարների կողմը։ Դաշնակցականների ակտիվ մասնակցությամբ Ֆունտիկովին հաջողվում է տապալել սովետական իշխանությունը և ձերբակալել Ասխաբադի սովետի անդամներ՝ Ժիտնիկովին, Բատմինովին, Ռոզանովին, Մոլչարոժկոյին, Տելլեին, Կուլիևին, Առուստամյանցին, Պետրոսովին (Պետրոսյան) և ուրիշների։ Հուլիսի 21-ին խռովարարները գնդակահարեցին բանտարկված 9 բոլշևիկների, այդ թվում՝ Առուստամյանցին և Պետրոսովին, որոնք պատմության մեջ մտել են իբրև Աշխաբադի կոմիսարներ։

Պետք է նշել հետևյալ փաստը։ 1918 թ. հոկտեմբերի 20-ին Ֆերգանայի մարզային սովետի օրգան «Известия» թերթում (№ 218) հրապարակվեց «Դաշնակցություն» կուսակցության Սկոբելև (այժմ Ֆերգանա) քաղաքի խմբի կոչը՝ ուղղված իրենց անդամներին։ Այդ կոչով հայտնվում էր, որ հոկտեմբերի 15-ին քրեական հանցագործություն կատարելու համար ձերբակալվել են մի քանի կուսակցականներ և դատապարտվում էին նրանք կուսակցության անունն «արատավորելու» համար։

Ի պատասխան այդ կոչի, թերթը նույն համարում գրում է.

«Մենք կարծում ենք, եթե իսկապես «դաշնակցության» տեղական խումբը որոշել է վճռականորեն պաշտպանել սովետական իշխանությանը, ապա պետք է, որ նա իր կոչում խստորեն դատապարտեր իրենց Բաքվի և Ասխաբադի կոլեգաների վարքագիծը։ Պետք է որ նա հայտարարեր, թե իրենց կուսակցությունը չի հարում անգլիական իմպերիալիզմին, պետք է հայտարարեր, որ խումբը միանում է Հոկտեմբերյան մեծ հեղափոխության առաջ քաշած լոզունգներին։

Այսպիսի հայտարարություն լսել ենք Թուրքեստանի բոլշևիկյան կուսակցության համագումարում «դաշնակցության» համագումարի կողմից. բայց դրանից մեկ ամիս էլ չանցավ, երբ Բաքվում ու Ասխաբադում «դաշնակցությունը» դաշույնը խրեց սովետական իշխանության թիկունքը»։

1918 թ. նոյեմբերի 16-ին Ֆերգանայի մարզի կոմունիստ-բոլշևիկների կուսակցության առաջին համագումարը, որն անցավ Օնիկ Սահակյանի ղեկավարությամբ, անարգանքի սյունին գամելով «Դաշնակցություն» կուսակցության հակասովետական գործունեությունը, որոշեց «նրա ներկայացուցիչներին չընդունել դեպուտատների սովետներում» և եղածներին էլ «Սովետներից հանել»[4]։

---

[1] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 2, л. 84.

[2] Նույն տեղը, թ. 91։

[3] Նույն տեղը։

[4] Партархив при ЦК КП Уз. ССР, ф. 25, оп. 1, д. 6, л. 12, д. 4, л. 52.



Դաշնակցության պարագլուխները բողոքելով այդ որոշման դեմ[1], կեղծավորաբար կուրծք էին ծեծում 1918 թ. դեկտեմբերի 8-ին հայտարարելով, թե իրենք սովետական իշխանության կողմնակիցներ են, մոռանալով, որ դեռևս 1918 թ. ապրիլի 21-ին գաղտնի ժողովներից մեկում որոշել էին.

«Քանի որ քաղաքական դրությունը պարզված չէ (այսինքն՝ Թուրքեստանի քաղաքական դրությունը— Վ. Պ.), քանի որ պարզված չէ, թե որ կողմն է իշխող լինելու (խոսքը վերաբերում է սովետական իշխանությանը և հակահեղափոխական ուժերին— Վ. Պ.) անցնել մեծամասնականների (բոլշևիկների— Վ. Պ.) կողմը... ձեռնտու չէ»[2]։

Իսկ երբ 1919 թ. հունվարի 18-ի լույս 19-ի գիշերը դավաճան Օսիպովի ղեկավարությամբ Տաշքենդում խռովություն բարձրացրին հակասովետական ուժերը, դաշնակցության պարագլուխները նախապես իմանալով այդ խռովության հակասովետական բնույթը, իրենց «չեզոք» հայտարարեցին, պատճառաբանելով, որ չեն «ցանկանում մասնակցել եղբայրասպան պատերազմին»[3]։

Անդիժան քաղաքի հայ աշխատավորների ժողովը, նշանավակելով «Բաքվի 275 դաշնակցականներին, որոնք մեղավոր են անգլիացիներին Բաքու կանչելու գործում»[4], խանդավառությամբ ընդունում է հետևյալ կոչը.

«Մենք, հայ պրոլետարներս, մեր պատմական և աշխարհագրական դիրքի ուժով չենք կարող մասնակից չլինել սոցիալական կյանքի շինարարությանը։ Անցյալում և այժմ հայ պրոլետարիատը տվել է շատ հեղափոխականներ ընդհանրապես և, մասնավորապես, սովետական գործիչներ։ Մենք միշտ ընթացել ենք հեղափոխության ավանգարդում և բարձր պահել սոցիալիզմի դրոշը...

Մենք բարձրաձայն հաստատում ենք, որ հայ պրոլետարիատը մեկ անգամ չէ, որ ցույց է տվել և էլի ցույց կտա, որ նա կարողանում է գնահատել հեղափոխությունը, կարողանում է կյանքը զոհել սոցիալիզմի համար։ Մենք համարձակորեն հայտարարում ենք, որ կոմունիզմի ավանդները, մեզ, ցարիզմի օրոք ամենից շատ ճնշվածներիս համար, ավելի հարազատ են ու թանկ... և պատրաստ ենք մեկ մարդու նման սովետական իշխանությանը օգնության գնալ։ Կեցցե՜ սովետական իշխանությունը, կեցցե՜ համաշխարհային կոմունիզմը»[5]։

Այսպես էր ամենուր։ Հայ աշխատավորները մեծ պատրաստակամությամբ զինվորագրվում էին Հոկտեմբերյան մեծ հեղափոխության պաշտպանության վեհ գործին։ Դաշնակցություն կուսակցության Թուրքեստանյան կենտկոմի ղեկավարներից մեկը՝ Ամիրյանը, ստիպված էր արդեն հանրագումարի բերել Թուրքեստանի հայ աշխատավորության շրջանում իրենց անփառունակ գործունեությունը և 1919 թ. մայիսի 17-ին դաշնակցության Տաշքենդի կոմիտեում ցավով նշել, որ «հայ մասսաները ամբողջովին հակված են դեպի կոմունիստները»[6]։

ՊԵՏՐՈՍՅԱՆ Վ. Գ.

---

[1] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 35, л.л. 25—26.

[2] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 16, л. 55.

[3] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 27, л. 16.

[4] ЦГА Уз. ССР, ф. 34, оп. 1, д. 387, л. 26.

[5] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 35, л. 48.

[6] ЦГА Уз. ССР, ф. 1826, оп. 1, д. 35, л. 48.

# ՐԱՖՖՈՒ ԱՆՀԱՅՏԱՑԱԾ ԳՈՐԾԵՐԸ ԵՎ ՉԻՐԱԿԱՆԱՑԱԾ ՄՏԱՀՂԱՑՈՒՄՆԵՐԸ

Րաֆֆին լայն ու բազմակողմանի ընդգրկումների տեր հեղինակ է, մեծ մտածող: Նրա ողջ կյանքում ո՛չ միայն ամենևին չթուլացան գրական աշխատանքով զբաղվելու թափն ու կորովը, ստեղծագործական տարերքը, այլ գնալով հզորացան ու առավել արգասավոր դարձան: Սակայն, չնայած այդ հանգամանքին, քաղաքական անբարենպաստ հանգամանքների ու հալածանքների և գրաքննական ծայրահեղ խստությունների հետևանքով Րաֆֆին հնարավորություն չունեցավ հայ ընթերցողի սեղանին դնելու այն բոլոր ստեղծագործությունները, որոնք մտահղացել էր և որոնց իրականացմանը հետամուտ էր իր ողջ էությամբ: Բացասական է անդրադարձել Րաֆֆու ստեղծագործական կյանքի վրա նաև նյութական անապահովությունը: Բացի վերը նշված հանգամանքներից, նրա ստեղծագործական կարողությունները բոլորանվեր չդրսևորվեցին ու չիրականացան նաև անժամանակ մահվան պատճառով: Տխուր իրողությունն այն է, որ նա իր մահկանացուն կնքեց հիսնամյակը բոլորած և վաթսունամյակի շեմին, երբ ավելի բուռն ու արգասավոր էր դարձել նրա գրիչը:

Հատուկ հետաքրքրության է արժանի այն հանգամանքը, թե ստեղծագործական ինչպիսի ծրագիր է ունեցել Րաֆֆին, որի իրականացումն առավել ծանրակշիռ և արժեքավոր պիտի դարձներ հայ ժողովրդին պարգևած նրա թանկագին ժառանգությունը:

Բայց նախքան այն հարցին անդրադառնալը, թե Րաֆֆին ինչպիսի՞ գանձեր իր հետ գերեզման տարավ, պարզենք, թե նրա ո՞ր գործերի ճակատագիրն է ցայսօր անհայտ:

1911 թ. Վիեննայում լույս տեսած Սալբի վեպի առաջին հատորի վերջում նշված են Րաֆֆու այն գործերը, որոնք պետք է լույս տեսնեին հետագայում: Դրանց շարքում նշված են նաև Սալբիի առաջին և երկրորդ հատորները: Բայց մեզ մատչելի բոլոր նյութերից պարզվում է, որ մինչև հիմա դրանք լույս չեն տեսել:

Սալբիի երկրորդ և երրորդ հատորներն Աննա Րաֆֆու և նրա որդիների մոտ էին: Մեծարգո տիկնոջ և նրա Արամ որդու մահվանից հետո դրանք տնօրինել է Արշակ Րաֆֆին: Նրա մահվանից (1946 թ. Լոնդոն) հետո հայտնի չէ, թե ինչ է տեղի ունեցել այդ հատորների հետ:

Այրի Աննա Րաֆֆու նախաձեռնությամբ Վիեննայում լույս տեսած Րաֆֆու երկերի վերջում զետեղված հայտարարություններից, որոնք վերաբերում են հեղինակի՝ հետագայում հրատարակվելիք գործերին, նշված են նաև Ազգային համառոտ պատմություն Հայկից մինչև Լևոն Զ. և Ընդհանուր պատմություն, պատմագիտական աշխատությունները: Այս գործերի վախճանը ևս ցայսօր անհայտ է:

1874 թ. Թիֆլիսում լույս տեսած Փունջ-ի առաջին հատորի առաջաբանում անդրադառնալով Փունջ-ում հրատարակվելիք մնացած ինը հատորների պարունակությանը, Րաֆֆին նշել է, որ Փունջ-ի երրորդ հատորում զետեղվելու է Խորենացու ողբը բանաստեղծությունը: Հայտնի է, որ Փունջ-ի երրորդ հատորը լույս չի տեսել: Ինչպես Րաֆֆու հրատարակված երկերում, այնպես էլ մամուլում չի տպագրվել Խորենացու ողբը: Նրա երկերի՝ Վիեննայի հրատարակություններից հայտնի է, որ նախատեսված է եղել հրատարակել Րաֆֆու անտիպ այլ բանաստեղծություններ ևս: Բայց ինչպես անտիպ բանաստեղծությունների, այնպես էլ մյուս անտիպ գործերի հրատարակությունը Վիեննայի Մխիթարյան միաբանության կողմից ընդհատվել է համաշխարհային առաջին պատերազմի պատճառով, չնայած Աննա Րաֆֆու անդուլ ջանքերին: Այսպիսով, հայտնի չէ Խորենացու ողբը բանաստեղծության վախճանը:

Րաֆֆու երկերի՝ Վիեննայի հրատարակություններից հայտնի է, որ նա ունեցել է նաև հրապարակախոսական անտիպ գործեր, որոնց միայն մի մասն է տպագրվել Վիեննայում, 1913 թ. լույս տեսած «Տաճկահայք»-ի մեջ:

Րաֆֆու անհայտացած գործերից են նաև Նամակներ և Քննադատություններ:

Սրանցով չի սպառվում Րաֆֆու անհայտացած գործերի շարքը, բայց բավականանանք թվարկածներով և անցնենք նրա անկատար մտահղացումների լուսաբանմանը: Փունջ-ի առաջին հատորի առաջաբանից հայտնի է, որ նա ցանկացել է գրել Ներսես Աշտարակեցու և Խրիմյան Հայրիկի կենսագրությունը: Խրիմյանի կենսագրությունից Րաֆֆին հրատարակել է միայն մի հատված, որ կրում է Մի քանի գծեր Խրիմյանի կյանքից խորագիրը («Մշակ», 1873 թ., № 49):

Աշտարակեցու կենսագրության մասին Րաֆֆին Փունջ-ի առաջին հատորում գրել է.

> «Վերոհիշյալ նյութերը, որ պետք է կազմեն՝ բացի առաջինից՝ մնացյալ ինն հատորների պարունակությունը, բոլորը պատրաստ են, վերջացրած չէ միայն Ներսես Ե-ի կենսագրությունը: Որովհետև մենք պատրաստում ենք հանգուցյալի ավելի ընդարձակ կենսագրությունը, սկսյալ նորա երեխայությունից մինչև նորա մահը, այդ պատճառավ այդ աշխատությունը մեր ցանկացածին պես լրացնելու համար՝ մենք կարոտ ենք ավելի մանրամասն և ստույգ տեղեկությունների: Որոյ համար խնդրում ենք հանգուցյալի ծանոթներից հաղորդել մեզ նյութեր նորա կյանքի, գործունեության և հարաբերությանց մասին օտարների հետ: Տեղեկություններն որքան և աննշան լինեն, դարձյալ մեզ համար թանկագին են, մենք կարող կլինենք նոցանից օգուտ քաղել: Եթե որևիցե կոնդակ, նամակ հանգուցյալից, չկամեին նոցա իսկականը մեզ հաղորդել, բավական են միայն նոցա արտագրած պատճենները. մենք կվճարենք փոստայի և գրագրի ծախսը: Ներսեսի կենսագրության հետ զուգընթաց կնկարագրվին՝ նույն ժամանակի էջմիածնայ մեր հոգևոր կառավարության և հայերի դրությունը, այլև ռուսաց պարսից հետ ունեցած պատերազմը և հայերի գաղթականությունը Պարսկաստանից և Տաճկաստանից դեպի Ռուսաստան: Մենք հուսով ենք, որ մեզ կօգնեն և այդ մեծ մարդի հավերժական հիշատակը անմոռաց կմնա պատմագրության մեջ» (Րաֆֆի, Փունջ, հ. Ա., Թիֆլիս, 1874, էջ XIII—XIV):

Այս տողերից պարզ երևում է, որ Աշտարակեցու կենսագրությունը չափազանց բովանդակալից պիտի լիներ ընդգրկելով նաև նրա գործունեության ժամանակաշրջանի Հայաստանի պատմա-քաղաքական կարևորագույն իրադարձությունները, ռուս-պարսկական պատերազմը, հայության ծանր գոյավիճակը, Պարսկաստանից և Տաճկաստանից Ռուսաստան գաղթած հայերի, էջմիածնի հոգևոր կառավարության կացությունը և այլն:

Արդյոք, գրել և ավարտե՞լ է Րաֆֆին Աշտարակեցու կենսագրությունը: Այո՛. նա գրել է այդ կենսագրությունը: Մեր այս եզրակացությունը բխում է Րաֆֆու այն խոսքերից, թե «...վերջացրած չէ միայն Ներսես Ե-ի կենսագրությունը»:

Իսկ Րաֆֆին ամբողջացրել և ավարտե՞լ է Աշտարակեցու ընդարձակ կենսագրությունը: Մենք հիմք չունենք

որևէ ստույգ հետևություն անելու, բայց մի բան անկասկած է, որ եթե Րաֆֆին նույնիսկ ամբողջովին ավարտած լիներ Աշտարակեցու կենսագրությունը, նա չէր կարողանա հրատարակել, որովհետև անհնար պիտի լիներ գրաքննիչից թույլտվություն ստանալ՝ այդպիսի մի կենսագրություն տպագրելու համար։ Որովհետև այնտեղ բացահայտված պիտի լիներ ցարիզմի՝ հայության նկատմամբ վարած ասիմիլյատորական քաղաքականությունն ու երևան հանվեին հալածանքներն էջմիածնի հոգևոր կառավարության պարագլխի՝ կաթողիկոս Ներսես Աշտարակեցու նկատմամբ։

Րաֆֆու համար բացառիկ նշանակություն ուներ «պաշտելի տղամարդի»՝ Միքայել Նալբանդյանի կենսագրության պատրաստումը։ Իր մահվանից մեկ տարի առաջ՝ 1887 թվականին, նա մտադիր էր գրել Նալբանդյանի կենսագրությունը։ Այս հարցի կապակցությամբ ուշագրավ է Կ. Մարտիրոսյանի՝ 1887 թ. մարտի 25-ին, Մոսկվայի Լազարյան ճեմարանի ուսուցիչ Խաչատուր Հովհաննիսյանին (Քուչուկ) գրած անտիպ նամակը, որը հայտնաբերեցինք արխիվային պրպտումների ժամանակ։ Այդ նամակում Կ. Մարտիրոսյանը գրում է. «...որովհետև Նալբանդյանի երկասիրությանց հրատարակելու պատճառով զանազան խոչընդոտներ են պատահում ժառանգների կողմից ամենայն քայլում, ուստի մեզ մնում է հրատարակելու մեր ձեռքին գտնվածները։ Առաջին հատորի սկզբում դրվելիք կենսագրության մասին գրել եմ արդեն հանգուցելո մտերիմ ընկերներից մեկին՝ բժ. Անանիա Սուլթան Շահին, Ղզլար։ Լսելով մեր ձեռնարկության մասին, հայ տաղանդավոր վիպասան պարոն Րաֆֆին ինքն առաջարկեց ինձ կազմելու այդ կենսագրությունը»։

Նշենք նաև, որ Վիեննայի Մխիթարյանների հրատարակած Րաֆֆու երկերին կցված հայտարարություններում (որոնք վերաբերում են հեղինակի այն ձեռագրերին ու անտիպ երկերին, որ պետք է լույս ընծայվեին) ի թիվս այլ գործերի, հիշատակված են նաև կենսագրություններ։ Անհիմն չի լինի մտածել, որ դրանց մեջ եղել է նաև Նալբանդյանի կենսագրությունը։

Րաֆֆու իրագործելիք մտահղացումներից մեկը պիտի լիներ այն աշխատությունը, որ նա մտադիր էր նվիրել հողային հարցի քննությանը Ղարաբաղում։ Այս առթիվ նա գրել է. «Այդ հարցերը մենք դիտավորություն ունենք հրատարակել առանձին բրոշյուրով, որ կկրե այսպիսի վերնագիր «Հողային հարցը Ղարաբաղում մելիքների տիրապետության ժամանակ» (Երկերի ժողովածու, հ. 10, էջ 258)։

Հիշյալ աշխատության մեջ Րաֆֆին պիտի քննության առներ Իբրահիմ-խանի ծայրահեղության հասած կամայականությունները։

> «...Իբրահիմ-խանը ավելի հեռու գնաց,— գրում է Րաֆֆին,— նա դիպավ ժողովրդի և մելիքների ամենազգալի շահերին. նա սկսեց միջամտություն գործել երկրի հողային խնդիրների մեջ, որոնք մինչև այսօր թողված էին անձեռնմխելի և կառավարվում էին միմիայն հայոց վաղեմի սովորություններով, որոնք օրենքի ձև էին ստացել» (Նույն տեղը, էջ 258)։

Րաֆֆու բազմաթիվ մտահղացումներից մեկն էլ պիտի լիներ Խամսայի մելիքությունների երկրորդ հատորի պատրաստումն ու լույս ընծայումը, որի մասին նա գրել է.

> «Եթե Խամսայի մելիքությունների առաջին հատորն ընդունելություն գտավ ընթերցող հասարակությունից և տպված գրքերը վաճառվեցան, այն ժամանակ ես կտպեմ մի երկրորդ հատոր, որպես հավելվածք առաջին հատորի։ Այդ վերջին հատորի մեջ զետեղված կլինեն այն բոլոր նյութերը, որոնք ծառայել են ինձ իբրև աղբյուր առաջին հատորը կազմելու համար։ Բովանդակությունը կլինի հետևյալ կարգով. զանազան անձիքների զանազան ժամանակներում Ղարաբաղի կաթողիկոսների, մելիքների մասին գրած և անտիպ մնացած պատմական աշխատություններ, մեր պարբերական հրատարակությունների կամ այլևայլ գրքերի մեջ ցրված հոդվածները Ղարաբաղի մելիքների մասին. ռուսաց ակտերի մեջ գտնված տեղեկությունները Ղարաբաղի մելիքների մասին, որպիսին են կովկասյան հնագիտության մասնաժողովի ակտերը (Акты Кав. Археогр. Ком), Մոսկվայում տպված հավաքածու ակտերը, որ վերաբերում են հայոց ազգի պատմության հետազոտությանը (Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа)։ Ռուսաց պատմագիրների՝ Սոլովևի, Բուտկովի, Դուբրովինի, Հ. Արարատսկու (հայ) և այլոց գրքերի մեջ գտնված տեղեկությունները Ղարաբաղի մելիքների մասին, այլև պարսից պատմագրության մեջ հայոց մելիքների մասին գտնված տեղեկությունները. ռուսաց կայսրների, պարսից շահերի, վրաց իշխանների և զանազան խաների Ղարաբաղի կաթողիկոսներին ու մելիքներին շնորհած անվանական հրովարտակների, ֆիրմանների օրինակները. մելիքների տոհմերի վերաբերությամբ գտնված արձանագրությունների օրինակները՝ եկեղեցիների, վանքերի, շիրիմների քարերի վրա, գրքերի հիշատակարանների մեջ. մելիքների տոհմային ճյուղագրության աղյուսակները։ Այդ բոլորը տպված կլինեն իմ սեփական բացատրություններով և ծանոթագրություններով» (Նույն տեղը, էջ 386)։



Անդրադառնալով պարսկահայաստանում ռուս-պարսկական պատերազմի ժամանակաշրջանում «ծաղկած» հայ ավագների—մելիքների պատմության վերհանմանը, Րաֆֆին արել է այն նուրբ դիտողությունը, թե այդ ավագների պատմությունը «կարոտ է առանձին գրքի» (Նույն տեղը, էջ 359)։ Անտարակույս Րաֆֆին իրեն էր վերապահում վերոհիշյալ գիրքը գրելու և՛ պարտքը, և՛ պատիվը, այլապես հարկ չէր համարի շեշտելու այդ հանգամանքը։ Նա ջանում էր իր ժողովրդին ծառայել նաև թարգմանություններով։

> «Մեր աշխատակից պ. Րաֆֆին Թիֆլիսում պարսկերեն լեզվով հրատարակվող «Քեշկյուլ» լրագրի խմբագիր Ջալալ էֆենդի Ունսիզադեի աջակցությամբ,— գրում էր «Արձագանքը» (1887 թ. № 99),— ձեռնարկել է պարսկերենից հայերեն թարգմանել պարսկական հռչակավոր Լեյլի-Մեջլում բանաստեղծությունը...»։

Րաֆֆու կարևոր մտահղացումներից էր նաև Սասունցի Դավիթ էպոսի Սանասարի ճյուղի ուսումնասիրությանը նվիրված հոդվածը։ Այդ առթիվ հայ ականավոր բանագետ Գ. Սրվանձտյանի Գրոց ու բրոց կամ Սասունցի Դավիթ գրքույկին նվիրված իր հոդվածում Րաֆֆին գրել է.

> «Գրքույկը պարունակում է յուր մեջ և մի ամբողջ վեպիկ այս անունով՝ Սասունցի Դավիթ, կամ Մհերի դուռ։ Վեպը պատկանում է Սկայորդվո ժամանակներին և մի բանաստեղծական նկարագրություն է Ասորոց Սենեքերիմ թագավորի որդիների— Ադրամելիքի և Սանասարի— գաղթականությանը դեպի Հայաստան։ Սույն վիպասանությունը, թեև ավանդությամբ մինչև մեր ժամանակը անցնելով, շատ տեղերում աղճատվել է, բայց դարձյալ պահպանում է յուր խորին առասպելա-պատմական հնությունը։ Մենք խոստանում ենք առանձին հոդվածով ներկայացնել մի քննադատություն հիշյալ վիպասանության մասին» (Երկերի ժողովածու, հ. 9, էջ 112—113)։

Դեռևս ուշ չէ հոդվածում անդրադառնալով Պոլսում գործող «ռուսական» և «դեպի Ռուսաստանը հակակիր» կուսակցությունների դիրքորոշումներին, Րաֆֆին շեշտել է, որ Շահենն ի Սիբիր գիրքը երկրորդ կուսակցության «կատարյալ արտահայտությունն է», որին և նա մտադիր է անդրադառնալ։ Այդ առթիվ նա գրել է. «Կ. Պոլսում դեռ պատերազմից առաջ հրատարակված Շահենն ի Սիբիր կոչված գիրքը կատարյալ արտահայտությունն է հիշյալ կուսակցության։ Մենք ուրիշ ժամանակ առիթ կունենանք խոսել այդ գրքի մասին» (Նույն տեղը, էջ 308)։ Քաղաքական նկատառումներով Րաֆֆին նպատակահարմար և շահեկան չի համարել քննության առնել այդ գիրքը և նշել հեղինակի անունը։

Րաֆֆու տաղանդը փայլատակում էր նաև գրական քննադատության ասպարեզում և բանավեճում։ Այդ տեսա-

կետից խիստ արժեքավոր է նրա Պարոն Հայկունու կրիտիկան և «Կայծեր» խորագիրը կրող հոդվածը, որն ավարտվում է Հայկունու դեմ ուղղված հետևյալ խոսքերով՝

> Կայծեր-ի կրիտիկայից հետո Պ. Հայկունին գրեց Րաֆֆիի «Խաչագողի հիշատակարանի առաջին հատորի քննադատությունը: Այստեղ նա, ինչպես սովորաբար ասում են, երեսի փարդան բոլորովին պատռել է,— այստեղ նա երևում է իր կատարյալ տգիտությամբ: Ես իր ժամանակին կտեսնըվեմ պարոնի հետ»:

Բայց, դժբախտաբար, անմրցակից պոլեմիստը հարկադրված եղավ տեղի տալ և լռել:

Փանյանին ուղղված իր նամակում Րաֆֆին դառնացած գրել է.

> «Իմ սրտից արյուն է գնում, երբ տեսնում եմ, որ մեր հրապարակոսները ամեն կեղտոտություն դուրս են թափում, իսկ ես ստիպված եմ լուռ ականատես լինել» (Երկերի ժողովածու, հ. 10, էջ 612):

Մեր մեծ գրողի լավ մտահղացումներից մեկն էր լինելու Հայ վիպագրության պատմությունը, որի մասին Վիպագրությունը ռուսահայերի մեջ հոդվածում նա գրել է.

> «Մենք անունների հետ առայժմ գործ չունենք: Մենք արդեն ձեռնարկել ենք կազմել հայոց վիպագրության պատմությունը սկսյալ Աբովյանից մինչև մեր ժամանակները: Նույն աշխատության մեջ յուրաքանչյուրին երևան կհանենք յուր վաստակներով» (Նույն տեղը, էջ 157):

Թերի և անավարտ են Րաֆֆու նաև Մինն այսպես, մյուսն այնպես և Կայծեր վեպերը: Նրա մերձավոր բարեկամ ու կենսագիր Ա. Ավթանդիլյանը Կայծերի մասին գրել է. «Ափսոս, որ Կայծեր»-ի— երրորդ հատորը՝ հեղինակից անկախ, կարճ ու պոատ դուրս եկավ» Պատկերներ Րաֆֆիի կյանքից, 1904 Ալեքսանդրապոլ, էջ 138):

Այս տողերը Ավթանդիլյանը գրել է Րաֆֆու մահվանից տասնվեց տարի հետո, բայց առանց բացատրելու, թե հեղինակն ինչու է թերի թողել իր երկար տարիների տքնության արգասիքը—արդիական թեմայով գրված վեպերի գլուխգործոցը: Կայծերի անավարտությունը ճշգրտելու տեսակետից ուշագրավ են այդ վեպի եզրափակիչ խոսքերը:

> «Մեր հիշատակարանը կատարվեցավ որպես մի նկարագիր, զանազան պատկերներով: Շատ անձնավորություններ հանդիսացան և կրկին ծածկվեցան վարագույրի ետևում: Մենք առեցինք նրանց կյանքից և գործունեությունից հայտնի գծեր միայն: Եթե բոլորի գործերը և նրանց գործունեության վախճանը լրիվ գրեինք, պետք է մի երրորդ հատոր ևս ավելացնեինք: Ասլանով սկսեցինք մեր վերջին գիրքը և դարձյալ Ասլանով իջեցնում ենք վերջին պատկերի վարագույրը» (Երկերի ժողովածու, հ. 5, էջ 506):

Կայծերի երրորդ հատորի անավարտ մնալու հիմնական պատճառներից են եղել Րաֆֆու նկատմամբ գործադրված հալածանքն ու գրաքննական ծայրահեղ խստությունները: Այդ առթիվ նա գրել է.

> «...Ես հույս չունեի, որ այս աշխատությունը (Կայծեր-ը— Մ. Ն.) տեղվույս ցենզուրայից ամբողջապես անցներ: Տաճկաստանի հայոց վերջին շարժումներից հետո այստեղի ցենզուրան սկսեց բավական խստությամբ վերաբերվել դեպի ամեն մի գրվածք, որ կարող էր նրանց մեջ ազգասիրական զգացմունք և ազգասիրական ոգի ներշնչել: Այդ մի բախտ էր, որ Խենթը անցավ, թեև նրա ամենագեղեցիկ տեղերը ջնջվեցան «Մշակի» մեջ տպվելու ժամանակ: Բայց ես մեծ դժվարություն կրեցի, մինչև կարողացա կրկին հրաման ստանալ երկրորդ տպագրության համար» (Երկերի ժողովածու, հ. 10, էջ 565—566):

Հայտնի է, որ Կայծերի թե՛ առաջին և թե երկրորդ հատորները լույս են տեսել ցարական մոլեգին ռեակցիայի պայմաններում, հարուցելով մոլի պահպանողականների զայրույթը, որոնց կամքի արտահայտիչն եղավ ավագ քահանա Եղիշե Գեղամյանը՝ Հայկունին: Կայծերի առաջին հատորի դեմ նա գրեց ընդարձակ հոդված, որում հրապարակավ մատնեց վիպասանին, նրան համարելով ռուս հեղափոխական դեմոկրատ Չերնիշևսկու գաղափարների արտահայտիչը հայ իրականության մեջ: Այս կապակցությամբ նշենք և այն հանգամանքը, որ Րաֆֆու բնակարանը խուզարկելու ժամանակ (1883 թ. մայիս) տարել էին նրա Թղթերը: Մելքոն Փանյանին 1883 թ. սեպտեմբերի 27-ին գրած իր նամակում Րաֆֆին հայտնում էր.

> «Այս տարի ես շատ վնասներ կրեցի: Մշտապես կաշկանդված լինելով, ոչինչ գրել և ոչինչ հրատարակել չկարողացա: Նույն դրությունը դեռևս շարունակվում է: Երևակայացեք մի գրողի վիճակը, որ պետք է ապրե գրական աշխատանքով (Նույն տեղը, էջ 600):

Ուշագրավ են Րաֆֆու՝ վերը բերված խոսքերը Կայծերի վերջավորության և գրաքննական դաժանությունների մասին և լուրջ խորհրդածությունների տեղիք են տալիս: Մեր եզրակացությունն այն է, որ վերոհիշյալ խոչընդոտներն ու արգելքներն են խանգարել նրան՝ ավարտելու Կայծերի երրորդ հատորը:

Րաֆֆու անկատար մտահղացումների պատճառների բացահայտման տեսակետից առանձնակի ուշադրության է արժանի նրա 1885 թ. փետրվարի 18-ին Մելքոն Փանյանին գրած նամակը, որի մեջ նա գանգատվում է, թե գրաքննական ծայրահեղ արգելքների պատճառով կարող է խանգարվել իր պատրաստած «շատ բաների» (ընդգծումը մերն է.— Մ. Ն.) հրատարակությունը:

> «Ես այժմ զբաղված եմ մասնավոր աշխատություններով,— գրում է Րաֆֆին,—տպագրության համար շատ բաներ եմ պատրաստել, առանց հույս ունենալու, որ կտպագրվեն. ցենզուրայի խստությունը չափ չունի...» (Նույն տեղը, էջ 618):

Փիլիպոս Վարդազարյանը և Ա. Քալանթարը նշել են, թե Րաֆֆին ծրագրել էր գրել պատմական մի շարք նոր վեպեր:

> — «Հիշում եմ այդ ժամանակվա (1887—1888 թթ. —Մ. Ն.) զրույցներից միայն մի բան, որ նա սկսել էր առանձին հրապույր զգալ պատմական վեպեր գրելու մեջ և մտադիր էր տալ պատմական վեպերի մի շարք» (ընդգծումը մերն է —Մ. Ն.)[1]:

Այս է Րաֆֆու անկատար մտահղացումների հակիրճ պատմությունը:

Ափսոս, որ Րաֆֆին, հակառակ բուռն ձգտման և անսպառ ունակությունների, չկարողացավ իրականացնել իր այդ գեղեցիկ մտահղացումները, որոնցով նա ավելի պիտի հարստացներ հայրենի գրականության ոսկե ֆոնդը:

ՆԱՀԱՊԵՏՅԱՆ Մ. Հ.

---

[1] Ա. Քալանթար, Հիշողություններ Րաֆֆիի մասին, «Մշակ», 1913, № 88:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱԿՏԻՎ ՈՒ ԱԶՆԻՎ ԳՈՐԾԻՉԸ



Զանգեզուրի գավառի Սիսիանի շրջանի Շաղաթ գյուղում՝ իր ծննդավայրում, հոտաղ էր Լևոնը: Փոքր հասակից, սկզբնական կրթություն ստանալու հետ մեկտեղ, օգնում էր իր հողագործ-ռանչպար հորը: 1913 թվականին 15-ամյա Լևոնը տեղափոխվում է Բաքու և սովորում Բուդաղյանի հայտնի դպրոցում: Ավարտելով դպրոցը, նորից վերադառնում է գյուղ և զբաղվում հողագործությամբ: Երբ սկսվեց առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը, Լևոնի հայրը մեկնեց ռազմաճակատ, իսկ ինքը տեղափոխվեց Բաքու և սկսեց աշխատել Բալախանիի նավթային ձեռնարկությունում որպես բանվոր: «Հենց այդ ժամանակ,— գրում է Լ. Թովմասյանը ինքնակենսագրության մեջ,— տեսնելով կապիտալիստական աշխարհի մթնոլորտը և բանվորների վատ դրությունը խոնավ նկուղներում, իմ մեջ զարթնեցին ատելություն ու զզվանք դեպի հարուստ դասակարգը, նրանց նոխ ու փարթամ կյանքը՝ բանվորների կոպեկներով: Թեև այդ ժամանակ փաստապես ոչ մի կուսակցության չէի պատկանում և գաղափար չունեի կուսակցությունների մասին, բայց շարքաշ ու պրոլետար աշխատավորության շահերի պաշտպանությունն իմ սրտին մոտիկ էր...»:

Դեռևս պատանի, նա տեսնում էր, որ դաշնակցություն կուսակցության «անտակտ ու սխալ քաղաքականությունը» չէր նպաստում տանկահայ աշխատավորության ազատագրմանը:

1916 թվականի գարնանը Լևոնը վերադառնում է գյուղ և 1917 թվականի փետրվարին զորակոչվում բանակ: Սկզբում նա ծառայում է Մանգլիսում, իսկ այնուհետև՝ 17-րդ կովկասյան հրաձգային գնդում, մասնակցում թուրքական ռազմաճակատի մարտերին: Պատերազմի օրերին Լևոնը գնդի զինվորների շրջանում տարածում էր **«Кавказский рабочий»** թերթը և հեղափոխական պրոպագանդա մղում: Քանի տարեկան հասակում ընդունվում է ՍՄԿԿ շարքերը և ակտիվ մասնակցում Զանգեզուրի բոլշևիկյան կազմակերպությունների հեղափոխական պայքարին: Հայտնի է, որ 1918 թվականին ծանր էր Զանգեզուրի գյուղացիության տնտեսական վիճակը: Բնակչությունից գանձվող մեծաքանակ հարկերը, գյուղերը լցված զաղթականությունը, ազգամիջյան կռիվները, աշխատավորների նկատմամբ դաշնակցական վարձկանների կամայականությունները, այդ ամենին գումարած նաև անբերրիությունը երկիրը հասցրել էին ծայրահեղ աղքատության, սովի: Սիսիանի գյուղերում աշխատող կոմունիստները, գավառային կոմիտեի հանձնարարությամբ, 1918 թվականի աշնանը Ղարաքիլիսայում հրավիրում են գյուղացիական համագումար, ուր քննարկում են գյուղացիների նյութական դրության բարելավման, ազգամիջյան կռիվներին վերջ տալու և հուզող այլ հարցեր: Համագումարն ավելի ուժեղացրեց տեղական հակաժողովրդական իշխանությունների կատաղի զայրույթը: Դաշնակները ձերբակալեցին համագումարի կազմակերպիչներին: Այդ ժամանակ Բազարչայ գյուղում էր գտնվում դաշնակցական մի վաշտ, որի զինվորները բոլշևիկյան տրամադրություններով համակված տեղացիներ էին: Անվանի բոլշևիկներ Լևոն Թովմասյանը և Աբել Գրիգորյանը կազմակերպում էին զինվորներին և, կանգնելով վաշտի գլուխ, շարժվում Սիսիանի վրա: Դաշնակները ստիպված ազատում են համագումարի կազմակերպիչներին, իսկ վաշտի զինվորները մեկնում են իրենց տները:

Երբ Կարմիր բանակը մտավ Զանգեզուր, Լևոնը պարտիզանների առաջին շարքերում կռվում էր դաշնակների և իմպերիալիզմի այլ պնակալեզների դեմ: Հենց այդ կռիվներում էլ նա ծանր վիրավորվեց:

1920 թվականի վերջերին, դաշնակների հրոսակախմբերը կրկին ներխուժեցին Զանգեզուր: Լևոնը Շաղաթ գյուղում էր: Ընդհատակյա պայմաններում բոլշևիկները հրատարակում ու տարածում էին դաշնակների ավանտյուրիստական, հակաժողովրդական քաղաքականությունը մերկացնող թռուցիկներ: 1918-1920 թվականներին Լևոն Թովմասյանը կուսակցական ընդհատակյա գործունեություն է ծավալում Սիսիանում: 1919 թվականին Սիսիանի շրջանի Շաղաթ, Անգեղակոթ, Ղարաքիլիսա, Բռնակոթ և Ախլաթյան գյուղերում ստեղծվում են կոմունիստական բջիջներ: Թովմասյանը Շաղաթի կոմունիստական բջջի հիմնադիրներից մեկն էր:

1920 թվականի հունվարին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների՝ Երևանում գումարված առաջին կոնֆերանսը աշխատավորներին կոչ արեց նախապատրաստվելու զինված ապստամբության: 1920 թվականի փետրվարին տեղի ունեցավ Զանգեզուրի գավառային կոմիտեի ընդլայնված նիստը, որին ակտիվ մասնակցեց Լևոնը: Գավառային կոմիտեն կուսակցական գործիչներ Լևոն Թովմասյանի, Միքայել Գրիգորյանի, Մանուչ Մկրտչյանի, Նիկոլայ Արզումանյանի, Արիստակես Տատինցյանի և այլոց նախաձեռնությամբ մշակեց միջոցառումներ կուսակցական աշխատանքն ուժեղացնելու վերաբերյալ. այսպես, գավառային կոմունիստներին հաշվառման ենթարկել, ագիտատորների կուրսեր կազմակերպել, գրադարան ստեղծել, մարքս-լենինյան քաղաքական գրականություն ձեռք բերել և այլն: 1920 թվականի մայիսյան ապստամբության ժամանակաշրջանում Լևոնը գլխավորում էր Շաղաթի կուսակցական կազմակերպությունը՝ անձնվեր պայքարում հակահեղափոխական բանդաների դեմ: Հայաստանում սովետական իշխանության հաստատման դժվարին ու բարդ իրադրության պայմաններում Լևոն Թովմասյանի և Գարեգին Արզումանյանի անմիջական ջանքերով Շաղաթ գյուղ է բերվում խմորատիպ մեքենա, որով տպագրվում և տարածվում են «Կեցցե՛ Սովետական Հայաստանը», «Կորչի Նժդեհը իր խմբապետներով ու մաուզերիստներով», «Զանգեզուրը Սովետական Հայաստանի անբաժանելի մասն է», «Դաշնակ թափթփուկներ, կորե՛ք գավառից» և հեղափոխական այլ թռուցիկներ ու կոչեր:

Այնուհետև Լ. Թովմասյանը տեղափոխվում է Դարալագյազի (այժմ Եղեգնաձորի) շրջան, այնտեղից՝ Երևան, որտեղ և միանում է պարտիզաններին ու մասնակցում սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարին: Մարքսիստական գաղափարների ակտիվ պրոպագանդիստ էր Լևոնը Զանգեզուրի աշխատավորության շրջանում: 1920 թվականին Արևելքի ժողովուրդների համագումարի պատգամավոր էր նա: Որպես պատգամավոր Լևոնը մասնակցել է նաև ՀԿԿ առաջին և երկրորդ համագումարներին, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների երկրորդ համագումարին:

Աշխատավորների առջև նա հանդես էր գալիս կուսակցական-կազմակերպական, սովետական շինարարությանը և սոցիալիստական հեղափոխությանը վերաբերող զանազան ելույթներով:

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո Լ. Թովմասյանը կուսակցական և սովետական մի շարք պատասխանատու պաշտոններ է վարել: Նա եղել է ՀԿԿ Ապարանի, Զանգիբասարի շրջկոմների, ՀԿԿ Էջմիածնի, Դարալագյազի, Մեղրու գավառային կոմիտեների քարտուղար: Նա թղթակցում էր «Խորհրդային Հայաստան» և մյուս թերթերին, հանդես էր գալիս դասախոսություններով: 1921 թվականին, կուսակցության Էջմիածնի գավառային կոմիտեի քարտուղարն էր նա և խմբագրում էր տեղի «Կարմիր գյուղացի» թերթը: Նա ակտիվ մասնակցել է Հայաստանի գյուղական կոոպերացիայի կազմակերպմանը:

1921 թվականին տեղի ունեցան էջմիածնի տեղական սովետների ընտրությունները: Ընտրությունների նախօրյակին, որպես գավկոմի քարտուղար, «Կարմիր գյուղացի» թերթի 1921 թ. դեկտեմբերի 9-ի համարում նա հանդես եկավ հատուկ կոչով: «Ընկե՛ր գյուղացի,— գրում էր Լևոնը,— դու պետք է վճռական լինես այդ գործում: Այդ գործում պետք է հնչի քո խրոխտ ձայնը: Ճանաչիր քո բարեկամին ընտրության ու ձայն տալու ժամանակ: Տասը չափիր, մեկ կտրիր: Հասկացիր թե ով է բերել քեզ համար այդ ազատությունն ու հանգստությունը... քո գլխին կոմունիստական կուսակցությունը քո պաշտպանն է, որը դուրս է եկած քո գրկից և կանգնած քո շահերը պաշտպանելու տեսակետի վրա, ձայն տուր նրան, ով քո դարդ ու ցավով է տարված և կստեղծի քեզ համար լավ օրեր»:

1921 թվականի նոյեմբերին, երբ, Վաղարշապատում գումարվեց կուսշրջկոմների քարտուղարների համագումար, ՀԿԿ էջմիածնի գավկոմի քարտուղար Թովմասյանը զեկուցում տվեց անդրկովկասյան ֆեդերացիայի մասին: Իր զեկուցման մեջ նա քաղաքական բարձր գնահատական տվեց անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծմանը, նշելով, որ Անդրկովկասի բազմազգ աշխատավորությունը միասնական ջանքերով, հաջողությամբ կվերականգնի երկրի քայքայված տնտեսությունն ու կլուծի հետագա զարգացման հարցերը, սովետական իշխանության ներքական խնդիրները, առաջնորդվելով ժողովուրդների լենինյան բարեկամության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դրոշով:

Որտեղ էլ որ աշխատել է Լևոն Թովմասյանը, ցուցաբերել է կուսակցական գործչին հատուկ նվիրվածություն, բարեխղճություն ու եռանդ:

Մեղրիում կատարած իր աշխատանքների մասին ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի քարտուղարությանն ուղղված նամակում 1924 թ. մարտի 22-ին նա գրում է, որ մեկ տարի հինգ ամսվա ընթացքում շրջանում կազմակերպել է մոտ 10 բջիջ, որոնք ղեկավարել են կուսակցական, սովետական և տնտեսական-շինարարական աշխատանքները: Շրջանում կատարված է հողահավասարեցում և հողազուրկների հողային կարիքները հիմնականում բավարարված են: Կարգավորված են սովետական հիմնարկություններն ու դրանց աշխատանքը: Կազմակերպված են արհմիություն, բատրակների միություն, վարկային ընկերություն և կանոնավոր հիմքերի վրա է դրված գյուղացիությանը վարկ տալու գործը: Նորակառույց երկհարկանի թատրոնի շենքում է կազմակերպվում շրջանի աշխատավորության կուլտուրական սպասարկումը և այլն:

1929 թվականին, Լևոն Թովմասյանի մասին գրված կուսակցական բնութագրում կարդում ենք, որ նա նախաձեռնող է, բարեխղճորեն կատարել է իր վրա դրված պարտականությունները, հետաքրքրվում է քաղաքական ու տնտեսական խնդիրներով, քաղաքականապես պատրաստված է: Նրա փոխհարաբերությունը մասսայի հետ ընկերական է: Ներկուսակցական պայքարի ընթացքում ցուցաբերել է կայունություն:

1930 թվականից Լ. Թովմասյանը տեղափոխվում է Թիֆլիս և շարունակում իր եռանդուն կուսակցական գործունեությունը: Սկզբում նա աշխատում է որպես անդրկովկասյան կոլտնտեսային կենտրոնի վարչության նախագահի տեղակալ: Այնուհետև մի շարք պատասխանատու աշխատանքներ է կատարում զանազան հիմնարկներում: 1935 թվականից մինչև 1937 թվականը Լ. Թովմասյանն աշխատավորների դեպուտատների սովետի Ախալքալակի շրջանային գործադիր կոմիտեի նախագահն էր: Այդ պատասխանատու պոստում էլ, 1937 թվականին կտրվեց նրա կյանքի թելը: Դեռ 40 տարեկան չկար Թովմասյանը և իր անձնուրաց աշխատանքով շատ բան կարող էր տալ ժողովրդին ու կուսակցությանը...

ՍՏԵՓԱՆՅԱՆ ՍՏ. Ս.
դոցենտ



## ԳԻՐՔ ՄԵԾ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ*

*Հայ և ռուս ժողովուրդների դարավոր կապերն ու բարեկամությունը պատմական տարբեր ժամանակներում յուրովի են դրսևորվել: Այդ շնորհակալ թեմայի գիտական լուսաբանմանն են նվիրված պրոֆեսոր Զ. Տ. Գրիգորյանի աշխատությունները: Նրա* Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը (հետհոկտեմբերյան ժամանակաշրջանում) *մենագրությունը լուրջ ուսումնասիրություն է, ուր տրված են բարեկամ ժողովուրդների արգասավոր կապերի պատմությունը, գիտական պարբերացումը, բացահայտված յուրաքանչյուր փուլի բնորոշ գծերը: Շարադրելով հայ և ռուս ժողովուրդների միջև հարյուրամյակների ընթացքում ստեղծված կապերի տարեգրության հիմնական դրվագները, հեղինակը ցույց է տալիս Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, որը արմատական շրջադարձ հանդիսացավ բազում արհավիրքներ տեսած հայ ժողովրդի կյանքում: Կապելով բախտը ռուսների հետ, ստեղծված կոնկրետ պայմաններում արևելահայ զանգվածի զարգացման հետագա ընթացքը համընկավ Ռուսաստանի պատմական զարգացման օրինաչափություններին: Հակառակ ցարիզմի գաղութային քաղաքականության, հնարավորություն ստեղծվեց միավորել հայ և մյուս աշխատավոր ժողովուրդների ուժերը ռուսական բանվոր դասակարգի հետ և հիմնել միասնական հեղափոխական ճակատ: Հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունները նոր բնույթ ստացան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով:*

Հեղափոխական գոտեմարտերում կոփված բարեկամությունը *գլխում տրված են Ռուսաստանի հեղափոխական ազատագրական շարժումները պրոլետարական փուլում, հայ և ռուս ժողովուրդների բարեկամական հարաբերությունները: Նոր դարաշրջանի համար դա վճռական և որոշիչ գործոն էր, որովհետև այդ էտապում բանվոր դասակարգը դառնում էր հասարակության ամենահզոր սոցիալական ուժը: Համառուսաստանյան ընդհանուր հեղափոխական ճակատի կազմակերպիչ բոլշևիկյան կուսակցության հիմնադիր միջուկում կային ոչ-քիչ թվով հայեր: Հայ առաջին մարքսիստների կապը Վ. Ի. Լենինի և նրա զինակիցների հետ կարևոր նշանակություն ունեցավ հայ ժողովրդի հեղափոխական պայքարը համառուսաստանյան բանվորական շարժման հետ միավորելու գործում: Փաստական հարուստ նյութով հեղինակը մատնանշել է, որ հայ, ռուս, անդրկովկասյան մյուս ժողովուրդների դասակարգային համերաշխության ամրապնդմանը արգելակել են ո՛չ միայն ցարիզմը, այլև հայ և մյուս ազգայնական կուսակցությունները: Ինչպես վկայում է պատմությունը, բոլշևիկյան կազմակերպությունները կարողացան ազգայնական կուսակցությունների կողմից*

* Զ. Տ. Գրիգորյան, Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը: *Հայաստան հրատ., 1967 թ., 463 էջ:*

սերմանվող նացիոնալիզմին ու ազգային թշնամանքին հակադրել պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու ժողովուրդների բարեկամության գաղափարը, որը նպաստեց հայ պրոլետարիատի դասակարգային գիտակցության հասունացմանն ու զարգացմանը, հայ, ռուս և անդրկովկասյան մյուս ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը։

Աշխատության հաջորդ բաժնում շարադրված է այն բազմակողմանի օգնությունը, որ ցուցաբերել է նորաստեղծ սովետական պետությունը բազմաչարչար հայ ժողովրդին։

Գրքում կոնկրետ փաստերով նշված է, որ Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար հայ աշխատավոր ժողովրդի և նրա ավանգարդ բոլշևիկյան կուսակցության հետ ուսուսի հանդես են եկել ռուս ժողովրդի լավագույն ներկայացուցիչները։ Հեղինակը մերկացնում է դաշնակ գրչակների այն հերյուրանքը, թե իբր Հայաստանում սովետական կարգերի հաստատումը ո՛չ թե ներքին ուժերի հաղթանակի, այլ կարմիր բանակի միջամտության արդյունքն էր։ «...հաղթանակը կերտող ուժերը,— գրում է հեղինակը, — կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, դասակարգային պայքարի գոտեմարտերում կոփված, ապստամբության դրոշ պարզած Հայաստանի բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունն էր, որոնց եղբայրական օգնություն ցույց տվեցին Սովետական Ռուսաստանը և նրա հերոսական կարմիր բանակը» (էջ 149)։

Աշխատության մեջ համառոտ շարադրված է Թուրքիայի 1918—1920 թթ. ավերիչ արշավանքների և դաշնակցական կառավարության հակաժողովրդական քաղաքականության հետևանքով հայ ժողովրդի համար ստեղծված ծանր վիճակը և այդ պայմաններում Սովետական Ռուսաստանի կազմակերպած օգնությունը հայ աշխատավորությանը։ Գրքում բազմակողմանիորեն քննված են ժողովուրդների բարեկամությունն ու փոխօգնությունը։ Հետաքրքրությամբ են ընթերցվում 1921 թ. Մերձվոլգյան շրջանների սովյալներին Հայաստանի և մյուս սովետական հանրապետությունների ցույց տված օգնությանը նվիրված էջերը։

Աշխատության հեղինակը բազմաթիվ օրինակներով ու կոնկրետ փաստերով **ներկայացնում է, թե ինչպես է համատեղ պայքարում կոփվել** մեր ժողովուրդների բարեկամությունը։ Սովետական բանակի զինվորները՝ անկախ իրենց ազգային պատկանելությունից, տոգորված սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով պայքարել են սովետական հայրենիքի ու նրա բոլոր ժողովուրդների ազատության և անկախության համար։ Ինչպես քաղաքացիական կռիվներում, այնպես էլ Հայրենական մեծ պատերազմում հայ, ռուս և մյուս ժողովուրդների ռազմական համագործակցությունը դարձավ Սովետական Միության պատմական հաղթանակների վճռական գործոններից մեկը։ Հայրենական պատերազմի բոցերի մեջ ավելի ամրապնդվեց սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը։

Ժողովուրդների բարեկամության ամրապնդման կարևորագույն նախադրյալներից է տնտեսական համագործակցությունը։ Այստեղ բազմաթիվ հավաստող փաստերով տրված են հայ և ռուս ժողովուրդների տնտեսական կապերը, որոնք մինչև հոկտեմբերյան հեղափոխությունը գերազանցապես կրել են նեղ ձեռնարկատիրական բնույթ։ Հետհոկտեմբերյան շրջանում բոլորովին այլ սկզբունքներով զարգացան սովետական ժողովուրդների տնտեսական կապերը։ Միութենական հանրապետությունների էկոնոմիկայի համար բնորոշ դարձան մասնագիտացումն ու կոմպլեքսային զարգացումը, սովետական ընդհանուր էկոնոմիկայի և միութենական հանրապետությունների տնտեսական շահերի զուգորդումը։

Գրքում բազմաթիվ ու բազմապիսի օրինակներով ապացուցված է, որ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության համակողմանի զարգացումը չէր կարող լինել առանց ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու տնտեսական համագործակցության։ Տնտեսական սերտ կապեր են հաստատվել ո՛չ միայն Ռուսաստանի Ֆեդերացիայի ու Սովետական Հայաստանի, այլև նրանց արդյունաբերական խոշոր կենտրոնների, նույնիսկ առանձին ձեռնարկությունների ու նորակառույցների միջև։ Հայաստանի և Ռուսաստանի, ինչպես և մյուս հանրապետությունների տնտեսական-արտադրական կապերն ու համագործակցությունը, իրավացիորեն նշում է հեղինակը, դարձել են կարևոր գործոն՝ նրանց տնտեսական առաջընթացի և ընդհանուր սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման համար։

Գրքում հետաքրքրական էջեր են նվիրված հայ և ռուս ժողովուրդների հետհոկտեմբերյան շրջանի բարեկամության ամրապնդման համար դպրոցի կատարած շնորհակալ գործին։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո սովետական պետության ձեռնարկած առաջին միջոցառումների շնորհիվ արմատական փոփոխություն կատարվեց դպրոցի կյանքում։ Լենինյան դեկրետներում նշվեցին սովետական հանրապետություններում ժողովրդական կրթության կազմակերպման ու զարգացման ուղիները։ Այդ հիմքի վրա պատմական կարճ ժամանակամիջոցում կատարյալ հեղաշրջում տեղի ունեցավ Հայաստանի ժողովրդական կրթության ոլորտում։ Լուսաբանված է նաև երկու ժողովուրդների համագործակցությունը՝ բարձրագույն կրթության բնագավառում։

Աշխատության մեջ հանգամանորեն վեր են հանված հայ և ռուս ժողովուրդների միջև դեռևս կիևյան պետության ժամանակներից սկզբնավորված գիտական կապերը։ Դրանք հեղափոխության հաղթանակից հետո նոր բովանդակություն ստացան։ Ուշագրավ է, որ Հայաստանում առաջին գիտական հաստատությունների ստեղծմանն ու գիտահետազոտական աշխատանքների ծավալմանը մեծ օգնություն են ցույց տվել այնպիսի խոշոր գիտնականներ, ինչպիսիք են՝ Ն. Մառը, Ն. Վավիլովը, Ա. Բախը, Ն. Զելինսկին և ուրիշներ։ Գիտության զարգացումը պայմաններ ստեղծեց՝ վերացնելու ազգերի կուլտուրական այն անհավասարությունը, որ կար նախասովետական Ռուսաստանում և ազդակ հանդիսացավ գիտության և սոցիալիստական կուլտուրայի հզոր վերընթացի համար՝ ազգային հանրապետություններում։ Միաժամանակ, հեղինակը համառոտ գծերով անդրադարձել է հայ և ռուս գրական կապերին։ Սովետահայ գրականությունը սերտորեն կապված է ռուս և սովետական մյուս ժողովուրդների գրականության հետ։ Հայ և ռուս գրողների ստեղծագործական կապերի զարգացմանը մեծապես նպաստում են հաճախակի կազմակերպվող գրական համատեղ երեկոները, դիսպուտները, տասնօրյակները։ Հետաքրքրությամբ են ընթերցվում արվեստի բնագավառում եղբայրական ժողովուրդների բարեկամական կապերին նվիրված էջերը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը սկիզբ դրեց սոցիալիստական ազգերի ձևավորման պրոցեսին, արմատական փոփոխություններ առաջ բերեց սովետական ժողովուրդների հարաբերությունների մեջ։ Շահագործման ոչնչացումը, արտադրամիջոցների մասնավոր սեփականության վերացումը, ազգերի լիակատար իրավահավասարության հռչակումը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը այն սոցիալ-տնտեսական ու քաղաքական գործոններն են, որոնց վրա խարսխվեց սովետական բազմազգ ժողովուրդների բարեկամությունը։ «Հենվելով փոխադարձ եղբայրական օգնության, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի օգնության վրա,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— բոլոր սովետական ազգային հանրապետություններն իրենց մոտ ստեղծել են ժամանակակից արդյունաբերություն, բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի ազգային կադրեր, զարգացրել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա» (էջ 18)։

Աշխատությունը զերծ չէ նաև մասնակի թերություններից, որոնք չեն նսեմացնում նրա արժեքը։ Անշուշտ, հեղինակը շնորհակալ գործ է կատարել ընթերցող հասարակայնությանը ներկայացնելով ուսանելի այս գիրքը։

ՊՈՂՈՍՅԱՆ Ա. Մ.
Պատմական գիտությունների դոկտոր

# Содержание






Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ. պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 11/XI—1968 թ.:

ՎՖ 09031 Պատվեր՝ 547 Տիրաժ՝10900 Գինը 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյանի փողոց № 28:




## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՆԱԽԱԶԳՈՒՇԱՑՆՈՂ ՆՈՐ ՍԱՐՔ

Ճապոնիայի օդերևութաբանական կենտրոնը մշակել է հատուկ սարքավորում, որը նախազգուշացնում է ցունամիների (ստորջրյա ցնցումներից առաջացող վիթխարի ալիքներ) մոտեցման մասին: Առաջիկա հինգ տարիների ընթացքում երկրի 60 կետերում տեղակայվելու են նոր տիպի շարժական սեյսմոգրաֆներ: Օդերևութաբանները կարող են նախազգուշացնել մոտալուտ վտանգի մասին և տագնապի ազդանշան տալ ստորջրյա ցնցումը նկատելուց տասը րոպե հետո, մինչդեռ այժմ դրա համար պահանջվում է 30—40 րոպե:

### «ԹՌՉՈՂ ԱՓՍԵՆԵՐԻ» ՄԱՍԻՆ ԵՂԱԾ ԱՌԱՍՊԵԼԻ ԱՌԹԻՎ

«Թռչող ափսեների» մասին ԱՄՆ-ում արհեստականորեն առաջացած հիստերիան զգալիորեն պակաս արձագանք գտավ Անգլիայում: Սակայն այստեղ ևս բավականին հետաքրքրական են և համոզիչ վիճակագրական տվյալները: 1959 թվականին գրանցվել են 22 հաղորդում «անճանաչելի» թռչող օբյեկտների մասին, 1960 թվականին՝ 31, 1962-ին՝ 46, 1963-ին՝ 51, 1964-ին՝ 74, 1966-ին՝ 95, 1967-ին՝ 362: Ընդ որում 225 դեպքերում պարզվել է, որ թռչող օբյեկտները կամ ինքնաթիռներ են, կամ Երկրի արհեստական արբանյակներ: 221 անգամ «ափսեների» տեղ են ընդունել տիեզերական մարմինների բեկորները: 84 դիտարկումներ չեն բացահայտված ինֆորմացիայի անորոշության և անբավարարության պատճառով, մնացած 8 հաղորդումները առայժմ ստուգվում են (Անգլիա):

### «ԱՆՎՆԱՍ» ՇԱՔԱՐ

Շատ գիտնականներ գտնում են, որ ատամների ոսկրափտումի, հիպերտոնիայի, ատերոսկլերոզի, շաքարախտի հարուցիչը սովորական շաքարն է: Նրանք մշակել են օսլայից «իդեալական» շաքար ստանալու եղանակը, որի 95 տոկոսը գլյուկոզա է և վնասազերծ:

### «ԿԱՊՈՒՅՏ ՎԱՌԵԼԻՔՈՎ»

Կոքսային հնոցը գոյություն ունի մեկուկես դար, եթե ոչ ավելի: Մինչև օրս շատ գործարաններում օգտագործում են այդ վառարանները ձուլման ենթակա չուգունը հալելու համար: Այդքան երկար ժամանակում դրանք չեն կրել մեծ փոփոխություններ:

Ձուլման ցեխում էական փոփոխություն են մտցնում ՍՍՀՄ-ում կառուցված գազային հնոցները: «Կապույտ վառելիքով», արտադրության բարձր կուլտուրայի պայմաններում, կարելի է հալել ու զտել ուզած մակնիշի և քիմիական բաղադրության չուգուն:

Պիտանի ձուլվածքի ինքնարժեքը ցածր է, քան թե կոքսով հալելու դեպքում: Առաջարկված կոնստրուկցիայի առավելությունը նաև այն է, որ դա հնարավորություն է ընձեռում մաքսիմալ միացմամբ տարբեր արտադրողականության հնոցները աշխատեցնել գազով:

### ՌԱԴԻՈԿԱՅԱՆ ԳՐՊԱՆՈՒՄ

Մոսկվայի կապի էլեկտրոնիկայի ինստիտուտի ուսանող Ն. Եֆիմենկոն ստեղծել է մի ինքնատիպ ռադիոընդունիչ-հաղորդիչ՝ «Там-там—1» մակնիշի, որը ցուցադրվում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում:

Ընդունող-հաղորդող այդ ռադիոկայանը ազատ տեղավորվում է պիջակի գրպանում և հնարավորություն տալիս տարբեր արտադրամասերում աշխատողներին ինֆորմացիա փոխանակել, առանց հեռանալու իրենց տեղերից: Կարելի է կապ պահպանել մինչև մեկ կիլոմետր հեռավորության վրա:

### ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ՄԻՍ

«Նիսսան Օյլու» ընկերությունը սկսել է թողարկել արհեստական միս, սոյապիտակուցային բակլայից: «Սոյաներ» կոչվող այդ մթերքը չունի համ ու հոտ և օգտագործվում է արհեստական երշիկ, ապուխտ պատրաստելու և բնական մսի հետ խառնելու համար (Ճապոնիա):

Գ Ի Ն Ը 25 կ.



# Բ Ա Ց Վ Ա Ծ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

## 1969 ԹՎԱԿԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*հրապարակում է հոդվածներ ՍՄԿԿ և ՀԿԿ պատմության, հեղափոխական շարժման, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, միջազգային կյանքի վերաբերյալ։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է հանրապետությունում կոմունիստական շինարարության պրակտիկան, զետեղում նյութեր կուսակցական, կոմերիտական, պրոֆմիութենական և սովետական շինարարության, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերի մասին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*լուսաբանում է գիտության, գրականության ու արվեստի զարգացման հարցերը, տպագրում կոնսուլտացիաներ, տեղեկանքներ, մամուլի տեսություններ, քննադատական-գրախոսական հոդվածներ, պատասխանում ընթերցողների հարցերին։*

**ԱՄՍԱԳԻՐԸ**

*տպագրում է նյութեր եղբայրական սովետական հանրապետությունների, ժողովրդական դեմոկրատիայի երկրների, միջազգային կոմունիստական շարժման մասին։*

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ

Մեկ տարին— 3 ռ.

Վեց ամիսը— 1 ռ. 50 կ.

Երեք ամիսը— 75 կ.

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային ռաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*